ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

10

ՀՈԿՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ 1960

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 10
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1960 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVII
ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ







# ԱՇԽԱՐՀՆ ԱՌԱՆՑ ԶԵՆՔԻ, ԱՌԱՆՑ ԳԱՂՈՒԹՆԵՐԻ

*Սեպտեմբերի 20-ին իր աշխատանքն սկսեց Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր Ասամբլեայի XV սեսիան, որի հետ մարդկությունը կապում էր մեծ հույսեր ու սպասելիքներ: Հետաքրքրությունը դեպի սեսիան առանձնապես մեծանում էր նրանով, որ սեսիայի աշխատանքներին մասնակցում էր խաղաղության, ժողովուրդների ազատության ու բարեկամության անխոնջ մարտիկ Ն. Ս. Խրուշչովը. Սովետական Միության օրինակով բազմաթիվ երկրների պատվիրակություններ գլխավորում էին մեծ իրավունքներով ու լիազորություններով օժտված պետական և քաղաքական ամենաականավոր գործիչներ:*

*Գլխավոր Ասամբլեայի սեսիան դարձավ միջազգային արտակարգ երևույթ, ամենախոշոր իրադարձությունը մեր օրերում: Երկրագնդի բոլոր մարդկանց հայացքները բևեռված էին սեսիային. նրանք մեծագույն հուզմունքով հետևում էին նրա ընթացքին: Այդ բնական է ու հասկանալի: Սեսիայի օրակարգի բազմաթիվ հարցերի թվում քննարկման էին դրված արդիականության ամենակենսական պրոբլեմները:*

*Աշխարհի բոլոր ժողովուրդները մեծագույն անհամբերությամբ սպասում էին սեսիայում սովետական պատվիրակության ղեկավար Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովի ելույթին: Վերջապես եկավ Գլխավոր Ասամբլեայի այդ մեծ օրը: Միջազգային ֆորումի բարձր ամբիոնից կրկին հնչեց սոցիալիստական մեծ տերության պատգամաբերի ձայնը՝ բանականության ու ժողովուրդների խղճի հուժկու ձայնը:*

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահի ճառը լսեց ողջ աշխարհը, լսեցին միլիոնավոր ու միլիոնավոր մարդիկ: Նրանում տրված էին արդիականության արմատական, ամենից այրող այն հարցերի հստակ, սպառիչ ու համոզիչ պատասխանները, որոնք այսօր այնքան հուզում ու անհանգստացնում են ողջ մարդկությանը. միաժամանակ պարզորոշ ցույց էին տրված դրանց լուծման կոնկրետ, ռեալ ուղիները:*

*Ն. Ս. Խրուշչովի ելույթում և նրա կողմից ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի սեսիայի քննարկմանը ներկայացված Սովետական կառավարության առաջարկություններում խոր ու բազմակողմանիորեն վերլուծված է միջազգային արդի կացությունը, արտացոլված են մարդկության ամենանվիրական ու լուսավոր ակնկալությունները: Այն գործողության համապարփակ մի ծրագիր է հանուն խաղաղության, արդարության և բոլոր ժողովուրդների ազգային անկախության:*

*— Ի՞նչ են սպասում մեզնից աշխարհի բոլոր ժողովուրդները,— հարցնում է իր ճառում Ն. Ս. Խրուշչովը և անմիջապես պատասխանում,—* արդիականության այրող պրոբլեմների ճշմարտացի և ազնիվ լուծում:

Այդպիսի չլուծված կենսական պրոբլեմներից է մարդկության լիակատար ազատագրումը գաղութային անարգ լծից։

«Մեր դարաշրջանը,— ասաց սեսիայում Ն. Ս. Խրուշչովը,— մարդկային հասարակության գոյության ձևերի սրընթաց վերափոխման, բնության ուժերի նկատմամբ հզորության աննախընթաց թռիչքի, դեպի առավել առաջադիմական սոցիալական կառուցվածքի աննախընթաց թռիչքի դարաշրջան է: Բայց թեև մենք ապրում ենք XX դարում, նրա մեջ դեռ նկատելի են անցյալ դարերի ռեցիդիվները, դեռ ավելին՝ բարբարոսության մնացորդները: Սակայն այս դարաշրջանի գլխավոր գծերից մեկը, նրա էությունը երբեմնի հետամնաց, խավար ու ճնշված ժողովուրդների զարթոնքն է:

Մեր դարը ազատության պայքարի դար է, երբ ժողովուրդներն իրենց ուսերից թոթափում են օտարերկրյա լուծը: Ժողովուրդներն ուզում են արժանավայել կյանք և մարտնչում են նրա համար»:

Պատմության քառուղիներում շատ բան են տեսել, տառապանքներով լի երկար ու տատասկոտ ճանապարհ անցել գաղութային ստրկացված ժողովուրդները։ Բայց վերջին մեկ ու կես տասնամյակն իր նշանակությամբ, իրադարձություններով ու հաղթանակներով, հիրավի, աննախընթաց է այդ ժողովուրդների պատմության մեջ։ Արդեն մոտավորապես մեկ ու կես միլիարդ մարդ, այսինքն՝ երկրագնդի բնակչության կեսը, թոթափել է գաղութային ճնշման շղթաները. գաղութակալության փլատակների վրա ստեղծվել են տասնյակ ազգային նոր պետություններ։

Գաղութային ժողովուրդների ազատագրումը և նրանց ինքնուրույն կյանքի վերածնունդը մեր դարաշրջանի նշանավոր երևույթն է։

Գաղութակալությունը հոգևարք է ապրում, գաղութային ռեժիմը դատապարտված է, և նրա կործանումը ժամանակի գործն է։ Անցել են օտարերկրյա կեղեքիչների անկաշկանդ տեր ու տնօրինության ժամանակները, և ճնշման ու բռնության ոչ մի ուժ այլևս չի կարող կասեցնել գաղութակալության վերջնական վերացման պատմական պրոցեսը։

Սակայն մարդկությունը դեռ լիովին չի ազատագրվել գաղութային ամոթալի ու խայտառակ կարգերից։ Աշխարհում ավելի քան հարյուր միլիոն մարդ հեծում է գաղութային բիրտ կապանքներում. իմպերիալիստներն անգութ շահագործման ու կողոպտման միջոցով գաղութներից քամում են բոլոր արժեքները, բարբարոսաբար հափշտակում հարստությունները։ Թափվում է գաղութային ժողովուրդների արյունը. գրեթե վեց տարի է, ինչ ֆրանսիական գաղութարարները կեղտոտ պատերազմ են մղում Ալժիրի հերոս ժողովրդի դեմ. անկախության հռչակման երրորդ օրը ագրեսիայի զոհ դարձավ Կոնգոյի ռեսպուբլիկան։ Այն բանից հետո, երբ Կուբայի քաջարի ժողովուրդը սկսեց վարել ինքնուրույն ազգային քաղաքականություն ու որոշեց իր սեփական տանը լինել իր բախտի ու հարստությունների միակ տերը, դարձավ ամերիկյան գիշատիչների կողմից ամեն տեսակի հարձակումների, դավերի, տնտեսական ագրեսիայի և ինտերվենցիայի սպառնալիքի օբյեկտ։ Իմպերիալիստները փորձում են տարբեր ձևերով ու մեթոդներով քաղաքական ու տնտեսական ստրկության մեջ պահել գաղութային լծից ազատագրված ժողովուրդներին, խլել նրանց անկախությունն ու ինքնավարությունը, վիրավորել նրանց ազգային ու մարդկային արժանապատվությունը։

Սովետական կառավարության ղեկավարը ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի



սեսիայի քննարկմանը ներկայացրեց գաղութային երկրներին ու ժողովուրդներին անկախություն տալու մասին Դեկլարացիայի նախագիծը։ Սովետական կառավարությունը գտնում է, որ եկել է ժամանակը՝ դնելու կառավարման գաղութային ռեժիմի բոլոր ձևերի ու տարատեսակների լիակատար ու վերջնական վերացման հարցը, որպեսզի վերջ տրվի այդ խայտառակությանը, բարբարոսությանն ու վայրենությանը:

Աշխարհն առանց գաղութների, լիովին ու վերջնականապես վերացնել գաղութային ռեժիմը — հանդիսավոր կերպով հռչակում է Դեկլարացիան։ Անհապաղ լիակատար ազատություն ու անկախություն տալ գաղութային երկրների, խնամակալվող և ոչ-ինքնավար տերիտորիաների ժողովուրդներին, լիովին վերացնել գաղութային ռեժիմը իր բոլոր տեսակներով և գաղութատիրության բոլոր հենակետերով, որոնք հանդես են գալիս ուրիշի տերիտորիաներում տիրակալությունների ու վարձակալված շրջանների ձևով։

Միլիտարիզմը և գաղութակալությունը հարազատ երկվորյակներ են. ընդհանուր ու լրիվ զինաթափումը և գաղութային ճնշման բոլոր ձևերի լիկվիդացումը սերտորեն միահյուսված են մեկը մյուսի հետ։ Եվ հասկանալի է, որ գաղութային ռեժիմի լիակատար ու վերջնական վերացումը կլիներ միջազգային լարվածության մեղմացման կարևորագույն միջոցառումներից մեկը։ Նախկին գաղութային ժողովուրդները սկսել են ակտիվորեն մասնակցել աշխարհի բախտի որոշմանը և առանց նրանց այժմ հնարավոր չէ միջազգային խոշոր պրոբլեմների լուծումը։

Գաղութակալության լուծը թոթափած երկրները խաղաղության հսկայական ու ակտիվ ուժ են։ Այդ պետությունների հետ,— ասաց Ն. Ս. Խրուշչովը,— մեզ հարազատացնում է ընդհանուր ձգտումը՝ պահպանելու և ամրապնդելու խաղաղությունը, մեր մոլորակի վրա ստեղծելու երկրների պետական ու սոցիալական կառուցվածքից անկախ խաղաղ գոյակցության և համագործակցության պայմաններ։

Պատերազմ, թե՞ խաղաղություն — այս հարցերը խորապես հուզում ու մտահոգում են ամբողջ մարդկությանը։ Մեր օրերում մարդկային հանճարի մեծ նվաճումները կարող են օգտագործվել ի բարօրություն կամ ի վնաս մարդկության — ահա թե ի՛նչ բարդ երկընտրանքի առաջ են կանգնած այսօր ժողովուրդները։ Հիրավի, առողջ բանականության տեր բոլոր մարդիկ լավ են գիտակցում, թե ինչպիսի մեծ աղետներ կբերեր իր հետ նոր պատերազմը մեր օրերում, ատոմի, էլեկտրոնիկայի և տիեզերքի նվաճման դարում։ Այժմ չի կարելի խաղ անել կրակի հետ, խաղալ մարդկության բախտի հետ։ Ժողովուրդները ցանկանում են խաղաղություն, պահանջում են վերջ դնել կրակի հետ հանցագործ խաղին։

Զինաթափումը խաղաղության բանալին է, արդի միջազգային փոխհարաբերությունների կենտրոնական հարցը։ Զինաթափման պրոբլեմի նկատմամբ ունեցած մոտեցման մեջ դրսևորվում է աշխարհի երկու հզոր տերությունների՝ ՍՍՌՄ-ի ու ԱՄՆ-ի, համաշխարհային երկու սիստեմների դասակարգային բնույթը։ Ագրեսիվ իմպերիալիստական ուժերը՝ ԱՄՆ-ի գլխավորությամբ համառորեն հրաժարվում են սպառազինությունների կրճատումից, անզուսպ ավելացնում մահաբեր զենքերի արտադրությունը, բորբոքում «սառը պատերազմը»։ Զինաթափման հարցում ՍՍՌՄ-ի դիրքը վառ կերպով ցուցադրում է սոցիալիստական հասարակարգի հետևողական հումանիզմը — մարդկությունը

պետք է ազատ լինի զինված ուժերի ու սպառազինությունների ծանր ու վտանգավոր բեռից, բնաջնջող պատերազմի մղձավանջից ու արհավիրքներից: Զինաթափումը բխում է սոցիալիզմի հենց բուն էությունից. խաղաղությունը սոցիալիզմի իդեալն է:

Մեր օրերում արդյո՞ք հնարավոր է պահպանել խաղաղությունը, հնարավորություններ կա՞ն ընդհանուր և լրիվ զինաթափման համար:

Այո՛, առկա են ու գոյություն ունեն այդ հնարավորությունները: Չկա համաշխարհային նոր պատերազմի ճակատագրական անխուսափելիություն, կարելի է կանխել արյունահեղությունը: Խաղաղության մասին մարդկության դարավոր երազանքներն այսօր դարձել են գործողությունների կոնկրետ ծրագիր. խաղաղությունը դարձել է ռեալ ու հասանելի. մենք մտնել ենք մարդկության կյանքում մի այնպիսի ժամանակաշրջանի, երբ ստեղծվել է հասարակության կյանքից պատերազմը վճռականապես և ընդմիշտ բացառելու ռեալ հնարավորություն:

Արմատապես փոխվել է աշխարհի քաղաքական քարտեզը, փոխվել է միջազգային արենայում ուժերի հարաբերակցությունը՝ հօգուտ սոցիալիզմի ու խաղաղության: Պատերազմի ու ագրեսիայի սև ուժերի դեմ կանգնած է հզոր ու միասնական համաշխարհային սոցիալիստական լագերը՝ Սովետական Միության գլխավորությամբ, որի աճող տնտեսական ու ռազմական հզորությունը ծառայում է խաղաղության պահպանման ու ամրապնդման շահերին:

Համաշխարհային քաղաքականության ասպարեզ են դուրս եկել Ասիայի, Աֆրիկայի, ինչպես նաև Լատինական Ամերիկայի շատ երկրներ, որոնք թոթափելով գաղութակալության ամոթալի լուծը, թևակոխել են ինքնուրույն ազգային պետականության զարգացման ուղին. նրանք վճռականորեն հանդես են գալիս իմպերիալիզմի, պատերազմի դեմ, հանուն խաղաղության: Ստրկացված երկրների ու ժողովուրդների ազատագրումը հանգեցրեց խաղաղության գոտու ընդլայնմանը: Կապիտալիստական աշխարհն էլ այն չէ, ինչ 15—20 տարի առաջ, նեղացել է նրա ազդեցության ոլորտը, թուլացել և բզկտվում է այն իր ներքին հակասությունների մեջ: Պատերազմ չեն ցանկանում ռազմական ագրեսիվ բլոկների մեջ չմտնող մի շարք կապիտալիստական պետություններ:

Աշխարհի ժողովուրդները, որոնք տեսել ու լավ են հիշում անցյալ պատերազմի աղետները, ծարավի են խաղաղ կյանքի, վճռականորեն դեմ են ավերածությանն ու արյունահեղ սպանդին: Նրանք ուզում են ոչ թե պատերազմ, այլ միայն ու միայն խաղաղություն: «Ուստի,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— եթե ժողովուրդներն ակտիվորեն պայքարեն այն հաշվով, որպեսզի կապկպեն միլիտարիստական, մոնոպոլիստական շրջանների ձեռքերը, ապա խաղաղությունը կարող է ապահովվել»:

Սովետական Միությունը, հետևողականորեն իրականացնելով կայուն խաղաղության ու ժողովուրդների միջազգային անվտանգության քաղաքականությունը, իրենից կախված ամեն ինչ անում է պատերազմը կանխելու համար:

Մեկ տարի առաջ, 1959 թվականի սեպտեմբերի 18-ին, հանդես գալով ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի XIV սեսիայում, ընկեր Ն. Ս. Խրուշչովն առաջ քաշեց մեր ժամանակի ամենահրատապ, մարդկության ճակատագրի համար ամենակենսական պրոբլեմը՝ ընդհանուր ու լրիվ զինաթափման ծրագիրը: Զինաթափման սովետական պլանը նախատեսում էր ցրել բանակները, վերացնել գլխավոր շտաբները, ոչնչացնել պատերազմի մահաբեր, մասսայական ոչնչացման զենքերը՝ հաստատելով միջազգային խիստ ու արդարացի վերահսկողություն զինաթափման նկատմամբ: Դա պրոբլեմի լուծման միանգամայն նոր, ռեալիստական մոտեցում էր, որ թելադրել էր կյանքը, արդի միջազգային կացությունը:

«Այն բանից, թե արդյո՞ք կհաջողվի այդ պրոբլեմի ճիշտ լուծումը,— ասել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— շատ բանով կախված կլինի այն, թե ուր կգնա մարդկությունը՝ դեպի պատերազմ՝ դրա աղետավոր հետևանքներով, թե՞ հաղթանակ կտանի խաղաղության գործը: Ժողովուրդները սպասում են խաղաղության, մարդիկ ցանկանում են ապրել առանց երկյուղի իրենց ճակատագրի համար, առանց նոր պատերազմի կրակում իրենց մերձավորներին կորցնելու երկյուղի»:

Մարդկության մեծամասնությունը ամբողջ սրտով պաշտպանեց աշխարհն առանց զենքի գաղափարը, գնահատելով այն որպես մի նոր ապացույց խաղաղության գործում ՍՍՌՄ-ի մշտական ու անկեղծ շահագրգռվածության: Գլխավոր Ասամբլեայի սեսիան միահամուռ հավանություն տվեց Սովետական բանաձևին, որով կոչ էր արվում կառավարություններին՝ բոլոր ջանքերը գործադրել զինաթափման պրոբլեմի կոնստրուկտիվ լուծման համար: Մարդիկ թեթևացած շունչ քաշեցին. մարդկության առջև բացվեցին միջազգային իրադրությունն առողջացնելու բազմախոստում հեռանկարներ: Բայց ԱՄՆ-ը և նրա դաշնակիցները, որոնց ձեռնտու է պահպանել միջազգային լարվածությունը, ամեն ինչ արեցին՝ խոչընդոտելու զինաթափման պրոբլեմի արդյունավետ լուծումը, որպեսզի այդ հարցը մեռյալ կետից առաջ չշարժվի:

Իմպերիալիստական շրջանների հանցանքով տասը պետությունների Ժնևի զինաթափման կոմիտեն կանգնեց փակուղու առաջ: Նպատակ ունենալով խաբել, մոլորեցնել համաշխարհային հասարակական կարծիքը, արևմտյան տերությունները զինաթափման գործնական լուծումը կոմիտեում փարիսեցիաբար փոխարինեցին դատարկ խոսակցություններով: Նրանք համառորեն չցանկացան պայմանավորվել զինաթափման հարցի շուրջ, մերժելով ՍՍՌՄ-ի ու մյուս սոցիալիստական երկրների յուրաքանչյուր խելամիտ առաջարկություն, ամեն մի կոնստրուկտիվ քայլ: Բավական էր միայն սովետական պատվիրակներին ընդառաջ գնալ արևմուտքի այս կամ այն առաջարկության, մերձեցման եզր գտնել, որպեսզի հենց տեղն ու տեղը մերժվեին այդ առաջարկությունները:

Տոգորված խաղաղությունը պաշտպանելու ազնիվ ու վսեմ ձգտումով, Սովետական Միությունը սկսեց միակողմանիորեն իրականացնել իր զինված ուժերը 1,2 միլիոնով, այսինքն՝ բանակը մեկ երրորդով կրճատելու միջոցառումներ: Պաշտպանություն չգտան միջուկային զենքի փորձարկումները դադարեցնելու սովետական առաջարկները:

Բոլորին պարզ դարձավ, որ ամերիկյան ռազմամոլները չեն ցանկանում ոչ ընդհանուր, ոչ լրիվ զինաթափում, ոչ էլ, առհասարակ, զինաթափում, այլ միայն սպառազինությունների վերահսկողության միջոցառումներ, այսինքն՝ վերահսկողություն առանց զինաթափման:

Նպատակ ունենալով ամեն կերպ վատթարացնել հարաբերությունները, թունավորել միջազգային մթնոլորտը, ամերիկյան իմպերիալիստները դիմեցին ՍՍՌՄ-ի դեմ ագրեսիվ-ավազակային գործողությունների: ԱՄՆ-ի ինքնաթիռները ուխտադրուժ, պրովոկացիոն կերպով ներխուժեցին ՍՍՌՄ-ի օդա-

յին տարածության սահմանները։ Միջազգային իրավունքի այդ ամենակոպիտ խախտումները ԱՄՆ-ի կառավարությունը հայտարարեց որպես գիտակցորեն իրագործվող պետական քաղաքականության սկզբունք, կանխամտածված քաղաքականություն։ Ավելին, նրանք տորպեդահարեցին բարձր ոլորտի Փարիզի խորհրդակցությունը։

Միջազգային լարվածության մեղմացման ու զինաթափման պրոբլեմի փոխարեն նրանք նոր ուժով բորբոքեցին ռազմական հիստերիան, սպառազինությունների մրցավազքը։ Ամերիկյան իմպերիալիստները Ճապոնիային պարտադրեցին նոր ռազմական պայմանագիր։ Եվրոպայի կենտրոնում իրադրությունը մնում է անկայուն, հղի սուր կոնֆլիկտներով. արևմտագերմանական միլիտարիստները զենք են շաչեցնում, գլուխ են բարձրացնում Բոննի ռևանշիստները, որոնց բացահայտ կերպով խրախուսում ու ոգեշնչում, զինում են ամերիկյան իմպերիալիստները։

Զինաթափման պրոբլեմը փակուղուց դուրս բերելու նպատակով Սովետական կառավարությունը կրկին անգամ Գլխավոր Ասամբլեայի քննարկմանը դրեց զինաթափման հարցը։

Ովքեր չեն կորցրել բանականությունը, հասկանում են, որ ժամանակակից զենքի ահավոր ավերիչ ուժը, սպառազինությունների մրցավազքի չտեսնված թափը, պետությունների կողմից մասսայական բնաջնջման հրեշավոր միջոցների արտադրությունն ու վիթխարի պաշարների կուտակումը սպառնալիք են ստեղծում մարդկության ապագայի համար։ Դեռ երբեք սպառազինությունների մրցավազքը չէր հասել այնպիսի հսկայական չափերի, չէր տարվում այնպիսի հարաճուն տեմպերով և մարդկության համար չէր պարունակում այնքան մեծ վտանգ, ինչպես մեր օրերում։ Դա ծանր բեռ է ժողովուրդների ուսերին. ամեն տարի աշխարհի բոլոր երկրները ռազմական կարիքների վրա ծախսում են մոտ հարյուր միլիարդ դոլլար, գիտության ու տեխնիկայի աշխատողների ամենատաղանդավոր մասն իր ուժերը և ընդունակությունները վատնում է նոր տեսակի մահաբեր զենքերի ստեղծման, կատարելագործման աշխատանքներում։

Եվ, եթե իրագործվի ընդհանուր ու լրիվ զինաթափում, ապա այդ հսկայական միջոցները, ուժերը կուղղվեն այն բանին, որպեսզի աշխարհի երեսից վերացվեն աղքատությունն ու հետամնացությունը, այն կարևոր աղբյուր կլինի գաղութային լծից ազատագրված երկրների դարավոր հետամնացությունը հաղթահարելու համար։ Զինաթափման պրոբլեմի լուծումը պրակտիկայում կնշանակի, որ մարդկության գլխին այլևս կախված չի լինի պատերազմի դամոկլյան անողոք սուրը։

**Աշխարհն առանց զենքի, առանց պատերազմի**—առաջարկում է Սովետական կառավարությունը։ Պատերազմի նախապատրաստման ու ժողովուրդների իրավունքների խախտումների քաղաքականությունը պետք է դատապարտվի և դադարեցվի. զինաթափման պրոբլեմը պետք է վերջապես լուծվի. չլուծված միջազգային հարցերը պետք է լուծել առանց ուժի գործադրման, բանակցությունների և խելացի կոմպրոմիսների միջոցով։ Համամարդկային այդ հարցերն են դրված զինաթափման հարցի շուրջ ՍՍՌ Միության կառավարության Հայտարարության և Ընդհանուր ու լրիվ զինաթափման պայմանագրի հիմնական դրույթների հիմքում։

Սովետական Միության նոր կոնստրուկտիվ առաջարկությունները մի



շարք կարևոր փոփոխություններ ու ճշտումներ են մտցնում ընդհանուր ու լրիվ զինաթափման սովետական ծրագրի մեջ, նրանում հաշվի են առնված արևմտյան տերությունների ցանկությունները։ Գլխավոր Ասամբլեայի XV սեսիայի քննարկմանը ներկայացված զինաթափման սովետական ներկա ծրագիրը ավելի կոնկրետ է, ռեալիստական. այն նախատեսում է երեք փուլերով իրականացնել զինաթափման ծրագիրը։

Ընդհանուր և լրիվ զինաթափման սովետական ծրագիրը տոգորված է սոցիալիստական տարբեր սիստեմներ ունեցող տերությունների խաղաղ գոյակցության ոգով։ Ընկեր Խրուշչովն իր ելույթում համոզիչ կերպով ցույց տվեց, որ խաղաղ գոյակցությունը մեր ժամանակներում միջազգային հարաբերությունների զարգացման միակ խելացի ուղին է, որ խաղաղ գոյակցության սկզբունքները պետք է դառնան ժամանակակից ամբողջ հասարակական կյանքի հիմնական օրենքը։

ՄԱԿ-ի սեսիան միաձայն ընդունեց Ն. Ս. Խրուշչովի կողմից արված առաջարկությունը՝ Գլխավոր Ասամբլեայի պլենար նիստում քննարկելու գաղութային երկրներին ու ժողովուրդներին անկախություն տալու մասին Դեկլարացիան։ Դա լուրջ հարված էր իմպերիալիզմին, Սովետական Միության և խաղաղասեր բոլոր ժողովուրդների նշանակալից նոր հաղթանակը։

Ասամբլեայում Սովետական պատվիրակության առաջարկով քննարկման դրվեցին նաև ՄԱԿ-ում Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի օրինական իրավունքների վերականգնման, ՄԱԿ-ի ղեկավար օրգանների կառուցվածքի որոշ փոփոխման ու ամրապնդման հարցերը։ Դրանք ջերմ պաշտպանություն գտան սոցիալիստական երկրների, ինչպես և խաղաղասեր պետությունների շատ պատվիրակությունների կողմից։

Սակայն ներկա սեսիայում, ըստ երևույթին, դեռևս չկային պայմաններ ինչպես զինաթափման, այնպես էլ վերոհիշյալ հարցերում օգտակար արդյունքների հասնելու համար։ Դա երբեք էլ չի նշանակում, որ խաղաղասեր ուժերի ջանքերը ապարդյուն են անցել։ Պատասխանելով ժուռնալիստների հարցերին, Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Մենք այստեղ ցանեցինք բարի սերմեր, խաղաղության ու բարեկամության սերմեր, մերկացրինք սուտը և ցանեցինք ճշմարտության սերմեր... Ճշմարտությունը չի կարելի սպանել, ճշմարտությունը հաղթանակ կտանի»։

Բարի կամքի տեր բոլոր մարդիկ վստահ են, որ բանականությունը վերջիվերջո կհաղթի, որ արդիականության բոլոր հրատապ պրոբլեմները կստանան իրենց կոնկրետ ու գործնական լուծումը, կհաղթանակի խաղաղությունն ու արդարությունը ամբողջ աշխարհում։

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈԼՈՐՏԻ ԸՆԴԼԱՅՆՄԱՆ ՀԱՄԱՐ

Գ. ՀԱՅՐՅԱՆ

Գաղափարական աշխատանքի ոլորտի ընդլայնման հարցը կարևոր և հրատապ հարց է, որի ճիշտ լուծման բանալին տրված է ՍՄԿՊ Կենտկոմի 1960 թվականի հունվարի 9-ի նշանավոր որոշման մեջ։ Այդ որոշման հրապարակումից հետո անցած 10 ամիսները լարված աշխատանքի ամիսներ էին։ Ձեռք են բերվել առաջին հաջողությունները, որոնք պետք է հիմք հանդիսանան գաղափարական աշխատանքը պարտիայի Կենտկոմի որոշման պահանջների մակարդակին բարձրացնելու համար։

ՍՄԿՊ Կենտկոմի որոշման կատարման գլխավոր արդյունքներից մեկը՝ կադրերի տնտեսագիտական կրթության գործի բարելավումն է։ Այժմ, քան երբևիցե, պարտիական կազմակերպությունները մեծ ուշադրություն են դարձնում տնտեսագիտական գիտելիքների պրոպագանդմանը, սոցիալիստական արտադրության զարգացման օրինաչափությունների ուսումնասիրմանը, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման պրոբլեմներին։ Ավելի ու ավելի լայնորեն են կիրառվում տնտեսագիտական գիտելիքների տարածման այնպիսի նպատակահարմար ձևեր, ինչպիսիք են՝ լեկտորիումները, տնտեսագիտական կոնֆերանսները, տեխնիկական պրոգրեսի ակումբները, արտադրության նորարարների, կոմունիստական աշխատանքի բրիգադների ու հարվածայինների հավաքները, անասնապահի, այգեգործի, բրիգադավարի օրերի նշումները, ժողովրդական տնտեսության լավագույն աշխատողների փորձի մասին բրոշյուրների և պլակատների հրատարակումը և այլն։

Պարտիական լուսավորության սիստեմում դպրոցների, խմբակների և սեմինարների մի զգալի մասում տնտեսագիտական ուսուցումն ընթանում է ստեղծագործորեն, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների, կառույցների առջև ծառացած կոնկրետ խնդիրների հետ սերտորեն կապված։

Այս ուղղությամբ լավ աշխատող կազմակերպությունների թիվը գնալով ավելանում է։ Խոսենք դրանցից երկուսի մասին։

«Պարտիյնայա ժիզն» ամսագրի վերջին համարներից մեկում դրվատանքի խոսք էր ասված Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի պարտիական կազմակերպության՝ քաղաքական լուսավորության բնագավառում ձեռք բերած դրական փորձի մասին։ Առանձնապես ուշադրության է արժանի այդ կոմբինատի № 27 ցեխի պարտիական կազմակերպությանը կից գործող քաղաքական գիտելիքների հիմունքների ուսումնասիրող քաղդպրոցի



աշխատանքը։ Այստեղ պրոպագանդիստն է ցեխի պետ, անվանի քիմիագործ ընկ. Ասատուր Օհանյանը։ Այս խմբակի պարապմունքներն անցնում են հետաքրքիր, գաղափարական բարձր մակարդակով, օգնում են ունկնդիրներին՝ իրենց աշխատանքն ավելի խելացիորեն կազմակերպելու և տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշների հասնելու համար։

Կյանքի, կոլեկտիվի խնդիրների հետ պրոպագանդայի սերտ կապի լավագույն օրինակ է տալիս Շահումյանի շրջանի Ի. Վ. Ստալինի անվան կոլտնտեսության պարտկազմակերպությանը կից գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակի աշխատանքը, որը ղեկավարում է կոլտնտեսության վարչության նախագահ Արտաշես Մեժլումյանը։ Այստեղ ընդգրկված արտադրական տեղամասերի ղեկավարները՝ բրիգադավարներ, ֆերմայի վարիչներ, օղակավարներ և այլ ակտիվիստներ հմտորեն օգտագործում են ձեռք բերած գիտելիքները՝ կոլտնտեսային արտադրությունը գիտական հիմունքներով վարելու, գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատվության հասնելու և անասնաբուծության մթերատվության ավելացման համար։ Բնավ պատահական չէ, որ տարեցտարի կոլտնտեսությունն ամրապնդվում է տնտեսապես և կազմակերպչորեն, մեծանում է նրա եկամտաբերությունը, բարելավվում է կոլտնտեսականների բարեկեցությունը։

Միանգամայն ճիշտ են վարվում այն պարտիական կազմակերպությունները, որոնք պարտլուս ցանցի նոր ուսումնական տարին նախապատրաստելիս միջոցներ են ձեռնարկում կադրերի տնտեսագիտական կրթության գործը էլ ավելի բարելավելու համար։

Բավական է ասել, որ Ալավերդու շրջանի պարտիական կազմակերպությունները պարտիական լուսավորության ցանցի տարբեր օղակներում արդեն ընդգրկել են ավելի քան 1100 անպարտիական ակտիվիստների։ Բացի դրանից, գրեթե բոլոր խոշոր ձեռնարկությունների ու կոլտնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպություններում անպարտիական բանվորների, կոլտնտեսականների համար ստեղծված են սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության հիմունքներն ուսումնասիրող տարրական տիպի խմբակներ ու դպրոցներ։ Գորիսի շրջանում պարտիական լուսավորության ցանցում ընդգրկված անպարտիականների թիվը անցյալ ուսումնական տարվա համեմատությամբ ավելացել է ավելի քան 3 անգամ։ Այդ ուղղությամբ զգալի աշխատանք են կատարել Շամշադինի, Արտաշատի, Աշտարակի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Ղափանի, Սպիտակի և այլ շրջանների պարտիական կազմակերպությունները։

Այս ամենը, իհարկե, լավ է։ Բայց հայտնի է, որ լավ երևույթներն էլ երբեմն ստվերոտ կողմեր են ունենում։ Ավելացնելով անպարտիականների թիվը, հոգատարություն ցույց տալով նրանց ուսուցման նկատմամբ, երբեք չպետք է թույլ տալ, որ տնտեսագիտական ուսուցումը վերածվի տեխնիկական ուսուցման, երբ տեսության հարցերը մոռացվում կամ փոխարինվում են մերկ տեխնիցիզմով։ Տնտեսագիտական ուսուցման բոլոր օղակները կոչված են թեորիական խոր իմացությամբ օժտելու ունկնդիրներին, օգնելու վերջիններիս ոչ միայն ճիշտ ըմբռնելու տնտեսական կյանքի պրոցեսները, այլև ապահովելու արտադրության անարգել զարգացումն ու բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։

Գաղափարական ազդեցության ոլորտի ընդլայնման գործում մեծ դեր է կատարում լավ հիմքերի վրա դրված դասախոսական պրոպագանդան: Մի շարք տեղերում այդ աշխատանքը տարվում է գաղափարական բարձր մակարդակով և որոշակի կազմակերպվածությամբ: Եթե մի ժամանակ դասախոսություններ կազմակերպելիս հաշվի չէին առնվում լսարանի առանձնահատկությունները ու հետաքրքրությունները, ապա այժմ շատ տեղերում հաջողությամբ կիրառվում է շերտավորված մոտեցման պրակտիկան: Առանձին դասախոսություններ են կազմակերպվում բանվորների, կոլտնտեսականների, ինժեներատեխնիկական աշխատողների, ուսուցիչների, առևտրի, առողջապահության աշխատողների, տնային տնտեսուհիների, երիտասարդության համար և այլն:

Աստիճանաբար վերանում է այն արատավոր պրակտիկան, երբ դասախոսն իր պարտականությունը կատարում էր ձևականորեն. նա ունկնդիրներին տեսնում էր իր ելույթից միայն մի քանի րոպե առաջ: Այժմ արդեն բազմաթիվ դասախոսներ նախապես լինում են տեղերում, ծանոթանում գործերի վիճակին, փաստեր հավաքում և օգտագործում դրանք իրենց ելույթներում: Այդ տեսակետից արժանի է ուշադրության տնտեսագիտական գիտությունների թեկնածու Դ. Հարությունյանի փորձը, որը իր «Տնտեսական հաշվարկը և նրա բարելավման ուղիները» թեմայով դասախոսությունը կարդալուց առաջ, մոտ երկու շաբաթ ուշի-ուշով ուսումնասիրել էր Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի աշխատանքները և այն ամբողջովին կառուցել այդ գործարանից վերցրած նյութերի վրա:

Սակայն դեռ կան դասախոսներ, որոնք շարունակում են աշխատել հին ձևով: Նրանք հաճախ գաստրոլների դուրս եկած արտիստների տպավորություն են թողնում, թերևս այն տարբերությամբ, որ բարեխիղճ արտիստները ելույթ ունենալուց առաջ ստուգում են բեմը, իսկ այդ դասախոսները, ինչպես Ջացկին կասեր՝ նավից ուղղակի պարահանդես են ընկնում: Նրանք դահլիճ են մտնում և սկսում իրենց դասախոսությունը, չհետաքրքրվելով նույնիսկ, թե ինչպիսի լսարանի հետ գործ ունեն:

Շատ տեղերում խիստ նեղ է կարդացվող դասախոսությունների թեմատիկան, այն դեռ չի հարստացվել ՍՄԿԿ XX և XXI համագումարների առաջ քաշած պրոբլեմներով, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի հրատապ խնդիրներով: Չափազանց քիչ դասախոսություններ են կարդացվում սոցիալիզմից կոմունիզմին անցման օրինաչափությունների, մարքսիստական-լենինյան փիլիսոփայության, քաղաքատնտեսության սկզբունքային հարցերի, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման օրինաչափությունների և այլ ակտուալ հարցերի վերաբերյալ: Առանձին պարտիական կազմակերպություններ դասախոսական պրոպագանդայի մեջ աչքաթող են արել յոթնամյա պլանին վերաբերող թեմաները:

Լուրջ թերություն պետք է համարել, որ շատ հաճախ դասախոսություններին ներկա են լինում միևնույն մարդիկ, որպես կանոն՝ ձեռնարկության կամ կոլտնտեսության ակտիվիստները, մինչդեռ երիտասարդության, կանանց և այլ խավերի մի զգալի մասը դուրս է մնում մեր դասախոսական պրոպագանդայի տեսադաշտից:

Մասսաների քաղաքական և էսթետիկական դաստիարակության գործում կարևոր նշանակություն են ձեռք բերում կուլտուրայի համալսարանները, որոնց թիվը մեզ մոտ այժմ հասնում է 77-ի: Միայն Երևան քաղաքում ստեղծվել է



40 կուլտուրայի համալսարան, որտեղ ընդգրկված են մոտ 10 հազար մարդ:

Բայց կարևորը կուլտուրայի համալսարաններ ստեղծելը չէ միայն: Դա դեռ աշխատանքի առաջին քայլն է: Ամենակարևորն այդ համալսարանների կանոնավոր աշխատանքի ապահովումն է, որի մասին, սակայն, շատ պարտիական կազմակերպություններ հաճախ մոռանում են: Այլապես ինչո՞վ բացատրել, որ Կալինինոյի, Վեդու, Աշտի, Կրասնոսելսկի, Մեղրու և այլ շրջանների կուլտուրայի համալսարաններն անցյալ տարի մի քանի պարապմունքներ ունենալուց հետո դադարել են գործելուց:

Ռեսպուբլիկայի կուլտուրայի համալսարանների վատ աշխատանքի համար մեծ չափով մեղավոր է նաև Հայկ. ՍՍՌ Կուլտուրայի մինիստրությունը: Դեռևս անցյալ տարի կուլտուրայի համալսարաններին մեթոդական և այլ կարգի օգնություն ցույց տալու համար մինիստրությանը կից ստեղծվեց ռեսպուբլիկական մեթոդական խորհուրդ՝ 15 հոգուց բաղկացած: Այդ խորհրդի ամբողջ երկու տարվա գործունեությունն այն է եղել, որ ստեղծվելուց հետո ունեցել է իր անդրանիկ նիստը, մշակել է գեղեցիկ պլաններ, որոնք, սակայն, մնացել են թղթի վրա:

Կուլտուրայի համալսարաններին անբավարար օգնություն են ցույց տալիս նաև Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերությունը և ստեղծագործական կազմակերպություններն ու միությունները՝ Կոմպոզիտորների միությունը, Գրողների միությունը և Նկարիչների միությունը:

Սակայն քննադատելով Կուլտուրայի մինիստրության և ստեղծագործական միությունների անբավարար գործունեությունն այդ ասպարեզում, պետք է ուղղակի ասել, որ կուլտուրայի համալսարանների աշխատանքի համար առաջին հերթին պատասխանատու են այդ գործը նախաձեռնողները՝ պարտիական կազմակերպությունները:

Մեր կարծիքով պետք չէ հրապուրվել կուլտուրայի համալսարանների քանակով, այլապես կարող է վարկաբեկվել այդ հրաշալի նախաձեռնությունը: Կուլտուրայի համալսարան պետք է ստեղծել այնտեղ, որտեղ համապատասխան ուժեր կան, որոնք կարող են ապահովել նրա անխափան աշխատանքը: Ճիշտ չէ նաև, երբ ամբողջ հույսը դրվում է ռեսպուբլիկայի մայրաքաղաքում աշխատող կադրերի վրա: Համալսարանները պետք է խթան հանդիսանան ժողովրդի ընդերքում թաքնված նոր տաղանդների հայտնաբերման ու զարգացման համար:

Վերջին շրջանում որոշ չափով բարելավվել է նաև կանանց հետ տարվող աշխատանքը: Շատ քաղկոմ-շրջկոմներին կից ստեղծվել են կանանց խորհուրդներ, որոնց մեջ մտնում են քաղաքի, շրջանի ակտիվ կանայք, պարտիական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողներ, արտադրության առաջավորներ և տնային տնտեսուհիներ: Ուսանելի փորձ է կուտակել ՀԿՊ Արտաշատի շրջկոմին կից կանանց կոմիտեն, որն իր խորհուրդներն ունի գյուղերում: Կոմիտեն սիստեմատիկաբար նիստեր է գումարում, քննարկում կանանց մեջ տարվող աշխատանքի այս կամ այն հարցը, հետևում մշակված միջոցառումների կատարմանը:

Խորհրդի գործունեության հիմնական խնդիրներից է՝ նպաստել կանանց ակտիվության բարձրացմանը, նրանց ընդգրկել հասարակական-քաղաքական ակտիվ աշխատանքի մեջ, զբաղվել երեխաների դաստիարակության հարցերով:

Գյուղական խորհուրդներից ուշագրավ է Ն. Դվինի կանանց խորհրդի աշ-
խատանքը։ Խորհուրդը ղեկավարում է երիտասարդ կոմունիստ, դպրոցի ուսուց-
չուհի Հեղինե Հարությունյանը։ Խորհրդի նախաձեռնությամբ գյուղում ստեղծ-
վել են թաղային ագիտկետեր, որտեղ անց են կացվում հարց ու պատասխանի
երեկոներ և այլ միջոցառումներ։ Հետաքրքիր անցավ վերջերս գյուղում կազ-
մակերպված «Մեր անվանի կանայք» թեմատիկ երեկոն։
Սակայն ոչ բոլոր տեղերում են աշխատավորուհիների նկատմամբ սրտա-
ցավ վերաբերմունք ցույց տալիս։ Այդ տեսակետից վիճակը հատկապես վատ
է Բասարգեչարի, Մարտունու, Կիրովականի և մի շարք այլ շրջանների շատ
սկզբնական պարտիական կազմակերպություններում, որտեղ կազմակերպվող
միջոցառումներին հաճախ մասնակից չեն դարձվում կանայք։ Այսպես, օրի-
նակ, Մարտունու շրջանի Երանոս գյուղի պարտիական լուսավորության ցան-
ցում ընդգրկված 124 հոգուց միայն 3-ն են կին։ Ընթացիկ տարում կոլտնտե-
սային ակումբներում կազմակերպված ութ դասախոսություններից և ոչ մեկին
ներկա չեն եղել կանայք։ Նրանց մասնակից չեն դարձնում նաև պարտիական
ու կոմերիտական դոնրաց ժողովներին և այլ միջոցառումներին։
Երանոսի օրինակը եզակի չէ։ Այդպիսի պրակտիկան պարզապես հնի
մնացուկ է, որի դեմ պետք է անողոք կռիվ հայտարարել։ Բուրժուական հասա-
րակարգի կապանքներից ազատագրված սովետական կանայք գիտության ա-
մենաբարդ բնագավառներից սկսած և սպորտով վերջացրած՝ հրաշքներ են
գործում ի փառս մեր Հայրենիքի։ Միայն քաղաքականապես տհաս մարդիկ և
անուղղելի բյուրոկրատները կարող են թերագնահատել կանանց ուժերը կամ
աղայական վերաբերմունք ցույց տալ նրանց նկատմամբ։
Աշխատավորների մեջ ըստ բնակության վայրի տարվող գաղափարական-
դաստիարակչական աշխատանքի ուժեղացման գործում լուրջ խթան են հանդի-
սանում մշտապես գործող ագիտկետերը, որոնց թիվն այժմ ռեսպուբլիկայում
հասնում է 350-ի։
Ուշագրավ աշխատանք է կատարում Երևանի ալյումինի գործարանի պար-
տիական կազմակերպությանը կից մշտական գործող ագիտկետը, որը դարձել
է Թաղամասի աշխատավորների ամենասիրված վայրերից մեկը։ Աշխատանքից
հետո այստեղ են հավաքվում ալյումինի գործարանի և նրա շրջապատում
գտնվող այլ ձեռնարկությունների բազմաթիվ աշխատողներ՝ տնային տնտե-
սուհիներ, թոշակառուներ, երիտասարդներ, որոնց տրամադրության տակ են
դրված ցուցադրական նյութեր, ռադիոընդունիչը, հեռուստացույցը, թերթեր,
ամսագրեր և այլն։
Ագիտկետում բնակչության համար հաճախակի կազմակերպվում են դա-
սախոսություններ, զեկուցումներ, հարց ու պատասխանի երեկոներ, բանվոր
ամսագրեր, գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվի ելույթներ։
Ագիտկետը խելացիորեն է օգտագործում նաև գրադարանը, որտեղ կազմա-
կերպվում են գեղարվեստական գրքերի քննարկումներ, զրույցներ և այլն։
Ագիտկետն ունի իր զեկուցողների խմբակը և մշտական կոնսուլտանտները։
Դրանք գործարանի ղեկավարներն են, ցեխերի պետերը և առաջավոր բանվոր-
ները։ Այստեղ հաճախ աշխատավորների հետ հանդիպումներ են ունենում
նաև քաղաքի ու ռեսպուբլիկայի ղեկավարները։
Ռեսպուբլիկայում լայնորեն հայտնի է «Կոմունիստական կենցաղավա-
րության հանձնաժողովների» աշխատանքի փորձը Կիրովական քաղաքում։



Կարծես թե ոչ ոք արդեն չի կասկածում կիրովականցիների այդ նախաձեռնու-
թյան օգտավետության մեջ։ Ավելին. նրա մասին հաճախ մենք խոսում ենք
մեր զեկուցումներում, մամուլի էջերում, բայց հասկանալի չէ, թե ինչու ան-
հրաժեշտ հոգատարություն հանդես չի բերվում այդ ուշադրության արժանի
փորձը ռեսպուբլիկայի մյուս վայրերում ևս լայնորեն տարածելու համար։
Մինչդեռ դա կենսական անհրաժեշտություն է, եթե մանավանդ նկատի առնենք
այն հանգամանքը, որ ոչ բոլոր տեղերում են սիստեմատիկ աշխատանք կա-
տարում բնակչության բոլոր խավերի հետ։
Ցավոք է թաքցնել, որ շատ տեղերում ագիտկետերը կյանքի են կոչվում
միայն քաղաքական կամպանիաների օրերին, իսկ մնացած ժամանակ կա-
տարյալ անգործության են մատնվում։ Եթե հնարավոր չէ այդ կամպանիաների
ընթացքում ստեղծված բոլոր ագիտկետերը պահպանել, ապա պետք է պահ-
պանել նրանցից լավագույնները և նոր թափով ամենօրյա աշխատանք ծավա-
լել այնտեղ։
Մասսաների հետ կատարվող քաղաքական աշխատանքի հաջողությունը
պայմանավորված է ագիտատորների կազմի խելացի ընտրությամբ։ Վ. Ի.
Լենինը բարձր գնահատելով ագիտատորի աշխատանքը, ասում էր, որ նրանք
Սովետական իշխանության լիազոր-ներկայացուցիչներն են մասսաների մեջ։
Ագիտացիոն աշխատանքով պետք է զբաղվեն մեր հասարակության ամե-
նաառաջավոր մարդիկ, ղեկավարներից մինչև շարքային գիտակից բանվոր-
ներն ու կոլտնտեսականները, որոնք ոչ միայն իրենց գիտելիքներով, այլև
անձնական օրինակով կարող են ոգեշնչել մասսաներին։
Քիչ չէ, անշուշտ, այնպիսի ագիտատորների թիվը, որոնց համար մասսա-
ների հետ կատարվող քաղաքական աշխատանքը դարձել է օրգանական պա-
հանջ, որոնք հասկանում են իրենց կատարած գործի վեհությունը և հպարտա-
նում դրանով։
Սակայն միշտ չէ, որ մեր պարտիական կազմակերպությունները լուրջ
վերաբերմունք են ցույց տալիս ագիտատորների ընտրության գործին։ Այդ
պատճառով, երբեմն ագիտատորներ են առաջադրվում անհրաժեշտ գիտելիք-
ներից զուրկ մարդիկ, որոնք ուրիշներին սովորեցնելու և համոզելու ունակու-
թյուններ չունեն։ Դրանք, իհարկե, ազնիվ կոմունիստներ են և բարեխղճորեն
կատարում են իրենց հանձնարարված գործը, բայց արդյունքներն աննշան են։
Ունկնդիրները խրավացիորեն մերթ ձգձգում են, մերթ ձանձրույթից հորան-
ջում... Եվ այսպես, մեր իսկ անշնորհքության պատճառով որոշ տեղերում քա-
ղաքական ագիտացիան երբեմն վեր է ածվում անգույն ու տաղտկալի մի
ղբաղմունքի, զրկվում իր հմայքից, կորցնում իր մոբիլիզացնող ազդեցու-
թյունը։
Մեզանում դեռ կան այնպիսի ղեկավար աշխատողներ, որոնք ամեն ինչով
զբաղվում են, բայց ժամանակ չեն գտնում իրենց իսկ ղեկավարության տակ
գտնվող գործարաններում կամ կոլտնտեսություններում աշխատող մարդկանց
հետ զրուցելու համար։ Կան նաև այնպիսի աշխատողներ, որ երբ պարտիական
օրգաններից հարցնում են նրանց, թե արդյոք ելույթներ ունեցե՞լ են, որտե՞ղ
և քանի անգամ, նրանք զարմանքով պատասխանում են.
— Ե՞րբ են ասել, որ ունենանք։
Դա ծիծաղելի լինելուց բացի, զայրացուցիչ է։ Էլ ի՛նչ ղեկավար, որ հա-
տուկ հրավերի է սպասում մասսաների մոտ գնալու համար։

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ մարդկանց գիտակցությունը չի փոխվում տարերայնորեն, ավտոմատ կերպով, տնտեսական բազիսում տեղի ունեցած փոփոխության հետ միասին, կամ նրանից անմիջապես հետո։ Նոր հասարակարգի մարդու դաստիարակության համար հարկավոր է գործի մեջ դնել գաղափարական ներգործման բոլոր լծակներն ու միջոցները։ Նոր մարդու դաստիարակման գլխավոր միջոցը աշխատանքն է, մեր Հայրենիքի հետագա ծաղկման համար մղվող պայքարը։

Ահա թե ինչու այժմ, քան երբևիցե, անհրաժեշտ է անողոք պայքար մղել պորտաբույծների ու անբանների դեմ, որոնք պարազիտային կյանք վարելով արատավորում են սովետական մարդու բարձր կոչումը։ Իսկ այդպիսի մարդիկ դեռ կան մեզանում։

Մենք պետք է բոլոր միջոցները գործադրենք սխալ ճանապարհի վրա կանգնած այդ երիտասարդներին վերադաստիարակելու համար, իսկ եթե ոմանք կհամառեն, չեն ցանկանա ենթարկվել հասարակության կամքին, կփորձեն շարունակել իրենց անիմաստ կյանքը, պետք է պատժել նրանց օրենքի ամբողջ ուժով։ Զրիակերների նկատմամբ հարկավոր է հասարակական կարծիք ստեղծել, նրանց պետք է անարգանքի սյունին գամել ամենուրեք՝ ժողովում, տանը, թե փողոցում։ Պետք է անողոք լինել նաև այն ծնողների կամ «բարի քեռիների» նկատմամբ, որոնք հովանավորում են պորտաբույծներին։

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման գործում կարևոր դեր են խաղում ռեսպուբլիկայի կուլտուր-լուսավորական հիմնարկները՝ կուլտուրայի տները, ակումբները, գրադարանները, թանգարանները և այլն։

Այս հիմնարկների գործունեության մեջ ևս վերջին շրջանում որոշ աշխուժություն է նկատվում։ Առանձնապես սկսել են լավ աշխատել կուլտուրայի գյուղական օջախները։ Օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի մի շարք կուլտուրայի տներում, ակումբներում, գրադարաններում հաճախակի անց են կացվում բազմազան հետաքրքիր միջոցառումներ։ Շրջանի գրեթե բոլոր կուլտուրայի տներին և ակումբներին կից գործում են գեղարվեստական ինքնագործունեության խմբակներ, երգի-պարի անսամբլներ, թատերական խմբեր և այլն։

Դրական աշխատանքի փորձ է կուտակել Էջմիածնի, Արտաշատի և այլ շրջանների կուլտուր-լուսավորական հիմնարկների մի մասը։ Չնայած դրան այդ ասպարեզում գործերի վիճակը չի կարելի բավարար համարել։

Մեր կուլտուրայի տներից ու ակումբներից շատերը կամ անգործության են մատնված, կամ կազմակերպում են շատ անհետաքրքիր միջոցառումներ, հաճախ բավարարվելով միայն կինոնկարների ցուցադրումով։

Որոշ տեղերում գյուղի ղեկավարները տեսնելով, որ ակումբը չի աշխատում, այն վեր են ածում չորանոցի, արհեստանոցի կամ պահեստի։ Երբ փորձում եք դրա համար կշտամբել այդ ղեկավարներին, նրանք առանց քաշվելու ասում են.

— Եթե ակումբը լավ աշխատի, այդպես չենք վարվի։

Եվ ապա չբավարարվելով դրանով, սկսում են քննադատել կուլտուրայի շրջանային ու ռեսպուբլիկական օրգաններին։ Կուլտուր-լուսավորական հիմնարկների վատ աշխատանքի համար, ինչ խոսք մեղք ունեն նաև շրջանային ու ռեսպուբլիկական օրգանները, բայց այդ մեղքի գլխավոր բաժինը գյուղի ղեկավարներինն է։



Բանն այն է, որ մեր կոլտնտեսությունների որոշ նախագահներ կուլտուրական աշխատանքի վրա նայում են անտարբերությամբ, կարծելով, թե այն իրենց գործը չէ։ Ավելին, նրանք բնավ չեն անհանգստանում, երբ ակումբները, կինոթատրոնները, գրադարանները չեն աշխատում։ Եվ ինչո՞ւ անհանգստանան, երբ դրա համար պարտիայի շրջանային կոմիտեն նրանց նկատմամբ հարկ եղած չափով պահանջկոտ չէ։

Բայց ժամանակը չէ՞ արդյոք, որ գյուղի ղեկավարները գլխովին պատասխան տան բնակչության կուլտուրական կյանքի կազմակերպման գործում եղած աղաղակող թերությունների համար։

Մեր գյուղն այժմ այն չէ, ինչ էր մի երեսուն, կամ նույնիսկ 6—7 տարի առաջ։ Պարտիայի ձեռք առած կտրուկ միջոցառումների շնորհիվ նա բարձրացավ նոր աստիճանի, դարձավ անհամեմատ հարուստ։ Երբեք այդքան շատ ու գեղեցիկ տներ չէր կառուցել հայ գյուղացին, ինչպես այս վերջին մի քանի տարիներում, նրա հարկի տակ երբեք այդքան շատ մանուկներ չէին եղել, ինչքան այժմ։ Բոլոր պայմաններն ստեղծվել են, որպեսզի մեր ժողովուրդն ապրի հարուստ և կուլտուրական կյանքով։ Ուրեմն, մենք չենք կարող անտարբեր լինել մեր աշխատավորների, ամբողջ ազգաբնակչության օրավուր աճող կուլտուրական պահանջների նկատմամբ։

Կարևոր և վճռական նշանակություն ունի նաև այն, թե ո՞ւմ է հանձնարարված բնակչության կուլտուրական սպասարկման գործը, ովքե՞ր են աշխատում կուլտուրայի տներում, ակումբներում, գրադարաններում և կուլտուր-լուսավորական այլ հիմնարկներում։ Գաղտնիք չէ, որ այդ ֆրոնտում աշխատող բազմաթիվ էնտուզիաստների կողքին տեղ են զբաղեցնում պարզապես անկուլտուրական մարդիկ, որոնք այդ ասպարեզն են մտել պատահականորեն։

Փորձեցեք մտնել նրանց, թող ներվի ասել, ղեկավարած ակումբը կամ գրադարանը։ Այնտեղ դուք կզգաք, թե ինչքան հետամնաց է այդ մարդկանց ճաշակը, թե ինչպես կտրված են նրանք կյանքից։ Եթե, օրինակ, բանիմաց, օրվա այրող հարցերով ապրող մարդիկ լինեին Բասարգեչարի շրջանի Կոշաբուլաղ գյուղի ակումբի աշխատողները, կոլտնտեսային արտադրության գլխավոր հարցերը թողած, իրենց ակումբի պատերը չէին զարդարի երկրորդական նշանակություն ունեցող լոզունգներով ու պլակատներով։

Ժամանակն է, որ մենք փոխենք մեր վերաբերմունքը կուլտուր-լուսավորական հիմնարկների, նրանցում աշխատող կադրերի ընտրության նկատմամբ։ Այդ հիմնարկները պետք է դառնան աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նրանց կուլտուրական հանգստի կազմակերպման, էսթետիկական ճաշակի զարգացման իսկական կենտրոններ։

Այս է պարտիայի պահանջը։

Այժմ մի քանի խոսք մամուլի մասին։

Մեր մամուլում զգալի փոփոխություններ են կատարվել թե՛ ձևի և թե՛ բովանդակության տեսակետից։ Մամուլը փորձում է ավելի ու ավելի մոտենալ կյանքին։ Մեր խնդիրն է՝ ամրապնդել և զարգացնել առաջին քայլերը և որ գլխավորն է՝ բարձրացնել մամուլի աշխատանքի գաղափարական մակարդակը։

Իսկ ինչ ձևով կարելի է անել այդ։ Առաջին հերթին, պետք է մտածել արտահաստիքային հեղինակների կազմի մասին։ Մեզ հարկավոր է մարտական պարտիական հրապարակախոսություն, առանց որի չի կարող իր բարձրության վրա գտնվել մեր մամուլը։ Հրապարակախոսությունն է մամուլի ոգին և ոչ թե







վիճակագրական տվյալներն ու աղյուսակները, որոնք նույնպես պետք են, բայց ոչ այն չափով, ինչ չափով այժմ նրանք տեղ են գտնում մեր թերթերի էջերում։

Կոմունիստական շինարարության յուրաքանչյուր ցուցանիշի, թվի, աղյուսակի ետևում կանգնած է նրա ստեղծողը՝ կոմունիզմ կառուցող մարդը։ Մեզ հարկավոր է ցույց տալ այդ մարդու աշխատանքն ու պայքարը։ Ինարկե, դա առավել դժվար է, քան ընդհանուր դատողություններով լի, մակերեսային ու ձանձրալի նյութեր տպագրելը։

Կյանքը հրաշալի նյութ է տալիս հրապարակախոսական փայլուն հոդվածներ գրելու համար։ Այդ խնդիրը անկարելի է լուծել միայն խմբագրությունների հաստիքային աշխատողների ուժերով, հարկավոր է ոտքի հանել գաղափարական ֆրոնտի բոլոր այն աշխատողներին, որոնք իրոք ճանաչում են կյանքը և ընդունակ են ընդհանրացնել նրա երևույթները։

Պարտիական-պրոպագանդիստական աշխատողների, գրողների, արվեստագետների ու գիտնականների, արտադրության առաջավորների ակտիվ մասնակցությունը առավել հետաքրքիր, առավել բովանդակալից կդարձնի մեր մամուլի աշխատանքը։

Մամուլը պետք է առաջին պլանի վրա դնի կյանքում ամեն օր, ամեն ժամ ծնվող դրական երևույթների բացահայտման ու ընդհանրացման գործը և դրանով օգնի պարտիային նոր հասարակարգի մարդու ձևավորման մեծ աշխատանքում։ Մամուլի անհետաձգելի ու կարևոր խնդիրն է համարձակորեն մերկացնել բուրժուական իդեոլոգիան, քննադատել անիծյալ անցյալի մնացուկները։

Կարիք չկա թաքցնել, որ մեր աշխատանքի առանձին տեղամասերում, մամուլում, հրատարակչությունների գործունեության մեջ եղել են և այժմ էլ կան առանձին սխալներ, այդ թվում անցյալի ժառանգության նկատմամբ անքննադատ վերաբերմունքի, ազգային սնապարծության և սահմանափակվածության արտահայտություններ։ Ժամանակն է վերացնելու այդ թերությունները։ Դա պետք է արվի մեր ռեսպուբլիկայի աշխատավորներին պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների լենինյան բարեկամության ոգով դաստիարակելու գործը նոր, ավելի բարձր աստիճանի վրա դնելու համար։

Գաղափարական աշխատանքն իր սուր ծայրով պետք է ուղղված լինի մարքսիզմ-լենինիզմի ոգուն խորթ բարքերի ու սովորությունների դեմ։

Մեզ մոտ դեռ քիչ չեն փաստերը, երբ ժողովրդական տրադիցիաների քողի տակ հարություն են առնում մեր կյանքի կողմից մերժված սովորույթները։

***

Անհրաժեշտ է շարունակել աշխատանքը պարտիական լուսավորության ցանցի շրջանակները ընդլայնելու, քաղաքական ուսուցման մեջ ներգրավելու անպարտիական աշխատավորների նորանոր խմբեր։ Ընդ որում պետք է լուրջ ուշադրություն դարձնել կադրերի տնտեսագիտական կրթության գործի կազմակերպմանը, հասնել այն բանին, որ ամեն մի բանվոր, ամեն մի կոլտնտեսական հնարավորություն ստանա կարճ ժամանակամիջոցում զինվելու տնտեսագիտական անհրաժեշտ գիտելիքներով։



Չպետք է սահմանափակվել ուսուցման խմբակային ձևերով։ Ծանրության կենտրոնը պետք է դառնա քաղաքական ինքնակրթությունը։ Իսկ դրա համար հարկավոր է էլ ավելի բարելավել քաղաքական լուսավորության տների, դասախոսական խմբերի, կոնսուլտանտների գործունեությունը։

Բանավոր պրոպագանդային զուգընթաց, պետք է բարձրացնել գրավոր պրոպագանդայի դերը։ Հասնել այն բանին, որ մեր թերթերը, հրատարակչությունները, ռադիոն ու հեռուստատեսությունը էլ ավելի սերտորեն կապվեն կյանքի, կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ, բարձրացվի նրանց գաղափարական մակարդակը, դառնան ավելի բովանդակալից ու հետաքրքիր։

Հարկավոր է հիմնովին վերակառուցել կուլտուր-լուսավորական հիմնարկների, կուլտուրայի տների, ակումբների, գրադարանների, կինոթատրոնների աշխատանքը, դարձնել դրանք մասսաների կոմունիստական դաստիարակության լիարժեք կենտրոններ։

Պետք է էլ ավելի բարձրացնել գաղափարական աշխատանքում, մասսաների կոմունիստական դաստիարակության գործում Սովետների, ինչպես նաև արհեստակցական միությունների, կոմերիտմիության և հասարակական մյուս կազմակերպությունների դերը, հասնել այն բանին, որ բոլոր կոմունիստները՝ ղեկավարներից մինչև շարքայինները ակտիվ գործունեություն ծավալեն մասսաների գիտակցականության բարձրացման համար։

Աշխատավորների դաստիարակության գործին բերած մասնակցությունը պետք է դառնա ամեն մի ղեկավար աշխատողի գործունեության գնահատման գլխավոր չափանիշներից մեկը։

Հայաստանի պարտիական կազմակերպությունները, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումներով զինված, ունեն բոլոր ռեալ հնարավորությունները գաղափարական աշխատանքում նոր վերելքի հասնելու, մարքսիզմ-լենինիզմի աշխարհաշեն գաղափարները էլ ավելի մեծ հաջողությամբ մասսաների մեջ տանելու համար։

---

# ՌՍԴԲ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԸ ԵՎ ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԸ

**(Մարտ–հոկտեմբեր 1917 թ.)**

*Կ. ՌՈԴՈՒՄՅԱՆ*

1917 թվականի փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի
հաղթանակից հետո բոլշևիկյան պարտիան Վ. Ի. Լենինի գլխավորությամբ
վստահորեն վերցրեց սոցիալիստական ռևոլյուցիայի կուրս։ Պարտիան հսկա-
յական նշանակություն էր տալիս սոցիալիստական ռևոլյուցիային Ռուսաստա-
նի բոլոր ազգերի աշխատավոր զանգվածների ակտիվ մասնակցությանը։ Չնա-
յած մեծ դժվարություններին, ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմը սերտ կապ էր պահպա-
նում տեղական բոլշևիկյան կազմակերպությունների հետ, անմիջականորեն
ղեկավարում նրանց պայքարը սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան
ստրատեգիայի ու տակտիկայի իրականացման համար։ Փետրվարյան ռևոլյու-
ցիայի հաղթանակից անմիջապես հետո, ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմը քննարկում է
տեղական պարտիական կազմակերպությունների հետ կանոնավոր ու սերտ
կապ հաստատելու հարցը և ընդունում համապատասխան որոշում։

Բոլշևիկների պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և անձամբ Վ. Ի. Լենինը
ուշադիր հետևում և ուղղություն էին տալիս Անդրկովկասի բոլշևիկյան կազ-
մակերպությունների գործունեությանը, հոգ տանում նրանց քաղաքական ու
կազմակերպական ամրապնդման համար։ ՌՍԴԲ(բ)Պ Մոսկվայի մարզային կո-
միտեին ուղղված Կենտկոմի նամակում նշված է մարզկոմի բյուրոյի միջոցով
Բաքվի բոլշևիկյան կազմակերպության հետ կապերն ուժեղացնելու անհրա-
ժեշտությունը։ ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմի ղեկավարությունը Անդրկովկասյան բոլ-
շևիկյան կազմակերպությունների նկատմամբ հիմնականում իրականացվում
էր նրանց հետ ունեցած ուղղակի գրագրության, պարտիայի կենտրոնական օր-
գան «Պրավդա»-ի, տեղերը Կենտկոմի լիազորներ ուղարկելու միջոցով և այլն։
Ապրիլյան կոնֆերանսի և VI համագումարի բանաձևերը, Կենտկոմի որոշում-
ները, Վ. Ի. Լենինի աշխատությունները, հոդվածները, ճառերը, ցուցումները
մարտական ուղեցույց էին ծառայում Անդրկովկասի բոլշևիկների համար, օգ-
նում նրանց ճիշտ կողմնորոշվելու այն բարդ ու դժվարին իրադրության մեջ,
որն այդ ժամանակ ստեղծվել էր Անդրկովկասում։

Թիֆլիսի բոլշևիկների ընդհանուր ժողովը՝ զինվորական մասերի պար-
տիական կազմակերպությունների ներկայացուցիչների հետ համատեղ, ապրի-
լի 28-ին Ապրիլյան կոնֆերանսի անունով ուղարկում է ողջույնի հետևյալ հե-
ռագիրը. «Մենք համոզված ենք, որ կոնֆերենցիայի որոշումները կծառայեն
միշտ ուղեցույց իր իդեալների համար ռևոլյուցիոն պրոլետարիատի մղած
պայքարում։ Մենք հուսով ենք, որ մեր պանծալի առաջնորդը՝ ընկեր Լենինը,



իրեն հատուկ տոկունությամբ ետ կմղի կոնտրռևոլյուցիոն բուրժուազիայի և
նրա բոլոր սպասարկուների հարձակումները» («Կավկազսկի ռաբոչի», № 39,
1917 թ.)։

1917 թ. մայիս-հունիս ամիսներին Անդրկովկասի բոլշևիկյան կազմա-
կերպությունները քննարկում ու միահամուռ հավանություն են տալիս Ապրիլ-
յան կոնֆերանսի որոշումներին և դրանք ընդունում ի ղեկավարություն։

Անդրկովկասի կոմունիստները աշխատավոր զանգվածներին անդադրում
պարզաբանում են Կոմունիստական պարտիայի նպատակներն ու խնդիրները,
մերկացնում բուրժուական ժամանակավոր կառավարության հակաժողովրդա-
կան քաղաքականությունը, էսեռների ու մենշևիկների համաձայնողական
կոնտրռևոլյուցիոն դերը։ Նրանք ամեն կերպ օգնում էին աշխատավորներին՝
ազատվելու մանր բուրժուական պատրանքներից, էսեռների ու մենշևիկների
նկատմամբ ունեցած անգիտակից դյուրահավատությունից, ամրապնդում էին
երկրամասի բոլոր ազգությունների աշխատավորների եղբայրական ինտերնա-
ցիոնալ դասակարգային համերաշխությունը, կազմակերպելով և մոբիլիզաց-
նելով նրանց սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար։

Միայն յոթ օրվա ընթացքում (մայիսի 20-ից 27-ը) Բաքվի բանվորների
համար կազմակերպվում է 18 դասախոսություն, այդ թվում՝ Ստ. Շահումյանի
«Ընթացիկ մոմենտը և մեր խնդիրները», «Պրոլետարիատի դերը ռուսական
ռևոլյուցիայի մեջ», «Ռուսական ռևոլյուցիայի բնույթի մասին» զեկուցումները
և այլն։ Լոռվա գավառի աշխատավոր գյուղացիության առաջ քաղաքական
զեկուցումներով մի քանի անգամ հանդես է գալիս Ա. Ի. Միկոյանը։ Ապրիլյան
կոնֆերանսի պատգամավորներ Ֆ. Մախարաձեն և Մ. Ցխակայան կոնֆերան-
սի որոշումների մասին Թիֆլիսի բանվորների ու զինվորների առաջ հանդես են
գալիս մի շարք զեկուցումներով։

Համբերատար ու համառ քաղաքական-բացատրական աշխատանքով Ան-
դրկովկասի բոլշևիկները պարզաբանում և համոզում են աշխատավոր զանգ-
վածներին, որ նրանք չեն ստանա ո՛չ ազատություն, ո՛չ խաղաղություն, ո՛չ
հաց, ո՛չ հող, քանի դեռ իշխանությունը գտնվում է բուրժուական ժամանա-
կավոր կառավարության ձեռքում, քանի դեռ իշխանությունը չի անցել բան-
վորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների Սովետների ձեռքը։

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների հետագա ակտիվ
պայքարի համար խոշոր նշանակություն ունեցավ նրանց վերջնական կազմա-
կերպական սահմանազատումը մենշևիկներից, որը տեղի ունեցավ Կենտկոմի
ուղղակի ցուցումների և Ապրիլյան կոնֆերանսի որոշումների հիման վրա։
Իրենց կապերը մենշևիկներից առաջին հերթին խզեցին Թիֆլիսի ու Բաքվի,
ապա Ալեքսանդրոպոլի, Ելիզավետպոլի, Բաթումիի, Գորիի, Քութայիսիի,
Կարսի և այլ բոլշևիկյան կազմակերպությունները։

1917 թվականի մայիսի վերջերին Անդրկովկասի բոլշևիկների ղեկավար
Ստ. Շահումյանը, որպես Սովետների Համառուսաստանյան առաջին համա-
գումարի պատգամավոր, մեկնում է Պետրոգրադ։ Նա հանդիպում և զրույցներ
է ունենում Վ. Ի. Լենինի հետ, որն արժեքավոր ցուցումներ և իմաստուն խոր-
հուրդներ է տալիս սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար Ան-
դրկովկասի բոլշևիկների պայքարի կազմակերպման մասին։

Քաղաքական ու կազմակերպական այն վիթխարի աշխատանքի շնոր-
հիվ, որ կատարում էր Կոմունիստական պարտիան, անընդհատ աճում էր նրա

ազդեցությունը բանվորական, գյուղացիական և զինվորական զանգվածների շրջանում։ Այդ ակնառու կերպով ցույց տվին հունիսյան և հուլիսյան իրադարձությունները։ Հունիսյան օրերին պարտիայի Կենտկոմը լայն կազմակերպական-քաղաքական աշխատանք է կատարում ամբողջ երկրում բանվորների ու զինվորների ռևոլյուցիոն աճող շարժումը ղեկավարելու համար։ Հունիսի 9-ին և 14-ին Կենտկոմը խոշոր պարտիական կազմակերպություններին, այդ թվում Բաքվի և Թիֆլիսի կազմակերպություններին ուղարկում է հատուկ նամակներ ու հեռագրեր, որոնցով նա հայտնում է, որ բոլշևիկների պարտիայի Կենտրոնական Կոմիտեն որոշել է մասնակցել հունիսի 18-ի ցույցին և առաջադրել է՝ «Հող, ազատություն, հաց, խաղաղություն», «Ամբողջ իշխանությունը բանվորների ու զինվորների դեպուտատների Սովետներին» և այլ ռևոլյուցիոն լոզունգներ։

1917 թվականի հուլիսյան օրերին ստեղծված բարդ իրադրության մեջ տեղական բոլշևիկյան կազմակերպություններին ճիշտ կողմնորոշելու համար ՌՍԴԲ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն նրանց ուղարկում է հատուկ նամակ հուլիսյան իրադարձությունների և պարտիայի տակտիկայի մասին։ Կենտրոնական Կոմիտեն այդ նամակում, որը գրված էր Կենտկոմի քարտուղար Յա. Մ. Սվերդլովի կողմից, վերլուծում է հուլիսյան դեպքերի զարգացման ընթացքը և նրանց ծնող պատճառները, տալիս է քաղաքական գնահատական հուլիսյան իրադարձություններին, պարզաբանում պարտիայի տակտիկական գիծը և խնդիրները պայքարի նոր պայմաններում։

ՌՍԴԲ(բ)Պ Թիֆլիսի կոմիտեն ստանալով այն, անմիջապես ուղղում է հուլիսյան իրադարձությունների առաջին օրերի ժամանակ սխալ ինֆորմացիայի ստացման հետևանքով թույլ տված անհետևողականությունը։ Հուլիսյան օրերից հետո երկրում ստեղծված քաղաքական նոր իրադրության մեջ տեղական բոլշևիկյան կազմակերպությունների ճիշտ կողմնորոշման համար խոշոր նշանակություն ունեցան նաև ՌՍԴԲ(բ)Պ Պետրոգրադի կոմիտեի, Զինվորական կազմակերպության, Մոսկվայի մարզային բյուրոյի, Մոսկվայի կոմիտեի և Մոսկվայի օկրուգային կոմիտեի ներկայացուցիչների մասնակցությամբ 1917 թվականի հուլիսի 13-ից 14-ը կայացած՝ պարտիայի Կենտկոմի ընդլայնված խորհրդակցության բանաձևերը։

Հուլիսի 19-ին տեղի է ունենում ՌՍԴԲ(բ)Պ Բաքվի կազմակերպության կոնֆերանսը, որտեղ ընթացիկ մոմենտի մասին զեկուցումով հանդես է գալիս Ա. Ջափարիձեն։ Կոնֆերանսը հավանություն է տալիս պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հուլիսյան ընդլայնված խորհրդակցության բանաձևերին։

Կոնֆերանսի որոշման մեջ, որը գրված էր պարտիայի Կենտկոմի ընդլայնված խորհրդակցության բանաձևերի ոգով, ասված է, որ Բաքվի բոլշևիկյան կազմակերպությունների խնդիրն է՝ «սերտորեն համախմբվել պարտիայի շուրջը, բացատրել աշխատավորներին կատարված իրադարձությունների էությունը և առաջվա պես նրանց կոչել վճռական պայքարի ընդդեմ կոնտրռևոլյուցիայի» («Բակինսկի ռաբոչի», № 29, 1917 թ.)։

Հուլիսյան օրերով վերջանում է ռևոլյուցիայի խաղաղ զարգացման շրջանը։ Որպես պրակտիկ խնդիր օրակարգում դրվում է զինված ապստամբության կազմակերպումը։ ՌՍԴԲ(բ)Պ VI համագումարը պրոլետարիատին և նրա պարտիային նպատակադրեց զինված ապստամբության՝ կապիտալիստների ու կալվածատերերի իշխանությունը տապալելու համար։ Պարտիայի VI հա-



մագումարում ներկայացված էին Բաքվի և Թիֆլիսի բոլշևիկյան կազմակերպությունները։

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատգամավորներ Ա. Ջափարիձեն, Ս. Քավթարաձեն և Յուսուֆ-զադեն համագումարում ունեցած իրենց ելույթներում կոնկրետ օրինակներով ցույց են տալիս, որ չնայած երկրամասում գոյություն ունեցող պայքարի բարդ պայմաններին և կոնտրռևոլյուցիայի վայրենի հալածանքներին, օրեցօր աճում է բոլշևիկների ազդեցությունը և հեղինակությունը աշխատավոր մասսաների շրջանում։ «Բաքվում,—նշում է Ա. Ջափարիձեն իր ելույթում,—չնայած նրան, որ բանվորների և զինվորների դեպուտատների Սովետում կա ընդամենը 20—25 բոլշևիկ, մինչև հուլիսի 3—5-ը (15—18) մեր բոլոր բանաձևերն անցնում էին և փաստորեն մենք էինք գլխավորում։ Այդ ցույց է տալիս, որ մեր ԿԿ կողմից երաշխավորված գիծը փայլուն կերպով կիրառվել է և ծառայել է մասսաների զգաստացման գործին» (Протоколы шестого с'езда, 1954 г., стр. 195)։

Ղեկավարվելով պարտիայի VI համագումարի որոշումներով, Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները ձեռնամուխ են լինում զինված ապստամբության նախապատրաստմանը։ VI համագումարից հետո պարտիայի Կենտրոնական Կոմիտեն Անդրկովկաս է գործուղում համագումարի 13 մասնակիցների, որոնք մեծ օգնություն են ցույց տալիս երկրամասի բոլշևիկյան կազմակերպություններին։ Կենտրոնական Կոմիտեն անմիջականորեն ղեկավարում էր Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների ամբողջ աշխատանքը՝ Սահմանադիր ժողովի ընտրությունների նախապատրաստման ուղղությամբ։ Այդ երևում է 1917 թվականի հուլիսի մեկին Ստ. Շահումյանին ուղարկած Կենտկոմի նամակից։ Այդ նամակում Կենտկոմը առաջարկում է անհապաղ սկսել ընտրությունների նախապատրաստումը, հանդես գալ ինքնուրույն ցուցակով, բանվորներից ու զինվորներից ագիտատորներ պատրաստելու համար կազմակերպել կարճատև դասընթացներ և այլն։

Դեպի Հոկտեմբերը տանող ճանապարհին աշխատավոր զանգվածների ռևոլյուցիոն մոբիլիզացման գործում խոշոր դեր խաղաց գեներալ Կոռնիլովի կոնտրռևոլյուցիոն դավադրության ջախջախումը։ Կոռնիլովշչինայի դեմ մղվող պայքարում ճիշտ կողմնորոշվելու և տակտիկական ճիշտ գիծ վարելու համար պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, ղեկավարվելով Վ. Ի. Լենինի ցուցումներով, տեղական բոլշևիկյան կազմակերպություններին ուղարկում է կոնկրետ հրահանգ։ ՌՍԴԲ(բ)Պ Բաքվի կոմիտեն 1917 թվականի օգոստոսի 30-ին պարտիայի Կենտկոմից ստանում է հետևյալ հեռագիրը. «Հանուն հակառևոլյուցիայի սանձահարման Սովետների հետ աշխատում ենք տեխնիկական ու ինֆորմացիոն համագործակցությամբ՝ պահպանելով քաղաքական լիակատար ինքնուրույն գիծ։ Իրադրությունների իմաստը. համաձայնողական քաղաքականության լիակատար կրախ, բուրժուազիայից ամբողջովին խզվելու հիման վրա իշխանության կազմակերպման անհրաժեշտությունն՝ ռևոլյուցիան փրկելու համար» («Բակինսկի ռաբոչի», № 49, 1917 թ.)։

Կոռնիլովշչինայի ջախջախումից հետո մեծ չափերով աճում է բոլշևիկների պարտիայի ազդեցությունը մասսաների վրա։ Սկսվում է Սովետների վերակենդանացման ու աշխուժացման, նրանց բոլշևիկացման շրջանը, որն ընդգրկում է նաև Անդրկովկասը։ «Ամբողջ Ռուսաստանում նկատվող բոլշևիզացիան ամենալայն մասշտաբներով երևան է եկել մեր մազութի թագավորու-

թյան մեջ,—գրում է Ստ. Շահումյանը Բաքվից Կենտրոնական Կոմիտեի օր-
գան «Ռաբոչի պուտ» թերթում։—Դրության երեկվա տերերը՝ մենշևիկները
չեն համարձակվում երևալ բանվորական շրջաններում» («Ռաբոչի պուտ»,
№ 10, 1917 թ.)։

Ինչպես ամբողջ Ռուսաստանում, այնպես էլ Անդրկովկասում սոցիալիս-
տական ռևոլյուցիայի համար բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղա-
ցիության պայքարն ընթանում էր «Ամբողջ իշխանությունը Սովետներին»
լոզունգով։ Անդրկովկասում Սովետական իշխանության հաղթանակի համար
մղվող պայքարի ավանգարդում հանդես էր գալիս Բաքվի պանծալի պրոլե-
տարիատը։ Հոկտեմբերի սկզբին Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպու-
թյունները նամակ են ստանում պարտիայի Կենտկոմից Յա. Մ. Սվերդլովի
ստորագրությամբ՝ Սովետների վերընտրության և բանվորների, զինվորների
ու գյուղացիների դեպուտատների Սովետների Համառուսաստանյան երկրորդ
համագումար հրավիրելու անհրաժեշտության մասին։ Միաժամանակ հոկտեմ-
բերի 7-ին Պետրոգրադի և Մոսկվայի բանվորների ու զինվորների դեպու-
տատների Սովետները հեռագրով դիմում են Անդրկովկասի խոշոր քաղաքնե-
րի Սովետներին՝ առաջարկելով նրանց իրենց ներկայացուցիչներն ուղարկել
Պետրոգրադ՝ Սովետների երկրորդ համագումարին մասնակցելու համար։

Անդրկովկասի բոլշևիկները եռանդուն գործունեություն են ծավալում
բանվորների, զինվորների ու գյուղացիների դեպուտատների տեղական Սո-
վետների վերընտրության և Սովետների երկրորդ համագումարի հրավիրման
նախապատրաստման ուղղությամբ։ Այդ կապակցությամբ բոլշևիկների Կով-
կասյան երկրային Կոմիտեն հատուկ կոչով դիմում է ՌՍԴԲ(բ)Պ տեղական
կազմակերպություններին։ Այդ կոչի մեջ ասված է. «Պարտիայի Կովկասյան
երկրային կոմիտեն կոչով դիմում է բոլոր կազմակերպություններին ու ըն-
կերներին եռանդուն կերպով պահանջել, որպեսզի բանվորների, զինվորների
և գյուղացիների դեպուտատների բոլոր Սովետները Կովկասում անմիջապես
անցկացնեն ընտրություններ՝ հոկտեմբերի 20-ին Պետրոգրադում բացվող Սո-
վետների համագումարին մասնակցելու համար։ Որտեղ համաձայնողական
ղեկավարությունը բոյկոտի կենթարկի համագումարը, մենք կոչ ենք անում
ընկերներին ընտրությունները կատարել Սովետների ռևոլյուցիոն մասից կամ
անմիջականորեն մասսաներից։

Կովկասի ռևոլյուցիոն բանվորները, զինվորները և գյուղացիները ինչ գնով
էլ ուզում է լինի պետք է ներկայացված լինեն համագումարում, որը կոչված
է վճռական դեր խաղալու մեր ռևոլյուցիայի մեջ։ Պետերբուրգի և Մոսկվայի
ռևոլյուցիոն Սովետները համագումար են կանչում ամբողջ ռևոլյուցիոն Ռու-
սաստանը։ Ընկերնե՛ր, թույլ մի տվեք պաշտպանողականներին Ձեզ կտրեն
Ռուսաստանի ռևոլյուցիոն բանվորներից, զինվորներից և գյուղացիներից»
(«Կավկազսկի ռաբոչի», № 176, 1917 թ.)։ 1917 թվականի հոկտեմբերի
15-ին Բաքվի բանվորների և զինվորների դեպուտատների Սովետը բոլշևիկ-
ների առաջարկությամբ որոշում է ընդունում ամբողջ իշխանությունը հանձնել
Սովետներին և պաշտպանել Սովետների Համառուսական երկրորդ համագու-
մարի հրավիրումը։ Որոշ ժամանակ անց համանման որոշում է ընդունում և
Ալեքսանդրոպոլի Սովետը։

1917 թվականի հոկտեմբերին ռևոլյուցիոն ալիքը երկրում հասնում է իր
զարգացման գագաթնակետին։ Երկրում ստեղծված քաղաքական իրադրու-



թյան, դասակարգային ուժերի հարաբերության խոր գիտական վերլուծության
հիման վրա, Վ. Ի. Լենինը ցույց է տալիս, որ զինված ապստամբության ան-
միջական կազմակերպումը դարձել է կենսականորեն անհրաժեշտ և անխու-
սափելի խնդիր։ Զինված ապստամբության պատրաստվելով Պետրոգրադում,
պարտիայի Կենտկոմը խոշոր նշանակություն էր տալիս նրա կազմակերպմանը
տեղերում։ Պահպանված փաստաթղթերը վկայում են այն սերտ կապի մա-
սին, որն այդ ժամանակ եղել է ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմի և Անդրկովկասի բոլ-
շևիկյան կազմակերպությունների միջև։ Այսպես, օրինակ, 1917 թվականի
հոկտեմբերին ՌՍԴԲ(բ)Պ Կարսի կոմիտեն պարտիայի Կենտրոնական Կոմի-
տեին ուղարկած մի նամակում հայտնում է. «Մեր երիտասարդ կազմակեր-
պությունը նախատեսել է կազմակերպել մի շարք աշխատանքներ։ Շատ ցան-
կանում ենք Ձեզ հետ կապ ունենալ, հաղորդեցեք մեզ ամեն մի կարևոր բան,
իսկ եթե պետք լինի և հեռագրով»։ Պատասխան նամակի մեջ պարտիայի
Կենտկոմի քարտուղար Ե. Դ. Ստասովան Կենտկոմի կողմից ողջունելով
ՌՍԴԲ(բ)Պ Կարսի Կոմիտեին, գրում է. «Դուք խնդրել եք հաղորդել իրադար-
ձությունների մասին։ Ուղարկում ենք Ձեզ այն, ինչ երեկ ուղարկել ենք մեր
բոլոր ընկերներին... Ուղարկում ենք և մեր վերջին բյուլետենները»։ Ութե-
րորդ Կովկասյան լեռնա-հրետանային առանձին դիվիզիոնի բոլշևիկյան բջջին
ուղարկած պարտիայի Կենտկոմի նամակում ասված է. «Ուղարկում ենք Ձեզ
մեր բոլոր բյուլետենները և խնդրում ենք հաղորդել, ինչպես անցան վերջին
իրադարձությունները Ձեզ մոտ։ Կազմակերպական կապերի համար առաջար-
կում ենք Ձեզ կապվել Կովկասյան երկրային Կոմիտեի հետ Թիֆլիսում»։

Անդրկովկասյան բոլշևիկյան կազմակերպությունների համար խոշոր
նշանակություն ունեցավ պարտիայի Կենտկոմի անդամ Ս. Գ. Օրջոնիկիձեի
գալը Անդրկովկաս (1917 թվականի օգոստոսի վերջերին)։ Մ. Դ. Օրախելաշվի-
լին պատմում էր, որ «Սերգոն ամենաեռանդուն մասնակցությունն ունեցավ
անդրկովկասյան բոլշևիկների աշխատանքներին»։ Բաքվի մերձկայարանային
հրապարակում և այլ տեղերում ունեցած իր ելույթներում Օրջոնիկիձեն հան-
դես է գալիս բոցաշունչ ճառերով, նկարագրում երկրում տիրող դրությունը,
կոչ անում մինչև վերջ խորտակիչ հարված հասցնել կոռնիլովյան ավանտյու-
րիստներին և պայքարել սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար։

1917 թվականի հոկտեմբերի 2—7-ը Թիֆլիսում բոլշևիկների պարտիայի
Կենտկոմի ցուցումով տեղի է ունենում ՌՍԴԲ(բ)Պ Կովկասյան կազմակեր-
պությունների երկրային առաջին համագումարը։ Բոլշևիկյան կազմակերպու-
թյունների երկրային համագումարի հրավիրման անհրաժեշտությունը հասու-
նացել էր վաղուց։ Փետրվարյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո երկար
ժամանակ փաստորեն չկար ընդհանուր պարտիական կենտրոն, որը համա-
խմբեր և ուղղություն տար երկրամասի բոլշևիկյան կազմակերպություններին։
Իսկ դա իր բացասական կնիքն էր դրել Անդրկովկասի բոլշևիկյան կազմա-
կերպությունների աշխատանքի վրա։

Միայն պարտիայի Կենտկոմի ցուցումից հետո Կովկասի բոլշևիկյան կազ-
մակերպությունները ձեռնամուխ եղան երկրամասային համագումար հրավի-
րելու և երկրամասային պարտիական կազմակերպություն ձևավորելու աշխա-
տանքներին։ 1917 թվականի սեպտեմբերի 2-ին Բաքվի կազմակերպության
կոնֆերանսում Ա. Ջափարիձեն նշեց «Կովկասյան մարզային կազմակերպու-

*թյուն ստեղծելու անհրաժեշտությունը, որի վրա իր ուշադրությունը հրավիրեց մեր վերջին պարտիական համագումարը (VI—Կ. Ու.)»։*

*Համագումարի աշխատանքներն անմիջականորեն ղեկավարում էր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի անդամ Ստ. Շահումյանը, որը մասնակցել էր սեպտեմբերի 15-ին կայացած Կենտկոմի այն պատմական նիստին, որտեղ քննարկվել էին Վ. Ի. Լենինի նամակները անհապաղ զինված ապստամբությունը կազմակերպելու մասին։*

*ՌՍԴԲ(բ)Պ կովկասյան կազմակերպությունների երկրային առաջին համագումարը կարևոր տեղ է գրավում Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության մեջ։ Այն հսկայական նշանակություն ունեցավ Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների քաղաքական-կազմակերպական ամրապնդման, սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար, նրանց հետագա պայքարի ուժեղացման համար։ Օրակարգում դրված բոլոր հարցերը համագումարը քննարկեց այդ ժամանակաշրջանում պարտիայի առաջ դրված համաշխարհային պատմական խնդրի լուծման՝ պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանության նվաճման տեսանկյունից։ Համագումարը վառ կերպով ցույց տվեց, որ Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները սերտորեն համախմբված են պարտիայի Կենտրոնական Կոմիտեի շուրջը։*

*Համագումարի արդյունքների մասին ՌՍԴԲ(բ)Պ Կովկասյան երկրային Կոմիտեն հաղորդում է պարտիայի Կենտրոնական Կոմիտեին։ Կենտկոմին ուղղված նամակի մեջ ասված է. «Հարգելի ընկերներ, հոկտեմբերի առաջին օրերին տեղի ունեցավ մեր պարտիայի կովկասյան կազմակերպությունների համագումարը, որի շնորհիվ բոլոր կազմակերպությունները միավորվեցին կովկասյան երկրամասային մեկ կազմակերպության մեջ, որի համագումարում ընտրված միավորող և ղեկավար կենտրոնը՝ Կովկասյան Երկրային Կոմիտեն արդեն անցել է աշխատանքի...»։ Իր պատասխան նամակով պարտիայի Կենտրոնական Կոմիտեն հայտնում էր. «Ողջունում ենք Կովկասյան երկրամասային Կոմիտեին և ռևոլյուցիայի բացառիկ կարևոր այս մոմենտին հղում ենք պարտիայի միավորման և շինարարության լավագույն ցանկություններ»։*

*Երկրային համագումարից հետո, Ստ. Շահումյանը որպես պարտիայի Կենտկոմի անդամ հոկտեմբերի 7-ին մեկնում է Ալեքսանդրոպոլ և տեղի բոլշևիկյան կազմակերպությանը տալիս ճիշտ դիրքորոշում՝ կապված համագումարի որոշումների հետ։ Միաժամանակ նա զեկուցումներով հանդես է գալիս Ալեքսանդրոպոլի գավառի գյուղացիական համագումարում և քաղաքի կայազորի զինվորների ժողովում։ Այդ ժողովի և Ալեքսանդրոպոլի կայազորի բոլշևիկյան տրամադրությունների մասին Ստ. Շահումյանը պարտիայի Կենտկոմի օրգան «Ռաբոչի պուտ» թերթում գրել է. «Հոկտեմբերի 9-ին Ալեքսանդրոպոլում տեղի ունեցավ 2000 զինվորների ժողով, լսելով իմ զեկուցումը դեմոկրատական խորհրդակցության մասին, ժողովը բուռն կերպով բողոքեց նախապառլամենտի դեմ և կառավարության դեմ։ Քսան հազարանոց կայազորն ամբողջությամբ բոլշևիկյան է» («Ռաբոչի պուտ», № 35, 1917 թ.)։*

*1917 թվականի հոկտեմբերի 25-ին Պետրոգրադի բանվորներն ու զինվորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, զինված ապստամբությամբ Ռուսաստանում տապալեցին կապիտալիստների և կալվածատերերի իշխանությունը և հիմք դրին բանվորների ու գյուղացիների՝ աշխարհում*



*առաջին պետությանը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակը մինչ այդ չտեսնված թափ հաղորդեց Անդրկովկասի աշխատավոր զանգվածների ռևոլյուցիոն պայքարին, ոգեշնչելով նրանց վճռական մարտի՝ Սովետական իշխանության հաստատման համար։*

*Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպություններն ամբողջովին պաշտպանում էին պարտիայի Կենտրոնական Կոմիտեի լենինյան գիծը, սոցիալիստական ռևոլյուցիայի ծավալման նպատակին ուղղված նրա բոլոր միջոցառումները, սերտորեն համախմբվում նրա շուրջը, հետևողականորեն հանդես գալիս սոցիալիստական ռևոլյուցիայի դասալիքների և պարտիայի միասնությունը խախտողների դեմ։ Այս տեսակետից քաղաքական խոշոր արժեք ունի ՌՍԴԲ(բ)Պ Կովկասյան երկրային Կոմիտեի 1917 թվականի նոյեմբերի վերջերին ընդունած այն բանաձևը, որով նա իր լիակատար վստահությունն է արտահայտում պարտիայի Կենտկոմին և իր համերաշխությունը սոցիալիստական ռևոլյուցիայի ծավալման ուղղությամբ նրա ձեռք առած միջոցառումներին ու քայլերին։*

*Երկրային Կոմիտեն ողջունում է Լենինին որպես մարդկության պատմության տարեգրության մեջ պրոլետարական սխրագործության վեհության և ինտերնացիոնալիզմի ու սոցիալիզմի գործին անհուն և անհողդողդ նվիրվածության էջեր գրած պրոլետարիատի խիզախ առաջնորդի (տե՛ս ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի արխիվ, ֆոնդ 17, գործ 335, թերթ 1)։*

*Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն գոհունակությամբ ընդունեց իր խոշոր կազմակերպություններից մեկի՝ ՌՍԴԲ(բ)Պ Կովկասյան կազմակերպության երկրային Կոմիտեի բանաձևը և կոչ արեց միաձույլ քայլերով ընթանալ դեպի մարդկության լուսաշող ապագան՝ սոցիալիզմը։ Կենտկոմի պատասխան նամակի մեջ ասված է. «Թանկագին ընկերներ. Ձեր բանաձևն ստացել ենք և ողջունում ենք Ձեզ՝ Ձեր գծի կայունության համար։ Միայն այդպիսի միասնական ու համերաշխ աշխատանքով է հնարավոր հասնել մեր վերջնական նպատակին՝ սոցիալիզմին։ Նրա ուրվականը այնքան չի վախեցրել ցարիզմին, որքան նրա իրականացման առաջին քայլերը վախեցնում են բուրժուազիային, որը և գործադրում է ամեն տեսակի հնարավոր ջանքեր, որպեսզի կազմալուծի մեր շարքերը։ Այնպիսի խոշոր կազմակերպություն, ինչպիսին է ՌՍԴԲ (բոլշևիկների) Պ Կովկասյան երկրային Կոմիտեն, աջակցությունն առավել ևս գնահատելի է այն ժամանակ, երբ պատասխանատու պոստեր գրավող ընկերների մի մասը թեքվել է աջ։ Առաջվա նման քայլ առ քայլ մենք կգնանք դեպի առաջ՝ պայծառ ապագային՝ սոցիալիզմին հասնելու համար» (ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի արխիվ, ֆոնդ 17, գործ 82, թերթ 114)։*

*Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները գլխավորում են աշխատավոր զանգվածների հետագա պայքարը սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար, որը և ավարտվում է Սովետական իշխանության հաստատմամբ Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում։*

---

# ԿՈԼԵԿՏԻՎԸ ԵՎ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Բ. ԱՄԻՐԽԱՆՅԱՆ*

Մեր օրերում, կոմունիստական հասարակության հսկայածավալ շինարարության պայմաններում պետական ու հասարակական կարգապահության հարցը ստանում է չափազանց կարևոր նշանակություն։ Այդ կարգապահության էլ ավելի ամրապնդումը դառնում է հրամայական պահանջ։ Դրա ըստ ամենայնի զարգացման նախապայմանը աշխատավորության գիտակցական ու կուլտուրական մակարդակի բարձրացումն է։ Անհրաժեշտ է, որ սոցիալիստական համակեցության կանոնները պահպանվեն անվերապահ կերպով, այն էլ ոչ թե հարկադրանքի միջոցներով, այլ բարձր գիտակցականությամբ։

Այդ առումով սոցիալիստական համակեցության կանոնների խախտումների դեմ մղվող պայքարում հասարակության դերի բարձրացման մասին օրենքի նախագծի այն պահանջը, որ սովետական յուրաքանչյուր քաղաքացի պետք է ոչ միայն անձնապես կատարի օրենքները, հարգի աշխատանքային կարգապահությունը, խնայի ու ամրապնդի սոցիալիստական սեփականությունը, պահպանի սոցիալիստական համակեցության կանոնները, այլև պահանջի, որ նույնը կատարեն նաև ուրիշները և ակտիվորեն պայքարի հակահասարակական երևույթների դեմ—բխում է կոմունիզմի կառուցման նպատակային դրույթներից և հետևապես՝ բոլոր աշխատավորների, ամբողջ սովետական ժողովրդի շահերից։

Սովետական ժողովրդի ճնշող մեծամասնությունը բարձր գիտակցականությամբ է վերաբերվում իր քաղաքացիական-հասարակական պարտքի կատարմանը, ազնվորեն ու անբասիր կերպով է աշխատում կոմունիզմի ծավալուն շինարարության տարբեր ոլորտներում և հպարտությամբ վայելում է ազատ ու ստեղծագործ աշխատանքի արդյունքը։

Սակայն մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների առկայության պատճառով դեռևս տեղ-տեղ տեղի են ունենում իրավախախտումներ, որոնք արտահայտվում են գողության, գռփելու, սպեկուլյացիայի, ուրիշի հաշվին ապրելու, այսինքն՝ պարազիտային կյանք վարելու, խուլիգանության և այլ հակահասարակական գործողությունների ու փաստերի մեջ։

Հասկանալի է, որ այդ կարգի երևույթները արժանանում են ժողովրդի ատելությանն ու անարգանքին, որի շնորհիվ հանցագործության ծավալման համար մեզ մոտ պայմաններ չկան, ինչպես կապիտալի աշխարհում, ուր իշխող սկզբունքը մեկը մյուսի հաշվին ոչ միայն ապրելն է, այլև կապիտալ դիզելը։ Այնուամենայնիվ միևնույնն է, տեղի ունեցող խախտումները, հանցագործ երևույթները վնասում են մեր առաջընթացին, խոչընդոտում ավելի արագ վերելքին։



Ուստի անհրաժեշտ է վճռական պայքար կազմակերպել սոցիալիստական օրինականության նորմաների, համակեցության կանոնները խախտողների, ամեն տեսակի պարազիտների, գողերի, սպեկուլյանտների, սոցիալիստական սեփականությունը հափշտակողների, խուլիգանների, մարդու առողջության և արժանապատվության դեմ ոտնձգություն կատարողների, բոլոր հանցագործությունների և օրինազանցությունների դեմ։

Ամեն տարակուսանքից վեր է, որ որևէ զիջում չի կարող լինել այնպիսի անձանց նկատմամբ, որոնք թույլ են տալիս հանրայնորեն վտանգավոր արարքներ։ Ընդհակառակը, նրանք արժանացել և անվերապահորեն այսուհետև նույնպես կարժանանան սովետական օրենքով նախատեսված ամենախիստ պատասխանատվության։ Սակայն, անմտություն կլիներ պնդել, թե իրավախախտում թույլ տված ամեն մի քաղաքացի պետք է ենթարկվի քրեական պատժի ամբողջ խստությանը, անկախ նրա կողմից թույլ տրված արարքի բնույթից ու վտանգավորության աստիճանից։ Անտարակուսելի է, որ օրինազանցություն թույլ տված անձանց կարելի է դաստիարակել հասարակության բարոյական ազդեցությամբ։ Այդ նպատակով ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեն վերջին տարիների ընթացքում ձեռք առավ մի շարք միջոցներ՝ հասարակայնության դերը բարձրացնելու ուղղությամբ։

Տալով դրան խիստ կարևոր նշանակություն, պարտիայի դիրեկտիվներով սահմանվում է, որ հանցագործությունների և սոցիալիստական համակեցության կանոնների խախտումների դեմ տարվող պայքարի հաջողությունը կախված է, ամենից առաջ, այդ կարևոր գործի մեջ պարտիական, կոմերիտական, պրոֆմիութենական կազմակերպությունների և, ընդհանրապես, հասարակայնության լայն շրջանների մասնակցությունից։ Այդ գործի մեջ պետք է լայնորեն ներգրավվեն հասարակական ինքնագործունեության բոլոր օղակները, այդ թվում՝ ընկերական դատարանները, դրուժինաները և այլն։ «Երբ ակտիվորեն կգործեն հասարակական ընկերական դատարանները և հենց հասարակայնությունը մարդիկ կառանձնացնի հասարակական կարգ ու կանոնի ապահովման համար, այդ ժամանակ անհամեմատ հեշտ կլինի կռվել օրինազանցների դեմ» (Ն. Ս. Խրուշչով)։

Ինչ բնույթի էլ լինեն սոցիալիստական օրինականության խախտումները, միևնույնն է, դրանք անհանդուրժելի են հաղթանակած սոցիալիզմի և առավել ևս կոմունիզմի ծավալուն շինարարության դարաշրջանում։ Այդ իսկ պատճառով անհրաժեշտ է ոչ միայն պայքարել դրանց դեմ, այլև իսպառ վերացնել դրանք։ Դա միանգամայն հնարավոր է իրականացնել աշխատավորության լայն զանգվածների մեջ այդ խախտումների նկատմամբ անհանդուրժողական վերաբերմունք ստեղծելու և ոչ թե պատիժները սաստկացնելու, կամ դրանց տևողությունը երկարացնելու միջոցով։

Այդ արմատական վերափոխությունն ապահովելու նպատակով պարտիայի ու կառավարության ցուցումներով մի շարք ֆունկցիաներ վարչական օրգաններից վերցվել և տրվել են աշխատավորության ինքնագործունեության կազմակերպություններին։ Այսպես, օրինակ, հասարակական կարգի պահպանումը, զանցառուների նկատմամբ նախազգուշական և այլ բնույթի միջոցառումներ ձեռնարկելը և հակահասարակական արարքներ թույլ տվող անձանց ուղղելը՝ ժողովրդական կամավոր դրուժինաներին ու տնային կառավարչություններին առընթեր գործող թաղային կոմիտեներին. աշխատանքային կար-

դապահությունը խախտելու, բնակարանային-կոմունալ սպասարկման, ընտանեկան-կենցաղային և այլ բնույթի հարաբերություններից բխող վեճերի կարգավորումը հանձնել ընկերական դատարաններին, իսկ երեխաների շրջանում առաջացող հնարավոր խախտումներին հակազդելու, անպատասխանատվությունը կանխելու և իսպառ վերացնելու հարցերով զբաղվելը՝ անչափահասների գործերը կարգավորող հանձնաժողովներին և այլն։

Նշված հասարակական կազմակերպությունները ըստ իրենց գործունեության շրջանակների ու գործադրման ենթակա միջոցառումների, հանդիսանում են համոզման, օրինականությունը խախտելուց ետ պահող, խախտում թույլ տվողին կարգի հրավիրող օրգաններ, իսկ եթե չի աշխատում, հանրօգուտ աշխատանքի մեջ ներգրավելու, նրա առօրյայով հետաքրքրվելու, նրա առաջ ծառացած դժվարությունները հարթելու, նրա ապրելու ու գործունեության համար նորմալ պայմաններ ստեղծելու և այդպիսով նրան վերադաստիարակող և ոչ թե անվերապահ հարկադրանքի ենթարկող օրգաններ։

Ինքնըստինքյան պարզ է, որ գործունեության այդ մեթոդը ո՞չ թե կթուլացնի, այլ ընդհակառակը «...կընդլայնի ու էլ ավելի կամրապնդի սոցիալիստական հասարակարգի քաղաքական հիմքը» (Ն. Ս. Խրուշչով)։

Հարց է առաջանում. ինչո՞ւ։ Որովհետև հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարը լայն հասարակայնության ձեռքում կենտրոնացնելը կառաջացնի մասսայական հարված անկարգապահության դեմ։ Եվ դա կիրագործվի ոչ թե էպիզոդիկ միջոցառման, կամ կամպանիայի կարգով, այլ համընդհանուր շարժման, անընդմեջ պայքարի ձևով, որի շնորհիվ պարտավորություն լինելուց կարգապահությունը կդառնա սովորություն և կմտնի մարդկանց կենցաղի մեջ որպես սովորութային կանոն, որպիսի դեպքում իրավախախտումներ չեն առաջանա և հարկադրանք կիրառելու անհրաժեշտություն չի լինի։

Օրինախախտումներ թույլ տված անձանց աշխատավորական կոլեկտիվների միջոցով դաստիարակելու միջոցների թվում կարևոր տեղ ունի նշված կազմակերպությունների կողմից դատաքննչական օրգանների առաջ միջնորդություն հարուցելը և դրանով իսկ իրավախախտում կատարած անձին դաստիարակելու պարտականությունն իր վրա վերցնելը։

Անցյալ մի քանի ամիսների ընթացքում ռեսպուբլիկայի դատական օրգանները զանազան կոլեկտիվներից ստացել են մի քանի հարյուրի հասնող միջնորդություններ, որոնց ճնշող մեծամասնությունը բավարարվել է։ Ընդառաջելով հասարակական կազմակերպությունների ցանկություններին, շատ քաղաքացիների դաստիարակման գործը հանձնվել է համապատասխան կոլեկտիվներին։ Ըստ դատական օրգանների հասցեով ստացված հաղորդագրությունների, կոլեկտիվների դաստիարակությանը հանձնված համարյա բոլոր անձինք բարձր են գնահատում հասարակայնության մեծահոգի վերաբերմունքն ու վստահությունը, ուղղում են իրենց վարքագիծը և ձգտում արդարացնել իրենց վրա դրված հույսերը։

Որպես օրինակ կարող է հանդիսանալ Երևան քաղաքի Շահումյանի շրջանի Ստալինի անվան տրիկոտաժի ֆաբրիկայի պահեստապետ Թեմուր Խաչատրյանը, որը ծածուկ կերպով ֆաբրիկայից դուրս էր բերել 1200 ռուբլու հագուստեղեն։ Դրա համար նա տրվել էր դատի։ Շրջանի ժողդատարանը որոշեց Խաչատրյանի գործը քննության առնել ֆաբրիկայում՝ կոլեկտիվի առաջ։ Խա-



չատրյանը շատ խնդրեց իրեն ենթարկել թեկուզ 20 տարվա բանտարկության, բայց չներկայացնել կոլեկտիվին։ Նրա այդ խնդրանքը մերժվեց. գործը լսվեց ֆաբրիկայում և նա ենթարկվեց 10 տարվա բանտարկության։

Սակայն, հաշվի առնելով ֆաբրիկայի կոլեկտիվի միջնորդությունը, Խաչատրյանի դաստիարակությունը հանձնվեց այդ կոլեկտիվին։ Ֆաբրիկա վերադառնալուց հետո նա օգտագործվեց որպես շինարարության բանվոր։ Նկատի ունենալով նրա լավ աշխատանքը և անբիծ վարքագիծը՝ նա շուտով փոխադրվեց արտադրություն, որտեղ և այժմ նա աշխատում է։ Բոլորը գոհ են նրանից, իսկ ինքը՝ կոլեկտիվից։

Կարելի է բերել այդպիսի բազմաթիվ օրինակներ, որոնք վառ ապացույց են իսկական սովետական մարդասիրության։

Բայց ներկայացվող ոչ բոլոր միջնորդություններն են հիմնավոր և ընդունելի։ Երբեմն ստացվում են այնպիսի միջնորդագրեր, որոնք կազմվել են կոլեկտիվի մեկ-երկու ղեկավարների կաբինետային համաձայնության կարգով, այսինքն՝ բյուրոկրատական-չինովնիկական ձևով, անտեսելով ամենագլխավորը՝ կոլեկտիվը, նրա հասարակական բարոյական մեծ ուժը, ստեղծագործական նախաձեռնությունը։ Որպես օրինակ կարելի է հիշատակել Երքաղսովետի գործկոմի հողարկավորման տրեստից՝ դատապարտյալ Ջավեն Մուշեղի Գևորգյանի գործով բերված միջնորդագիրը։ Առաջին հայացքից ամեն ինչ կարգին է. այն կազմված է տրեստի կառավարչի, տեղկոմի նախագահի և կոմերիտական սկզբնական կազմակերպության քարտուղարի ստորագրությամբ, կնքված է ու հաստատված։ Մինչդեռ, այդպիսի միջնորդագիր ներկայացնելու հարցը կոլեկտիվում քննության չի առնվել, կոլեկտիվը նույնիսկ տեղեկություն չի ունեցել այդ մասին և, բնականաբար, չի կարող ստանձնել Գևորգյանի դաստիարակությունը։

Ինքնըստինքյան պարզ է, որ դա օրինական փաստաթուղթ չէ։ Ավելին, տրեստի ղեկավարությունը, փոխանակ ձեռնարկելու իրենից կախված ամեն բան տեղի ունեցած իրավախախտումն արագ կերպով ուղղելու համար, թույլ է տվել նոր խախտում։

Ակներև է, որ դա գործի նկատմամբ ոչ լուրջ, անփույթ, անհոգի վերաբերմունքի տիպիկ օրինակ է, այն էլ մի այնպիսի նուրբ ու պատասխանատու հարցում, ինչպիսին մարդու բնավորությունն ազնվացնելն է, նրան դաստիարակելը, նրա մեջ իսկական սովետական մարդու գծեր արմատավորելը։ Ենթադրել, թե այդպիսի հասարակացված եղանակով քրեական պատասխանատվությունից ազատված անձը շուտով կուղղվի, կվերադաստիարակվի, սխալ է, քանի որ կոլեկտիվը նրա դաստիարակման հարցով չի զբաղվի, այդպիսի պարտականություն նախապես իր վրա վերցրած չլինելու պատճառով։ Իրեն պատասխանատու չի զգա նաև խախտում թույլ տված անձը։ Ավելին, նա հետագայում կարող է կրկնել իր նախկին վարքագիծը, կարծելով, որ հեշտ է խուսափել պատասխանատվությունից։

Հետևապես, հասարակական կազմակերպությունների, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները, որոնք գիտակցաբար, թե անգիտակցաբար այդ կարգի խախտում են թույլ տվել, պետք է արագ կերպով վերակառուցեն իրենց աշխատանքը, այսինքն՝ յուրաքանչյուր կոնկրետ դեպքում միջնորդություն ներկայացնելու հարցը լուծեն ոչ թե միայն ղեկավարների, այլ ողջ կոլեկտիվի հայեցողությամբ։ Միջնորդություն ներկայացնելու հարցը դնեն կոլեկ-

տիվի առաջ, որպեսզի նրա անդամները տնօրինեն օրինազանցին դաստիարակության ընդունելու-չընդունելու հարցը, ուստի և պատրաստ լինեն այնպիսի կարևոր գործի, ինչպիսին մարդուն դաստիարակելն է։

Միջնորդություններ պետք է ներկայացվեն ոչ ամեն դեպքում, մասնավորապես հանրայնորեն խիստ վտանգավոր արարք, ասենք, օրինակ՝ կողոպուտ, սպանություն կատարած անձանց նկատմամբ։ Ինչո՞ւ։ Որովհետև այդպիսի ծանր արարք թույլ տված անձին խիստ պատժի չենթարկելը կարող է թշնամական զգացումներ առաջացնել տվյալ արարքից տուժած քաղաքացիների մոտ և խիստ վտանգավոր լինել հենց իր՝ տվյալ անձի համար։ Բացի այդ, դա նախազգուշական նշանակություն չի ունենա հիշյալ կարգի տմարդի արարք կատարած անձի շրջապատի համար։

Ցավոք սրտի առանձին կազմակերպությունների ղեկավարներ դեռևս պատշաճ ուշադրություն չդարձնելով հարցի այս կողմի վրա, երբեմն միջնորդություններ են ներկայացնում խիստ վտանգավոր արարքներ թույլ տված անձանց նկատմամբ։ Օրինակ՝ «Յուգոլներգոշերմետի» հայկական գրասենյակի կոլեկտիվը միջնորդություն է հարուցել իր աշխատակից, փականագործ Գ. Ի. Ուստաբաշիևի գործով այն դեպքում, երբ նա կրկնահանցագործ իր երկու այլ համախոհների հետ միասին, կողոպտելու նպատակով, զինված հարձակում է կատարել քաղ. Ռ. Հ. Ավագյանի վրա, կրակ բացել և մարմնական վնաս պատճառել նրան։

Հարկ չկա ապացուցելու, որ նշված գրասենյակի կոլեկտիվը հազիվ թե կարողանար դաստիարակել այդ աստիճան սանձարձակ անձնավորության։ Հետևապես, եթե ժողդատարանը հաշվի առներ այդ միջնորդությունը, ապա տվյալ գրասենյակի կոլեկտիվը նրան դաստիարակելու հարցում կկանգներ գրեթե անելանելի դրության առաջ, չխոսելով արդեն այն մասին, որ Ուստաբաշիևը դժվար թե դաս առներ այդպիսի վերաբերմունքից։ Այդ նկատառումներով Շահումյանի շրջանային ժողդատարանը մերժեց վերոհիշյալ կոլեկտիվի միջնորդությունը և հանցագործին ենթարկեց երկարատև բանտարկության։

Նման կարգի անմտածված, ոչ լուրջ վերաբերմունքի օրինակները փոքրաթիվ չեն։ Սակայն բավարարվենք այսքանով։

Օրինազանցություն թույլ տված անձանց հասարակայնության ուժերով դաստիարակելու գործում սխալ պետք է համարել նաև այնպիսի վերաբերմունքի դրսևորումը, երբ որոշ կազմակերպություններ այս կամ այն անձի դաստիարակությունն իրենց վրա վերցնելուց հետո սիստեմատիկ կերպով չեն զբաղվում նրանցով։ Երբեմն նրանց միայն տեղավորում են աշխատանքի, տալիս որոշ հանձնարարություններ (մանավանդ առաջին օրերին) և այնուհետև մոռանում են իրենց պարտավորությունը։ Բնական է, որ այսպիսի դեպքերում դրական արդյունքի հասնել հնարավոր չէ։ Օրինակ, քաղաքացի Ս. Ս. Սարգսյանը 1959 թ. նոյեմբերին հարբած վիճակում դուրս գալով փողոց, թույլ էր տվել խուլիգանական արարք. հայհոյել էր քաղաքացիներին, աղմուկ բարձրացրել, իրեն կարգի հրավիրող Ս. Հարությունյանին ծեծել։ Պարզ է, դրա համար նա քրեական պատասխանատվության էր կանչվել և պետք է ենթարկվեր խիստ պատժի։

Սակայն, հաշվի առնելով Ստալինյան շրջանի № 14 բնակկառավարչության թաղային կոմիտեի միջնորդությունը, այդ կոմիտեի նախագահի անձ-



նական հավաստիացումները, ժողդատարանը մեղադրյալ Սարգսյանին ենթարկեց պայմանական ազատազրկման և նրա դաստիարակությունը դրեց թաղային վերոհիշյալ կոմիտեի վրա։

Ինչպես պարզված է հետագա ուսումնասիրություններից, Սարգսյանի դաստիարակման գործով թաղային այդ կոմիտեն ոչ մի միջոցառման չի դիմել, շուրջ 6 ամսվա ընթացքում նրա հարցով համարյա չի զբաղվել։ Պատահականություն չէ, որ նա ոչ միայն չուղղվեց, այլև 1960 թ. փետրվարին կատարեց նույնպիսի հանցագործություն։ Բայց այս անգամ ժողդատարանը չզիջեց նրան, անհապաղ մեկուսացրեց հասարակությունից, դատապարտելով 2 տարվա ազատազրկման։

Վերջապես-սխալներ կան նաև դատաքննչական ապարատի գործունեության մեջ։ Դրանք առավելապես արտահայտվում են այն բանում, որ երբեմն հասարակայնության դաստիարակությանն են հանձնվում այնպիսի անձինք, որոնք այդ ձևով դաստիարակելու տվյալներ չունեն։ Այդ առումով կարող է օրինակ հանդիսանալ քաղ. Պ. Ա. Կարապետյանի գործը։ Դեռ 1958 թ. հունվարին նա բռնվել էր քաղ. Ս. Սամարովայի պայուսակից 25 ռ. դրամ գողանալու մեջ։ Հիշյալ արարքի համար Երևան քաղաքի Սպանդարյանի շրջանի ժողդատարանը 1958 թ. դեկտեմբեր ամսին նրան դատապարտեց պայմանական ազատազրկման մեկ տարի ժամանակով։ Ըստ որում նկատի է առնվել նրա երիտասարդությունը, մինչ այդ դատված չլինելը և այլն, որը ճիշտ է։

Բայց դրանից լուրջ եզրակացություն չարեց Կարապետյանը։ Դեռ մեկ տարվա պայմանականը չլրացած, 1959 թ. օգոստոս ամսում նա թույլ տվեց նոր արարք՝ քաղ. Հակոբյանի գրպանից գողացավ 141 ռ. ու նորից կանգնեց դատարանի առաջ։ Եվ ահա 26 կոմիսարների անվան շրջանային ժողդատարանը քննության առնելով գործը՝ նրան դարձյալ ենթարկեց նույն պատժին— պայմանական ազատազրկման։

Կարելի՞ է ճիշտ համարել դա։ Իհարկե ոչ։ Ինչո՞ւ։ Որովհետև նախորդ գործի փորձից արդեն իսկ դատարանին հայտնի էր, որ այդ կարգի պատիժը դաստիարակիչ նշանակություն չի ունենում նրա համար։ Ուստի, անհրաժեշտ էր ձեռք առնել այլ բնույթի այնպիսի միջոց, որն ազդու և ներգործող լիներ նրա համար, վերջ դներ նրա պարազիտային կյանքին և նրան բարձրացներ ազնիվ մարդու մակարդակի։

Այս կարգի փաստեր կան նաև նույն շրջանի դատախազության աշխատանքի պրակտիկայում։

Ձեռքի տակ լավ մշակված որոշումներ ունենալը դեռևս քիչ է։ Կոլեկտիվի անելիքը չի սպառվում ի միջի այլոց միջնորդություն ներկայացնելով, հանցանքը կատարած անձին այդ կարգով քրեական պատասխանատվությունից ազատելով և նրա մոտ «լավամարդ» դառնալով։ Իրականում դրա մեջ լավություն անելու նշույլ անգամ չկա։ Դա արջի ծառայություն է և ուրիշ ոչինչ, որովհետև ոչնչով չի նպաստում սխալ կատարած անձի դաստիարակմանը։

Մինչդեռ անհրաժեշտ է պարտիայի ու կառավարության ձեռնարկած միջոցառումները կենսագործել խելացիորեն, հեռանկարային ասպեկտով, եռանդուն ջանասիրությամբ, բոլոր հնարավորությունների օգտագործմամբ և այն համոզմամբ, որ այդ միջոցառումների ճիշտ կատարումը անպայմանորեն կհանգեցնի օրինախախտում թույլ տված անձի դաստիարակմանը, որը բխում

է ինչպես տվյալ անձի, այնպես էլ ողջ հասարակության շահերից։ Դրան հասնելու համար պահանջվում է համառ, համբերատար և սիստեմատիկ աշխատանք։ Պետք է աշխատել ոչ թե նախապես սահմանված դոգմաներով, այլ ստեղծագործաբար։ Որոնել և յուրաքանչյուր կոնկրետ դեպքում գտնել մարդուն դաստիարակելու հարմարավետ միջոցը, հաշվի առնել խախտում թույլ տված անձի ընտանեկան-կենցաղային պայմանները, անցյալը, ներկան, շրջապատը, նրա մտածելակերպը, հայացքները և այլն։

Մինչդեռ, այդպիսի անհատականացված մոտեցում դեռևս ամենուրեք չի ցուցաբերվում խախտում թույլ տված և դաստիարակման ենթակա յուրաքանչյուր անձի նկատմամբ, որն իհարկե, հետևանք է պատշաճ պատասխանատվության բացակայության՝ այդ ամենապատասխանատու գործում։ Մեր խնդիրն է՝ ամեն ինչ անել այդ ուղղությամբ նոր հաջողությունների հասնելու համար։

Չպետք է մոռանալ, որ համակեցության կանոնների խախտումը մեծ մասամբ հետևանք է ոչ պատշաճ դաստիարակության, մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների առկայության։ Հետևապես, մեկեն հնարավոր չէ վերացնել այն։ Խախտում թույլ տվողն ինքնաբերաբար չի ուղղվի, չի դաստիարակվի։ Բայց նա կարող է անպայման վերադաստիարակվել ու կոմունիզմի ակտիվ կառուցողների շարքը մտնել անդուլ աշխատանքի միջոցով, հասարակության ուշադիր հսկողության պայմաններում։

Ուստի նա պետք է մշտապես գտնվի կոլեկտիվի—ընդհանուր հասարակայնության ուշադրության կենտրոնում։ Ամեն, նույնիսկ փոքր զանցառության համար նա պետք է արժանանա կոլեկտիվի անդամների ընկերական ու բարեկամական, բայց անաչառ պարսավանքին, այն հաշվով, որ նա չհիասթափվի՝ իրեն խայտառակելու փաստից և ոչ էլ ոգևորվի ներողամիտ վերաբերմունքից, այլ գիտակցաբար բարձր գնահատի հարազատ պարտիայի ու կառավարության և սովետական հասարակայնության վեհանձն ու բարձրահոգի վերաբերմունքը։

Պետական ու հասարակական կարգապահության ամրապնդման գործին լրջությամբ, գործիմացությամբ մոտենալու դեպքում հակահասարակական երևույթները կպակասեն ու կանհետանան։

---

# ԿԻԲԵՌՆԵՏԻԿԱՆ ԵՎ ԿՅԱՆՔԸ

ՍՏ. ԹՈՎՄԱՍՅԱՆ

Մոտ 15 տարի առաջ ամերիկյան մաթեմատիկոս Ն. Վիները ձևակերպեց «Կիբեռնետիկա» հնչուն անունը ստացած նոր գիտության հիմնական հասկացողությունները։

Ն. Վիների և նրա հետևորդների հիմնական գաղափարը կայանում է նրանում, որ արհեստական ֆիզիկական սիստեմներում (էլեկտրոնային մեքենաներ), կենսաբանական սիստեմներում (կենդանի օրգանիզմ) և սոցիալական սիստեմներում (մարդկային հասարակություն) ընթացող պրոցեսների կառավարման, կարգավորման և վերահսկման սկզբունքներում շատ ընդհանուր բան կա։ Դա հիմք է տալիս մեքենաներում, օրգանիզմներում և մարդկային հասարակության մեջ մշակելու կառավարման, կապի ու վերահսկողության ընդհանուր տեսությունը։

Ինչպես ամեն մի նոր գիտական դիսցիպլին, կիբեռնետիկան մեկ մարդու ստեղծագործություն չէ։ Այդ գիտության հիմնական դրույթներից շատերը ձևակերպվել և մանրամասնորեն մշակվել են զանազան երկրների գիտնականների ջանքերով։ Նշելով, մասնավորապես, ռուս մաթեմատիկական դպրոցի ներկայացուցիչների աշխատությունների հսկայական նշանակությունը կիբեռնետիկայի զարգացման համար, Ն. Վիները, իր վերջին աշխատություններից մեկում գրում է. «Իմ բոլոր իսկապես խոր գաղափարները Ա. Ն. Կոլմոգորովի աշխատություններում ավելի շուտ են պարունակվել, քան նրանք երևան են եկել իմ սեփական աշխատությունում» [1]։

Նոր գիտության անունը պայմանական է։ Նա ծագում է հունարեն «կիբեռնետես» բառից, որ նշանակում է ղեկավար, ղեկը վարող, որևէ բան կառավարող մարդ։

Պետք է սկզբից ասել, որ կիբեռնետիկան որպես գիտություն գտնվում է ձևավորման ու գոյացման ստադիայում և այդ պատճառով, բնական է, որ նրա ոչ բոլոր դրույթներն են բավական լրիվ ու բազմակողմանի մշակված։ Դեռ ավելին, կիբեռնետիկայի մի շարք հասկացողություններ, սկսած նրա առարկայի բնորոշումից և վերջացրած նրա որոշ հիմնական ֆորմուլաների մեկնաբանությամբ դեռևս հիմնական գիտական հիմնավորում չեն ստացել և առնվազն վիճելի են։ Հենց այդ հանգամանքն էլ նպաստում է այն բանին, որ երիտասարդ գիտական ուղղության առողջ և կենսունակ մարմնի վրա այժմ մակաբուծում են միանգամայն որոշակի քաղաքական կողմնորոշման մի շարք իդեալիստական և նեոմեխանիստական տեսություններ։

1 N. Wiener, «J am a mathematician», 1956, p. 261.

Կիբեռնետիկայի՝ որակապես զանազան սիստեմներում կապի և կառավարման ընդհանուր օրինաչափություններն ուսումնասիրող հատուկ գիտական դիսցիպլինի ծագումը պայմանավորված է, ամենից առաջ, այն խնդիրներով, որոնք արտադրության ու տեխնիկայի զարգացման ժամանակակից էտապում դրվել են գիտության առաջ։

Աշխատանքի միջոցների բուռն զարգացման ընթացքում, արտադրական և գիտական ամենաբարդ ապարատուրայի ստեղծման պրոցեսում ներկա դարի արդեն առաջին տասնամյակներում մարդկությունը բախվեց աշխատանքային մեխանիզմների նորմալ կառավարումն և վերահսկումն ապահովելու հարցում եղած լուրջ դժվարությունների հետ։ Արտադրական պրոցեսների բարդացումն ու արագացումը, բարդ ապարատուրա և շատ մեծ քանակությամբ հաշվումներ պահանջող գիտական հետազոտությունների խորացումը, գերարագությունների, գերճնշումների և գերջերմաստիճանների պայմաններում ընթացող (ատոմային ինդուստրիա, կոսմիկական թռիչքներ հրթիռների օգնությամբ, որոշ քիմիական արտադրություններ և այլն) մի շարք արտադրությունների և պրոցեսների երևան գալը մարդկությանը դրեցին այնպիսի ավտոմատիկ սիստեմներ ստեղծելու անհրաժեշտության առաջ, որոնք կարողանային լրիվ կամ մասամբ իրենց վրա վերցնել արտադրական պրոցեսների վերահսկման, կարգավորման և կառավարման՝ մարդու ֆունկցիաները։ Մարդու զգայությունների համեմատաբար անկատար, դանդաղորեն հակազդող օրգանները, որոնք, բացի դրանից, օժտված են ըմբռնողության սահմանափակ դիապազոններով, անընդունակ հանդիսացան ժամանակակից բարդ մեքենաների ինդիկատորներից ստացվող հսկայական քանակությամբ ցուցանիշներ (պարամետրեր) գոհացուցիչ վերամշակելու համար, այն արագ և ճշգրիտ լուծումներն ու գործողությունները ընդունելու համար, որոնք ուղղված են արտադրական կամ մի այլ պրոցեսի նորմալ ընթացքն ապահովելուն։ Խնդիր դրվեց ստեղծել կառավարման ու կարգավորման այնպիսի արագագործ սիստեմներ, որոնք կարողանային իրենց վրա վերցնել մարդու մտավոր աշխատանքին հատուկ որոշ ֆունկցիաներ։ Ֆիզիկական աշխատանքի պրոցեսների մեքենայացումից անմիջապես հետո անհրաժեշտություն ծագեց մեքենայացնել կառավարման ու կարգավորման հետ կապված մարդու մտավոր գործունեության որոշակի կողմերը։



Մեխանիկական սիստեմների ավտոմատիկ կառավարման թեորիայի ու պրակտիկայի զարգացումը շուտով ցույց տվեց, որ պրոցեսների կառավարման ու վերահսկման ավտոմատիկ սարքերի գործողության շատ հիմնական սկզբունքներ համանման են կառավարման ու կարգավորման այն պրոցեսներին, որոնք ընթանում են կենդանի օրգանիզմներում։ Ամենից առաջ աչքի է զարնում մեխանիկական ու կենսաբանական սիստեմների կարգավորման սկզբունքային սխեմայի համանմանությունը։

Ինչպես ավտոմատիկ կառավարվող սիստեմներում, այնպես էլ կենդանի օրգանիզմում կարգավորման պրոցեսների համար ընդհանուրը հանդիսանում է նաև, այսպես կոչված, հետադարձ կապի սկզբունքը, կիբեռնետիկայի հիմ-



նական սկզբունքներից մեկը։ Բանն այն է, որ ինչպես մեխանիկական, այնպես էլ կենսաբանական ամեն մի սիստեմի գործողություն ընթանում է սիստեմի կայունությունը խանգարող արտաքին մշտական ներգործության պայմաններում։ Դա ջերմաստիճանի փոփոխությունն է քիմիական արտադրություններում, հոսանքի մեծացումը կամ փոքրացումը էլեկտրական շղթաներում, էլեկտրական մեքենայի ռոտորի պտտման արագության նվազումը կամ ավելացումը բեռնավորման փոփոխվելու կապակցությամբ և այլն։ Կենսաբանական սիստեմներում այդպիսի փոփոխություններ են հանդիսանում մարմնի և արյան ջերմաստիճանի նորմաների խախտումները, շնչերակային ճնշման մակարդակի փոփոխությունը, արյան բաղադրության փոփոխությունը և այլն։ Նորմայից տեղի ունեցող այդ բոլոր շեղումները հանդիսանում են այն ներգործությունները, որոնք կարող են առաջ բերել սիստեմի գործողության լրիվ խախտումը, մեխանիկական սիստեմի քայքայումը կամ օրգանիզմի կործանումը։

Այդ պատճառով էլ ամեն մի գործող սիստեմ պետք է օժտված լինի կարգավորման սխեմայով, որ կառուցված է հետադարձ կապի սկզբունքով, այսինքն՝ կարգավորող և կարգավորվող օրգանի միջև գոյություն ունեցող կապի այնպիսի սիստեմով, որի դեպքում կարգավորող օրգանն անընդհատ ինֆորմացիա է ստանում իր գործողությունների արդյունքների մասին և ստացված տվյալներին համապատասխան շարունակ ուղղում է սիստեմը, այն դարձնելով մշտակայուն։ Հետադարձ կապի սկզբունքի վրա հիմնված ավտոմատիկ կարգավորման պարզագույն օրինակ է թերմոստատը՝ հաստատուն ջերմաստիճան պահպանելու համար կիրառվող գործիքը։ Թերմոստատի հետևող սիստեմի տվիչները անընդհատ տեղեկացնում են կարգավորող սարքերին կառավարվող միջավայրի ջերմաստիճանի վիճակի մասին։ Կարգավորիչը միջավայրի ջերմաստիճանը «համեմատելով» սկզբից տրված մեծության հետ, գործադիր մեխանիզմներին տալիս է ջերմաստիճանը բարձրացնելու կամ ցածրացնելու «հրամաններ» և նորից տվիչների միջոցով տեղեկություններ ստանալով գործադիր օրգանների գործողությունների օգտակար էֆեկտի մասին, ուղղում է իր «հրամանները» անբավարար արդյունքների դեպքում։ Կարգավորման այդպիսի սիստեմը համանման է կենդանի օրգանիզմների կանոնավորման սխեմային, որտեղ իրականացվում է, այսպես կոչված, օղակաձև կառավարման պրոցեսը հետադարձ կապի օգնությամբ։ Կենդանի օրգանիզմներում, ինչպես նաև մեխանիկորեն կառավարվող սիստեմներում հիմնական պարամետրերի (օրինակ, մարմնի ջերմաստիճանի, արյան քիմիական բաղադրության, շնչերակային ճնշման մակարդակի և այլնի (մշտակայունությունը պահպանվում է, ըստ էության, հետադարձ կապի յուրահատուկ մեխանիզմի օգնությամբ։ Կենդանի օրգանիզմներում և արհեստականորեն ստեղծված կառավարվող սիստեմներում կառավարման ու կապի սկզբունքների որոշակի ընդհանրությունը բնութագրող օրինակների թիվը կարելի է շարունակել։

Նրանք բոլորն էլ հիմք են ծառայել կապի, կառավարման ու վերահսկման պրոբլեմների ընդհանրացված տեսական մեկնաբանության համար, անկախ սիստեմի ֆիզիկական բնությունից, բնույթից և կազմությունից, քննարկելով միայն կառավարման ու կարգավորման քանակական սկզբունքները, որոնք ընդհանուր շատ բան ունեն ինչպես ֆիզիկական, այնպես էլ կենսաբանական սիստեմների համար։

Տարբեր որակի սիստեմների և պրոցեսների կիբեռնետիկական վերլուծության սկզբունքային հնարավորությունն ու նպատակահարմարությունը միասնական տեսակետից, վերջին հաշվով, հենվում է աշխարհի նյութական միասնության սկզբունքի վրա։ Մատերիալիստական դիալեկտիկան քննարկում է իրականությունը իբրև ընդհատվող և անընդմեջ, առանձին և ամբողջական անխզելի ընդհանրություն։ Պնդելով իրերի, երևույթների ու պրոցեսների որակական առանձնահատկությունը, ընդգծելով մատերիայի շարժման որակապես զանազան ձևերի չմիաբերվողությունը, դիալեկտիկան միևնույն ժամանակ բացասում է նրանց միջև ամեն մի անանցանելի սահման։ Պրոգրեսիվ զարգացման բուն պրոցեսը վերընթաց գծով, մատերիայի ու շարժման գոյության նոր, բարձրագույն ձևերի առաջացման պրոցեսը, անկենդան մատերիայից դեպի կենդանի մատերիան որակական թռիչքի պրոցեսը կարող է հասկացվել և բացատրվել միայն այն ժամանակ, երբ զարգացման իդեան հենվում է աշխարհի նյութական միասնության սկզբունքի վրա։ Հենց այդ պատճառով էլ Վ. Ի. Լենինը ընդգծում էր, որ «...զարգացման ընդհանուր սկզբունքը պետք է միացնել, կապել, համատեղել աշխարհի, բնության, շարժման, մատերիայի միասնության ընդհանուր սկզբունքի հետ» [1]։

Զանազան բնական երևույթներում ընթացող պրոցեսների ըստ որակի քննարկման գործնական նպատակահարմարությունը և տեսական բեղմնավորությունը միասնական տեսակետից, առանձնացնելով նրանց բոլորի համար ընդհանուր կողմերը, նոր բան չէ գիտության համար։ Հետազոտության մաթեմատիկական մեթոդները վաղուց ցույց են տվել, որ այդպիսի վերլուծության հնարավորությունը (տվյալ դեպքում նրանց քանակական բնութագրման տեսակետից) հիմնվում է բնության նյութական միասնության օբյեկտիվ հիմքի վրա։ «Բնության միասնությունը,— գրում էր Վ. Ի. Լենինը,— երևան է գալիս երևույթների զանազան բնագավառներին վերաբերող դիֆերենցիալ հավասարումների «զարմանալի համանմանության մեջ» [2]։

Դեռ ականավոր մաթեմատիկոս և նավաշինարար ակադեմիկոս Ա. Ն. Կռիլովը ընդգծում էր, որ արևի ձգողության ազդեցության տակ երկնային մարմինների շարժման հաշվարկը և ծովային ալիքների ազդեցության տակ նավի ճոճման հաշվարկը արտահայտվում են մեկ հավասարումով։ Երկու անհայտով հանրահաշվական գծային հավասարումների սիստեմը ընդհանուր է թե՛ ակտիվ դիմադրություն ունեցող էլեկտրական շղթայի լարման հաշվարկի համար, թե՛ լծակների սիստեմում ուժերի հավասարակշռության հաշվարկների համար, թե որոշ տնտեսական հաշվարկների համար, օրինակ արտադրության մեջ հաստոցների բեռնվածքի հաշվարկների համար։ Տատանումների տեսությունը մշակել է անալիտիկ հարաբերակցություններ, որոնք ընդհանուր են ինչպես մեխանիկական (ներառյալ նաև ակուստիկ) տատանումների համար, այնպես էլ էլեկտրամագնիսական տատանումների համար) լույս, ռադիոալիքներ և այլն)։ Եվ ինչպես ֆիզիկան կամ մաթեմատիկան, քննարկելով ընդհանուր որոշակի տեսանկյան տակ զանազան երևույթներ և պրոցեսներ, սահմանելով երևույթների տվյալ դասի համար որոշ ընդհանուր օրինաչափություններ, նրանց չի նույնացնում, այնպես էլ կիբեռնետիկան, գործ ունենալով որակապես

[1] *В. И. Ленин*, «Философские тетради», 1947, стр. 239.
[2] Վ. Ի. Լենին, *Երկեր, հ. 14, էջ 386*։



զանազան սիստեմներում ընթացող կառավարման ու կապի պրոցեսների հետ, նրանց չի նույնացնում, կենսաբանական պրոցեսները չի միաբերում մեխանիկական կամ էլեկտրական պրոցեսների հետ։ «Երբ ես կենդանի օրգանիզմը համեմատում եմ... մեքենայի հետ,— գրել է Ն. Վիները,— ես ոչ մի րոպե չեմ ընդունում, որ կյանքի ֆիզիկական, քիմիական և հոգեկան պրոցեսները նրա մասին մեր ունեցած սովորական պատկերացման մեջ միատեսակ են կյանքն ընդօրինակող մեքենաներում ընթացող պրոցեսների հետ» [1]։

Հիմա արդեն ոչ ոքի կասկածը չի առաջացնում այն փաստը, որ կիբեռնետիկան իրականության երևույթների մեխանիստական հասկացողության վրա հենվող գիտություն չէ։ Նա, ինչպես նաև ամեն մի այլ բնական-փորձառական գիտություն թե՛ իր հետևություններում, թե՛ ընդհանուր սկզբունքներում լիովին համաձայնեցվում է դիալեկտիկական մատերիալիզմի դրույթների հետ։ Կիբեռնետիկական սկզբունքների մեխանիստական մեկնաբանությունը, որ բնորոշ է մի շարք արտասահմանյան հետազոտողների համար, չի բխում այդ երիտասարդ գիտության էությունից և պայմանավորված է հենց նույն պատճառներով ինչ և ժամանակակից բնագիտության բազմազան նվաճումների իդեալիստական ու մեխանիստական մեկնաբանությունը։



Կիբեռնետիկայի բոլոր բնագավառներից, անպայման, ամենամեծ հաջողությունների է հասել, այսպես կոչված, տեխնիկական կիբեռնետիկան՝ արհեստական ֆիզիկական սիստեմների ավտոմատիկ կարգավորման, կառավարման և կապի թեորիան ու պրակտիկան։

Ժամանակակից կիբեռնետիկական էլեկտրոնային սարքերը ըստ իրենց կատարած ֆունկցիաների բաժանվում են երկու հիմնական խմբի։ Առաջին խմբին պատկանում են բուն հաշվիչ էլեկտրոնային մեքենաները, որոնք նախատեսված են կիբեռնետիկ սարքի մեջ մարդու կողմից մտցվող տվյալների վերամշակման համար։ Այդպիսի մեքենաները պրիմիտիվ թվաբանական ու տրամաբանական օպերացիաների օգնությամբ կատարում են մեծ ծավալով ամենաբարդ հաշվումներ, հետագայում օպերացիայի արդյունքները մարդուն տալու համար։ Այդպիսի մեքենաների բնորոշ առանձնահատկությունը հանդիսանում է նրանց ֆանտաստիկ արագ գործողությունը։ Տեխնիկական կիբեռնետիկայի սարքերի երկրորդ խմբին վերաբերում են, այսպես կոչված, կառավարող մեքենաները, որոնք փոխարինում են ընթացող պրոցեսների կառավարման և վերահսկման՝ մարդու ֆունկցիաները։ Այդ մեքենաներն ավելի ու ավելի մեծ կիրառություն են գտնում արտադրական պրոցեսների կառավարման գործում։

Մարդու մտավոր գործունեության մի շարք կողմերի ավտոմատացման հնարավորությունը հիմնվում է այն բանի վրա, որ մտավոր աշխատանքի ընթացքում մարդու կողմից կատարվող շատ օպերացիաներ բավական հեշտությամբ ենթարկվում են ձևականացման, այսինքն՝ մաթեմատիկական նկարագրության համար մատչելի, հաջորդականորեն կատարվող բազմաթիվ օպերացիաների վերլուծման։ Ամեն մի խնդրի դեպքում հանձնարարվող մեքենայի

[1] *Н. Винер*, Кибернетика и общество, 1958, стр. 45.

համար պետք է ամենից առաջ կազմել ալգորիթմ, այսինքն՝ լուծման բոլոր օպերացիաների և այն հաջորդականության նկարագրությունը, որով նրանք պետք է կատարվեն: Մեքենան, ունենալով ծրագիր, որն արտահայտված է կրկնակի հատուկ կոդի իր համար հասկանալի «լեզվով», կատարում է հանձնարարված ծրագիրը մարդուն անմատչելի արագությամբ և ճշտությամբ:

Հաշվիչ և կառավարող էլեկտրոնային մեքենաները սրընթաց կերպով և արագորեն արմատավորվում են մարդու գործունեության ամենաբազմազան բնագավառներում: Կ. Մարքսը արդարացիորեն ընդգծում էր, որ յուրաքանչյուր նոր արտադրություն ստեղծում է ոչ միայն սպառման առարկա, այլև սպառող: Կիբեռնետիկական տեխնիկան, որ սկզբում նախատեսված էր օգտագործել մարդկային գործունեության որոշ, բավական նեղ բնագավառներում, իր գոյության տասնհինգ տարում ոչ միայն կոնստրուկտիվորեն արագ կատարելագործվեց, մեծացնելով իր արագագործումը, «հիշողության» ծավալը, բարդացնելով իր կապերի ու կոմունիկացիաների սիստեմը, այլև անսահմանորեն ընդարձակեց իր գործնական կիրառման ոլորտը, ընդգրկելով նորանոր բնագավառներ: Կիբեռնետիկական տեխնիկայի գործնական կիրառման ոլորտներն այժմ արդեն դժվար է թվարկել: Էլեկտրոնային մեքենաները կառավարում են բարդ տեխնոլոգիական պրոցեսներ և վերծանում հին ձեռագրերի տեքստերը, հաշվի են առնում արտադրանքի գներն ու արժեքները արդյունաբերության ճյուղերի բարդ սիստեմում և լուծում դիֆերենցիալ հավասարումները, մոդելավորում են մարդկային օրգանիզմում տեղի ունեցող պրոցեսները և օգտագործվում որպես մատենախոսներ, թարգմանում են տեքստերը և կառավարում հակաօդային պաշտպանության սիստեմը:

Մարդու էլեկտրոնային օգնականներն այժմ արդեն թեթևացնում են մտավոր աշխատանքի շատ կողմեր: Հետագայում նրանք ֆանտաստիկորեն կբարձրացնեն մտավոր աշխատանքի արտադրողականությունը, մարդուն կազատեն այն աշխատատար, հոգեմաշ և միապաղաղ օպերացիաների կատարումից, որոնք այժմ զգալի տեղ են գրավում նրա աշխատանքային բալանսում:

Օրինակ, «БЭСМ» արագագործ էլեկտրոնային մեքենան, որ ստեղծվել է գիտական աշխատողների և ինժեներների կողմից ակադեմիկոս Ս. Ա. Լեբեդևի ղեկավարությամբ, 2,5 ժամվա ընթացքում հաշվեց ջրանցքների շեղությունների պրոֆիլները որոշելու խնդրի 10 վարիանտները: Այդ աշխատանքը նույն ժամկետներում կատարելու համար կպահանջվեին ավելի քան 15 հազար փորձված հաշվողներ: M—2 թվանշանային հաշվիչ էլեկտրոնային մեքենան օգտագործվեց Բրատսկի հիդրոէլեկտրակայանի էստակադի շինարարական մետաղե կոնստրուկցիաների հաշվարկների համար: Ստանալով ելակետային տվյալներ կոնստրուկցիայի երկրաչափական բնութագրերի ձևով, ինչպես նաև տվյալներ էստակադի հաստատուն և ժամանակավոր բեռնավորումների մասին, մեքենան ավտոմատիկորեն կազմեց շինարարական մեխանիկայի գծային հավասարումների սիստեմը, լուծեց այդ բոլոր հավասարումները և, վերջապես, հաշվեց այն բոլոր ճիգերի և դեֆորմացիաների մեծությունը, որը կոնստրուկցիայում ծագում է ուժերի զանազան համակցությունների ազդեցության տակ: Այդ բոլոր հաշվարկները կատարվել են մոտավորապես 700 անգամ ավելի արագ, քան այդ կարող էր անել բարձրորակ ինժեներ-նախագծողը[1]:

[1] Известия АН СССР, отделение технических наук, энергетика и автоматика. 1953, № 3.



Վերջին տարիներին սկսվել է հաշվիչ ու կառավարող մեքենաների լայն արմատավորումը անմիջական արտադրության բնագավառում: «Ազովստալ» կոմբինատի ինժեներատեխնիկական աշխատողները մի շարք հետազոտական հիմնարկությունների կոլեկտիվների հետ մշակել են դոմնային պրոցեսի կոմպլեքսային ավտոմատացման գլխավոր սխեման, կիրառելով կառավարող էլեկտրոնային սարք, որն ընդօրինակում է մարդու աշխատանքը արտադրության վերահսկման և կարգավորման գծով: Կառավարող մեքենան, ավտոմատիկ կերպով գործող տվիչների օգնությամբ ստանալով լրիվ և անընդհատ ինֆորմացիա հանքաքարի հալման ընթացքի մասին, ակնթարթորեն կվերամշակի տվյալները և հանձնարարված ծրագրին համապատասխան ուղղումներ կմտցնի տեխնոլոգիական պրոցեսի մեջ: Սիստեմն օժտված կլինի «ինքնուսուցման» ընդունակությամբ, այսինքն՝ կուտակելով կառավարման փորձը, նա հետագայում կօգտագործի տեխնոլոգիական պրոցեսի այնպիսի վարիանտներ, որոնք կապահովեն ձուլվածքի ամենալավ ռեժիմները: Ամբողջ տեխնոլոգիական պրոցեսը դոմնայի լիցքբեռնումից մինչև մետաղի թողարկումը կիրագործվի առանց մարդու անմիջական մասնակցության: Սովետական Միության մի շարք ձեռնարկություններում այժմ ստեղծվում են կոմպլեքսային ձևով ավտոմատացված գծեր ու ցեխեր, որոնք օգտագործում են կառավարող էլեկտրոնային սարքեր: Նախագծվում է ինքնահամալրվող էլեկտրոնային սիստեմի օգտագործումը Երևանի ալյումինի գործարանի էլեկտրոլիզի ցեխում: Կառավարող էլեկտրոնային մեքենայի կիրառումը թույլ կտա էլեկտրոլիզի պրոցեսն իրագործել արտադրության մեջ առանց մարդու անմիջական մասնակցության:

Հաշվիչ, կառավարող և մոդելավորող էլեկտրոնային սիստեմների «ռեակցիայի» արագ գործողությունն ու ճշտությունը թույլ են տալիս մարդուն լուծել այնպիսի գիտական և արտադրական խնդիրներ, որոնք, մինչև հաշվիչ-վճռող սարքերի երևան գալը, մարդու համար անմատչելի էին: Այդպիսի պրոբլեմներին վերաբերում է, օրինակ, արհեստական արբանյակների և կոսմիկական հրթիռների բացթողման հետագծի հաշվարկը: Կոսմիկական նավի անսխալ և ճշգրիտ դուրսհանումը ուղեծիր հանդիսանում է ոչ միայն մեր ֆիզիկոսների, քիմիկոսների, ինժեներ-հրթիռակառուցողների, այլև վճռող էլեկտրոնային սարքերի և ավտոմատիկայի միջոցների կոնստրուկտորների նվաճումը: Հաշվիչ էլեկտրոնային սարքերի առկայությունից գիտական և գործնական արդյունքների կախման մյուս վառ օրինակը հանդիսանում է եղանակի կանխորոշումների հաշվարկը: Տեսականորեն արդեն վաղուց է ապացուցվել, որ եղանակի կանխորոշումները կարող են տրվել բավարար աստիճանի ճշտությամբ՝ հսկայական քանակությամբ օդերևութաբանական տվյալների արագ և անսխալ մշակման դեպքում: Պարզվել է, որ մի քանի հազար փորձված և որակավորված հաշվողներից կազմված կոլեկտիվը կարող է հաշվել հետևյալ օրվա եղանակի ճիշտ նախագուշակումը... 15—20 օրվա ընթացքում՝ ելակետային տվյալներն ստանալուց հետո: Բնականաբար այդպիսի «կանխագուշակումը» ոչ մի արժեք չի ներկայացնում: Թվային էլեկտրոնային մեքենաների օգտագործումը, երբ հնարավոր է դառնում ֆանտաստիկ արագությամբ լուծել բազմաթիվ անհայտներով հավասարումների սիստեմները, թույլ տվեց սկսելու եղանակի կանխորոշումների գործնականորեն անսխալ հաշվելու աշխատանքը:

Վճռող-հաշվիչ կիբեռնետիկական մեքենաների զարգացումը թույլ է տալիս ոչ միայն ավելի ու ավելի լայնորեն մոդելավորել կենդանի օրգանիզմում

ընթացող կառավարման ու կապի պրոցեսները, այլև անցնել այն սարքերի ստեղծմանը, որոնք աշխատում են խիստ, ընդմիշտ տրված ծրագրով։ Այդպիսի կիբեռնետիկական սիստեմների աշխատանքը վառ կերպով հիշեցնում է մարդու գիտակցված, նպատակասլաց գործունեության պրոցեսները, փորձի, գիտելիքի կուտակման, այսինքն՝ ուսուցման պրոցեսները։ Այդ տեսակետից մեծ հետաքրքրություն է ներկայացնում մտավոր աշխատանքի որոշ պրոցեսների էլեկտրամոդելավորման համար ծառայող ինֆորմացիոն մեքենան, որ նախագծվում է ՍՍՌՄ ԳԱ էլեկտրամոդելավորման լաբորատորիայում պրոֆ. Լ. Ի. Գուտենմախերի ղեկավարությամբ։ Այդ ինֆորմացիոն մեքենան օժտված կլինի պասսիվ և ակտիվ «ուսուցման» ընդունակությամբ։ Մեքենայի պասսիվ ուսուցումը կարտահայտվի հսկայական քանակությամբ ինֆորմացիայի, թվական տվյալների, ֆորմուլաների, տեքստերի և այլնի «հիշելով»։ Նշված մեքենան պատասխաններ կտա իր մեջ մտցվող հարցերին հատուկ կոդի օգնությամբ գրանցելու միջոցով։ Այդ պատասխանները կլինեն այն տվյալների ստերեոտիպերը, որոնք նախապես գրանցվել են մեքենայի «հիշողության մեջ» մարդու կողմից։ Տվյալ դեպքում մեքենան կկատարի յուրահատուկ էլեկտրոնային այն գրադարանի ֆունկցիաները, որ տեղեկությունները տալիս է գրեթե ակնթարթորեն և պահում է հազարավոր հատորների ծավալով ինֆորմացիան մեկ սենյակի մակերեսին հավասար տարածության մեջ։ Սակայն այդ ֆունկցիան չէ, որ նախագծվող մեքենայի համար կլինի հիմնականը և ամենահետաքրքրականը։ Մեքենան կլինի ոչ միայն մարդու կողմից կուտակված գիտելիքների պահեստարան, այլև մի սարք, որ օժտված է տրամաբանական, մարդու առաջադրանքով օպերացիաներ կատարելու ընդունակությամբ՝ տալով նոր պատասխաններ և արդյունքներ։ Յուրաքանչյուր արժեքավոր պատասխան կմտցվի մեքենայի մեջ որպես մի նոր ինֆորմացիա, հարստացնելով նրա «գիտելիքները», նրան դարձնելով ավելի «փորձված», ավելի «լայնորեն կրթված»։ Այդ էլ այն պրոցեսն է, որ կիբեռնետիկայում պայմանականորեն կոչվում է մեքենայի ինքնուսուցման կամ ինքնակատարելագործման պրոցես։

Կիբեռնետիկական սարքերի ինքնուսուցման վառ օրինակ է այն էքսպերիմենտը, որ նկարագրված է ամերիկյան ժուռնալի[1] անցյալ տարվա հունվարի համարում։ Ամերիկացի մաթեմատիկոս և նյարդաբույժ դոկտոր Ռ. Մ. Ֆրիդբերգը «УВМ—704» էլեկտրոնային մեքենայով մի փորձ կատարեց, որ ընդօրինակում է մաթեմատիկական խնդրի լուծման որոնումների և այդ «որոնումների» ընթացքում ձեռք բերված փորձի ամրապնդման ու օգտագործման պրոցեսը։ Ամենից առաջ Ռ. Ֆրիդբերգը ելնում էր նրանից, որ խնդրի լուծման խիստ ծրագրի ձևակերպումը միակ ճանապարհը չի հանդիսանում օգտակար էֆեկտ ստանալու համար։ Մեքենային հանձնարարվել է ունիվերսալ ծրագիր, որն իր մեջ պարունակում էր բոլոր հայտնի ծրագրերը «УВМ—704» հաշվիչ մեքենայով խնդիրները լուծելու համար, ինչպես նաև բազմաթիվ նախապես անմիտ ծրագրեր։ Տրվել էին նաև բուն մաթեմատիկական խնդրի պայմանները։ Խնդրի լուծման համար ենթադրաբար օգտագործելով եղած ծրագրերը, մեքենան ճիշտ պատասխաններ էր տալիս միայն 1000 փորձարկումներից 26-ի դեպքում։ Փորձարկումների աճի հետ ճիշտ լուծումների թիվն ավելանում էր և, վերջապես, տասնյակ հազար փորձերից հետո մեքենան ձեռք բերեց խնդրի

[1] Journal of research and development, 1959, N 1, p. 84.



անսխալ լուծման ընդունակություն, օգտագործելով միայն ճիշտ ծրագիրը։ Նա «սովորեց» խնդիր լուծել։ Ամենից հետաքրքրականն այն է, որ հետագայում, չնայած խնդրի պայմանների փոփոխմանը, մեքենան, օգտվելով կուտակած փորձից, շատ ավելի շուտ էր ընդունակություն ձեռք բերում խնդիրների անսխալ լուծման համար, քան առաջին փորձարկումների ժամանակ[1]։

Մտավոր աշխատանքի պրոցեսները մոդելավորող կիբեռնետիկական սարքերի արագ պրոգրեսի կապակցությամբ և, հատկապես, մարդու նպատակասլաց և գիտակցված գործունեությունը ընդօրինակող, այսպես կոչված, բարձրագույն ավտոմատների երևան գալուց հետո, արտասահմանյան մի շարք փիլիսոփաների և բնախույզների մեջ հասունացավ ուղեղի և էլեկտրոնային մեքենայի գործունեության նույնության գաղափարը։ Այդ գաղափարը ամրապնդվում էր նաև նրանով, որ կիբեռնետիկան սահմանեց որոշակի ընդհանրություն նյարդային կենտրոնական համակարգության և ինֆորմացիայի վերամշակման ու զանազան պրոցեսների կառավարման համար նախատեսված մեքենաների գործելու սկզբունքներում։ Այդ հարցը, վերջին հաշվով, հանգեցվում է այն պրոբլեմին, թե կարո՞ղ է արդյոք էլեկտրոնային մեքենան երբևէ լրիվին փոխարինել մարդու ուղեղին։

Դեռ 1948 թ. անգլիացի ականավոր կիբեռնետիկ Ու. Ռոսս Էշբին առաջ քաշեց արհեստական էլեկտրոնային սիստեմի ստեղծման հնարավորության գաղափարը, ընդ որում այդ սիստեմն օժտված կլինի ստեղծագործական հնարավորություններով և իր ստեղծողից ավելի խելոք դուրս կգա։

Այն համոզվածությունը, որ էլեկտրոնային սարքերը օժտված են մարդկային գիտակցության ստեղծագործական գործունեության նման ինչ-որ բանով, հաճախ հիմնվում է նրա վրա, որ կիբեռնետիկական մեքենաները ընդունակ են կատարել այնպիսի ֆունկցիաներ, որոնք մինչև հիմա համարվել են մարդկային բանականության անձեռնմխելի բնագավառը։ Օրինակ, կիբեռնետիկական սարքերի կողմից երաժշտական երկեր հորինելու ստեղծագործական պրոցեսի ընդօրինակման էքսպերիմենտալ փորձերը օգտագործել են արևմտյան որոշ հրատարակիչներ և սենսացիոն տեղեկություններ տարածել հաշվիչ սարքերի իբր թե ստեղծագործական ընդունակությունների մասին։ Երևան եկան, այսպես կոչված, կիբեռնետիկական երաժշտության՝ էլեկտրոնային մեքենայի «հորինած» երաժշտության գրանցումները։ Իրականում այդ գիտական էքսպերիմենտները, ունենալով որոշակի նշանակություն ինֆորմացիայի (ամենից առաջ, այսպես կոչված, ավելցուկային ինֆորմացիայի պրոբլեմի) տեսության որոշ առանձնահատուկ պրոբլեմների պարզաբանման համար, ոչ մի առնչություն չունեն իսկական ստեղծագործական պրոցեսի հետ։ «Կիբեռնետիկական երաժշտության» երկերը հիմնված են մարդու կողմից ներդաշնակության որոշ մաթեմատիկական հարաբերակցություններ օգտագործելու վրա, որոնք հայտնագործվել են դեռ շատ հին ժամանակներում հույն փիլիսոփա և մաթեմատիկոս Պյութագորասի կողմից։ «Երաժշտական ստեղծագործության» պրոցեսը կիբեռնետիկական սարքերի օգնությամբ հանդիսանում է ինֆորմացիայի վերամշակման սովորական պրոցես։ Մեքենայի հիշողության մեջ գրանցվում են որոշակի քանակությամբ նոտաների զուգակցումներ, ինչպես նաև որոշ հարմոնիկ հարաբերություններ և հանձնարարվում է այդ կանոններին համա-

[1] «The New Jork Times», January 4, 1958, p. 7.

պատասխան զուգակցել նոտաների խմբերը։ Մեքենան սկսում է ընտրել ու զուգակցել և տալիս է նոտաների գրանցումը կոդի ձևով։ Հարվարդի համալսարանի հաշվիչ մեքենաների լաբորատորիայում կատարված փորձերը ցույց տվեցին, որ մեքենան յուրաքանչյուր 10 փորձից 9 դեպքում տալիս է գրանցումներ, որոնք ոչ մի առնչություն չունեն ներդաշնակության կանոնների հետ և միայն մի դեպքում է տալիս այնպիսի երաժշտական արտահայտությունների գրանցում, որոնք մարդը կարող էր համարել ներդաշնակության օրենքներով կառուցված։ Ինչպես տեսնում ենք, այստեղ էլ մարդը մի կողմից ծրագրում է մեքենայի օպերացիաները, իսկ մյուս կողմից՝ կատարում է արդյունքների վերջնական ընտրությունը իր չափանիշներին համապատասխան։

Արևմտյան մամուլը, որ մեծ աղմուկ բարձրացրեց կիբեռնետիկական սարքերի երաժշտական վարժությունների շուրջ, վկայակոչում էր այն բարձր գնահատականը, որ «էլեկտրոնային երաժշտությանը» իբր թե տվել են մտավոր աշխատանքի պրոցեսների ավտոմատացման գծով Տոդինգտոնի ժողովի մասնակիցները։ Իրոք, այդ ժողովի մասնակիցներից մեկը՝ դոկտոր Բեռնարդ Մ. Շատեոլենդը, արտահայտվում է այդ երաժշտության որակի մասին։ Նա հայտարարել է. «Այդ երաժշտությունը ինչպես էլ լինի ոչ ավելի տարօրինակ է, քան ժամանակակից երաժշտագետների որոշ երկերը»։ Դա հանդիմանությո՞ւն է արդյոք ժամանակակից արևմտյան ֆորմալիստական երաժշտության հասցեին, թե՞ կոմպլիմենտ է մեքենայի գրած երաժշտության հասցեին, թող այդ մասին ընթերցողը դատի։

Կիբեռնետիկական տեխնիկայի հնարավորությունները արտակարգ մեծ են։ Էլեկտրոնային մեքենան, ստանալով մարդու առաջադրանքը որոշակի չափանիշներին համապատասխան ընտրություն անելու մասին, կարող է այդ տեխնիկական աշխատանքը իր ստեղծողից զգալիորեն ավելի արագ և ճիշտ կատարել։ Այդ և միայն այդ իմաստով մեքենան կարելի է անվանել մարդու մտածողության ընդունակությունների ուժեղացման սիստեմ։ Բայց ոչ մի մեքենա, որքան էլ այն կատարյալ լինի, չի կարող չափանիշներ սահմանել, այսինքն՝ ինքնուրույն կերպով իր վերաբերմունքն արտահայտել իրականության հանդեպ։

Խորապես իրավացի էր Ա. Էյնշտեյնը, որը պնդում էր, թե մեքենան կարող է լուծել ամեն մի խնդիր, բայց երբեք չի կարող ոչ մի խնդիր դնել։ Ասածի լույսի տակ խորապես սխալ են արտասահմանյան որոշ կիբեռնետիկների պնդումներն այն մասին, որ ապագայի կիբեռնետիկական մեքենան «կզարգացնի իր սեփական չափանիշները դրված խնդիրները լուծելու համար»։ Կիբեռնետիկական տեխնիկայի գծով ականավոր մասնագետ Ջորջ Ա. Բոէմի հաջող արտահայտությամբ էլեկտրոնային սարքերը նման են «ապուշ երեխային», որի յուրաքանչյուր քայլը կանխորոշված է փորձված ուսուցչի խրատներով։

Կիբեռնետիկական սիստեմները, որոնք ստեղծվել են մարդու կողմից իր գործունեության թեթևացման համար, վերապրում են բուռն ծաղկման շրջան։

---

# ԷՅՆՇՏԵՅՆԻ ՀԱՐԱԲԵՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Ս. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Հարաբերականության տեսության ծննդից անցել է ավելի քան հիսուն տարի։ Իր գոյության ընթացքում հարաբերականության տեսությունը բազմաթիվ անգամ ստուգվել և միշտ էլ իր փայլուն ապացույցն է գտել ֆիզիկայի, մաթեմատիկայի և աստղագիտության տարբեր բնագավառներում։ Ինչպես մեծ արագությամբ տեղի ունեցող միկրոմասնիկների շարժման, այնպես էլ Երկրի արհեստական արբանյակների հետագծերի ուսումնասիրությունները փայլուն կերպով հաստատում են հարաբերականության տեսության հետևությունների ճշտությունը։

Սակայն, եթե հարաբերականության տեսությունը որպես տարածության ու ժամանակի ֆիզիկական տեսություն ֆիզիկայի տեսակետից միանգամայն անառարկելի է, ապա նրա մեթոդոլոգիական հիմքերը և տարածության ու ժամանակի մասին նրանից բխող փիլիսոփայական հետևությունները դեռևս ամբողջովին պարզաբանված չեն և շատ հաճախ պայքարի առարկա են հանդիսանում փիլիսոփայական երկու ուղղությունների՝ իդեալիզմի և մատերիալիզմի միջև։

Իդեալիզմը, նենգափոխելով հարաբերականության տեսության փիլիսոփայական բովանդակությունը, շարադրում է այն փիլիսոփայական ռելյատիվիզմի և սուբյեկտիվիզմի տեսակետից։ Արևմուտքի փիլիսոփաների համար հարաբերականության տեսությունը նշանակում է արտաքին աշխարհի լրիվ հարաբերականություն։ Ուռճացնելով տեսության մի կողմը՝ տարածության, ժամանակի ու շարժման հարաբերականությունը և միանգամայն անտեսելով նրանց բացարձակ հատկանիշները, նրանք փորձում են դրանով ժխտել տարածության, ժամանակի ու շարժման օբյեկտիվ ռեալությունը և դրանք ներկայացնել որպես դիտողի հայեցողությունից կախված, զուտ սուբյեկտիվ կատեգորիաներ։

Իրականում, հարաբերականության տեսությունն ընդհանուր ոչինչ չունի ո՛չ փիլիսոփայական ռելյատիվիզմի և ո՛չ էլ սուբյեկտիվիզմի հետ։ Նրա փիլիսոփայական էության ճիշտ ըմբռնման և ճիշտ մեկնաբանման դեպքում այդ տեսությունը հաստատում է տարածության, ժամանակի, շարժման ու մատերիայի մասին դիալեկտիկական մատերիալիզմի տեսակետը ֆիզիկայի բնագավառում։

Հարաբերականության տեսությունը, որպես տարածության ու ժամանակի ֆիզիկական տեսություն, ծագել և զարգացել է հիմնականում էլեկտրամագնի-

ծական երևույթների ուսումնասիրման հողի վրա, այն դեպքում, երբ նրան նախորդող տարածության ու ժամանակի կլասիկ տեսությունն ընդգրկում է միայն փոքր արագությամբ տեղի ունեցող պինդ մարմինների մեխանիկական շարժումները և նրանց հետ կապված երևույթները: Բնական է, որ կլասիկ մեխանիկան, որպես գիտություն, մատերիայի ամենապարզ ձևի՝ մեխանիկական տեղափոխության մասին, միայն կոպիտ կերպով, առաջին մոտավորությամբ պետք է արտացոլի տարածության ու ժամանակի էությունը և, դրա հետ միասին, այն ավելի դյուրըմբռնելի և բնական պետք է լինի մարդու համար, քանի որ ինքը՝ մեխանիկական շարժումն ավելի դյուրըմբռնելի է, քան որևէ այլ շարժում:

Տարածության ու ժամանակի կլասիկ տեսությունը վերջնականապես ձևավորել է Իսահակ Նյուտոնը, որը և առաջինն ամբողջական ձևով շարադրել է կլասիկ մեխանիկայի սկզբունքները: Նյուտոնը տարածությունն ու ժամանակը բաժանեց երկու մասի՝ բացարձակ, իրական, մաթեմատիկական տարածություն ու ժամանակ, որոնք գոյություն ունեն ինքնին, անկախ որևէ բանից, բացարձակ կերպով և, մյուս կողմից, հարաբերական տարածություն ու ժամանակ, որոնք բացարձակի շարժական, փոփոխվող մասերն են: Հարաբերական տարածությունն ու ժամանակը հանդես են գալիս օրերի, ժամերի, մետրերի և այլ ձևերով:

Ուրեմն, ըստ Նյուտոնի իրական տարածությունն ու ժամանակը մատերիայից միանգամայն անկախ, «ինքնըստինքյան» և «ինքն իր էությամբ», բացարձակորեն գոյություն ունեցող էություններ են, որոնց միջոցով մենք չափում ենք պրոցեսների տևողությունը կամ նրանց տարածական հարաբերությունները: Բացարձակ ժամանակի հոսքն անկախ է մատերիական պրոցեսների ընթացքից, անկախ է երևույթների փոփոխման օրինաչափություններից: Ոչ թե ժամանակն է որոշվում մատերիայի փոփոխմամբ, զարգացմամբ, այլ ընդհակառակը՝ ամեն մի փոփոխություն, զարգացում որոշվում է բացարձակ ժամանակի հոսքով: Բնության ամեն մի պրոցես կարող է արագանալ կամ դանդաղել, այնինչ ժամանակի հոսքը միշտ մնում է միևնույնը: Բացարձակ տարածությունը անշարժ է, անփոփոխ. նա չի մասնակցում նյութական պրոցեսին, նրա բաղադրությունն ու հատկությունները չեն որոշվում այդ պրոցեսներով, կամ ավելի ճիշտ՝ տարածությունը զուրկ է որևէ հատկությունից. այն սոսկ զետեղարան է ինքն իր և բոլոր մատերիական պրոցեսների համար: Բացարձակ տարածությունը Նյուտոնի մոտ մարմնավորվում էր ինչ-որ հիպոթետիկ միջավայրի՝ եթերի գոյությամբ, որին չէր վերագրվում ոչ մի ռեալ նյութական հատկություն:

Ելնելով վերոհիշյալից, կլասիկ մեխանիկայում բացարձակ իմաստ վերագրվում էր այն շարժմանը, որի ընթացքում մարմինը որևէ ուժի ազդեցության տակ բացարձակ տարածության մի կետից մյուսն էր տեղափոխվում: Այդպիսի շարժում էր համարվում մասնավորապես պտտական շարժումը, քանի որ այն կապված է կենտրոնախույս ուժի առկայության հետ, որը ոչ միայն մարմնին բացարձակ տարածության մի կետից մյուսն է տեղափոխում, այլև ազդում է նրա երկրաչափական ձևի վրա: Առանց որևէ ուժի առկայության, ուղղագիծ-հավասարաչափ շարժումը դիտվում էր որպես զուտ հարաբերական շարժում, պարզապես մի մարմնի դիրքի տեղափոխում մի այլ մարմնի նկատմամբ:



Այստեղ ընդունվում է տարածական չափերի, երևույթների միաժամանակության ու ժամանակի մեջ նրանց ունեցած հաջորդականության, այսինքն՝ ժամանակային կարգի բացարձակությունը: Եթե ժամանակի հոսքը բացարձակ է, անկախ է պրոցեսների ընթացքից, ապա բացարձակ է նաև տվյալ մոմենտը կամ երևույթների տվյալ ժամանակային կարգը: Օրինակ, եթե լուսնի վրա տեղի ունեցող երկու բռնկումները մեզ համար միաժամանակ են, կամ նրանցից որևէ մեկը հաջորդում է մյուսին, ապա, ըստ կլասիկ տեսության, այդ բռնկումները կլինեն միաժամանակ, կամ կունենան նույն ժամանակային կարգը մյուս բոլոր երկնային մարմինների բնակիչների համար: Եթե այդ բռնկումների հեռավորությունը մեզ համար մեկ մետր է, իսկ նրանց միջև ընկած ժամանակամիջոցը մեկ ժամ, ապա նույնը տեղի կունենա նաև տիեզերքի ցանկացած մասում գտնվող մարդկանց համար: Այսինքն՝ տիեզերքի բոլոր մասերում և բոլոր սիստեմներում ժամանակի հոսքը և տարածական մասշտաբները միևնույնն են:

Կլասիկ տեսության այս դրույթներն այնքան համատեղելի են մեր առօրյա պատկերացումների հետ, որ երբեք ոչ մի կասկած չեն հարուցում: Այդ պատճառով էլ տարածության ու ժամանակի փիլիսոփայական էության ուսումնասիրման ընթացքում երբեք փորձ չի արվել ժխտել տարածական մասշտաբների ու ժամանակի հոսքի բացարձակությունը, կամ գոնե հարց բարձրացնել դրանք ռեալ աշխարհի իրերի և երևույթների միջոցով ստուգելու:

Տարածության ու ժամանակի կլասիկ տեսությունն իր հիմնական գծերով մատերիալիստական է, քանի որ այն տարածությանն ու ժամանակին վերագրում է օբյեկտիվ գոյություն՝ անկախ արտաքին որևէ բանից, հետևաբար և անկախ որևէ մտածող սուբյեկտի գոյությունից:

Սակայն իր մատերիալիստական բովանդակության հետ միասին այդ տեսությունը մետաֆիզիկական է: Նշելով տարածության ու ժամանակի բացարձակ ու հարաբերական կողմերը, Նյուտոնը անանցանելի անդունդ է անցկացնում այդ երկու կողմերի միջև: Նրա մոտ ժամերի, վայրկյանների, մետրերի ձևով հանդես եկող հարաբերական տարածությունն ու ժամանակը չեն արտացոլում իրական, բացարձակ տարածության ու ժամանակի էությունը: Վերջիններս մատերիայի հետ ոչ մի կապ չունենալու հետևանքով վերածվում են մի տեսակ «ինքնին իրերի» և դառնում են ուսումնասիրության համար միանգամայն անմատչելի: Այդ իսկ պատճառով Նյուտոնի տեսությունը իդեալիզմի դիրքերից բազմապիսի քննադատությունների է ենթարկվել Լեյբնիցի, Բերկլիի, Մախի և ուրիշների կողմից, որոնք, պայքարելով Նյուտոնի մետաֆիզիկայի դեմ, դրանով իսկ փորձում էին ժխտել նաև տարածության ու ժամանակի օբյեկտիվ, ռեալ գոյությունը: Ինքը՝ Նյուտոնը ևս անհետևողական է անցկացրել իր մատերիալիզմը: Տարածությունն ու ժամանակը կտրելով ամեն մի նյութական հիմքից, նրանց գոյության արդարացման համար նա ի վերջո ստիպված է դիմել աստծուն:

Նյուտոնի տեսության մետաֆիզիկական բնույթն ու նրանից բխող սխալ փիլիսոփայական հետևությունները հետևողական մատերիալիստական քննադատության են ենթարկել մարքսիզմի կլասիկները և, մասնավորապես, Էնգելսը: Նեգելին, շփոթելով բացարձակ ու հարաբերական տարածության ու ժամանակի հարաբերության դիալեկտիկան, հայտարարում էր, որ ժամերի ու մետրերի մասին ունեցած մեր իմացությունը չի տանում դեպի տարածության ու

ժամանակի էության իմացությունը։ Քննադատելով Նեգելիի այդ տեսակետը, Էնգելսը գրում է. «Մենք գիտենք թե ինչ է ժամը, մետրը, բայց չգիտե՞նք թե ինչ է ժամանակը և տարածությունը։ Կարծես թե ժամանակը ինչ-որ այլ բան է, քան ժամերի միագումար, իսկ տարածությունը ինչ-որ այլ բան, քան խորանարդ մետրերի միագումար» (Ֆ. Էնգելս, «Բնության դիալեկտիկա», Երևան, Հայպետհրատ, 1950, էջ 263)։

Սակայն, չնայած բազմապիսի փիլիսոփայական քննադատություններին, այնուամենայնիվ Նյուտոնի տեսությունը անսասան էր մնում գոնե ֆիզիկայի տեսակետից։ Միայն Ալբերտ Էյնշտեյնի մշակած հարաբերականության տեսությունը խարխլեց այդ ուսմունքի ֆիզիկական հիմքերը։

Հարաբերականության տեսությունը հենվում է փորձերով ապացուցված երկու սկզբունքների վրա։ Դրանցից առաջինը՝ հարաբերականության սկզբունքը, պնդում է, որ ուղղագիծ-հավասարաչափ շարժվող բոլոր սիստեմները ֆիզիկական երևույթների նկատմամբ լրիվ համարժեք են։ Այսինքն, ուղղագիծ-հավասարաչափ շարժումը ֆիզիկական իմաստով միայն հարաբերական շարժում է, ուստի և հարկ չկա այն կապելու որևէ անշարժ միջավայրի՝ եթերի կամ բացարձակ անշարժ տարածության գաղափարի հետ։ Համաձայն երկրորդ սկզբունքի բոլոր ուղղագիծ-հավասարաչափ կերպով շարժվող սիստեմներում լույսի արագությունը հաստատուն է, անկախ լույսի աղբյուրի կամ տվյալ սիստեմի շարժումից։

Մեր սովորական պատկերացմամբ այս երկու սկզբունքները թվում են հակասական։ Առաջինը ժխտում է ուղղագիծ-հավասարաչափ (իներցիալ) շարժման բացարձակությունը ընդհանրապես, ընդունելով միայն մարմինների դիրքերի հարաբերական փոփոխությունը, այն դեպքում, երբ երկրորդը շարժման մի որոշակի ձևին՝ լույսի տարածմանը, վերագրում է բացարձակ արագություն։

Էյնշտեյնը ցույց տվեց, որ այս երկու, փորձերով լավ հիմնավորված սկզբունքները միմյանց հետ համատեղելու և նրանց վրա տեսություն կառուցելու համար պետք է արմատապես հեղաշրջել տարածության ու ժամանակի բնույթի մասին կլասիկ մեխանիկայի վրա հիմնված մեր ամենօրյա, պարզ պատկերացումները։ Էյնշտեյնը խիստ քննադատորեն մոտեցավ տարածության ու ժամանակի բնույթին վերաբերող այն բոլոր հասկացություններին, որոնք մինչ այդ դիտվել էին որպես ակնհայտ, ոչ մի ուսումնասիրություն չպահանջող։ Դրանցից առաջինը միաժամանակության հասկացությունն է։

Ի՞նչ պետք է հասկանալ ակնթարթորեն տեղի ունեցող երկու երևույթների, երկու պատահարների միաժամանակություն ասելով։ Կլասիկ տեսությունը երբեք այդպիսի հարց չի դրել, կարծելով, որ դա անիմաստ է։ Հարաբերականության տեսությունը դնում է այդ հարցը և լուծում յուրովի։ Երկու պատահարներ տեղի են ունենում միաժամանակ, եթե նրանցից եկող լուսային ազդանշանները նրանց հեռավորության կենտրոնում գտնվող դիտողին հասնում են միաժամանակ։ Ենթադրենք, որ գոյություն ունի նաև մի այլ դիտող, որը շարժվում է առաջինի նկատմամբ որոշ արագությամբ և մի որոշ մոմենտում հավասարվում է առաջին դիտողին։ Միաժամանա՞կ կլինեն արդյոք այդ նույն պատահարները երկրորդ դիտողի համար։ Քանի որ երկրորդ դիտողը իր շարժման շնորհիվ մոտենում է պատահարներից մեկին և հեռանում մյուսից, ապա նա պատահարներից եկող լուսային ազդանշանները կընդունի որպես հաջոր-



դական, այսինքն՝ այդ պատահարները նրա համար կլինեն հաջորդական պատահարներ։ Ուրեմն երկու պատահարներ մի սիստեմի դիտողի համար միաժամանակ են, իսկ մյուսի համար՝ հաջորդական, այսինքն՝ երևույթների միաժամանակությունն օժտված չէ բացարձակ իմաստով։

Միաժամանակության հարաբերականությունից բխում է նաև ժամանակի հոսքի ու տարածական մասշտաբների հարաբերականությունը։ Հարաբերականության տեսությունը ապացուցում է, որ միմյանց նկատմամբ ուղղագիծ-հավասարաչափ կերպով շարժվող երկու տարբեր սիստեմներում ժամանակի հոսքը, ինչպես նաև տարածության մասշտաբները տարբեր են։ Եթե այդ երկու սիստեմներից մեկը պայմանականորեն ընդունենք որպես անշարժ, իսկ մյուսը նրա նկատմամբ շարժվող, ապա շարժվող սիստեմում ժամանակը կհոսի ավելի դանդաղ, իսկ տարածության մասշտաբները կլինեն ավելի կարճ, քան կանգնած սիստեմում։ Այդ էֆեկտը մեծանում է սիստեմի արագության մեծացման հետ միասին։ Երբ սիստեմի արագությունը մոտենում է լույսի արագությանը (C=300.000կմ/վրկ), ապա տարածական մասշտաբները ձգտում են զերոյի, երկու պատահարների միջև եղած ժամանակի միջակայքը անվերջ մեծանում է, այսինքն՝ ժամանակի հոսքը կանգ է առնում։

Այս տեսակետից նոր հեռանկարներ են բացվում միջմոլորակային ճանապարհորդության համար։ Հայտնի է, որ Երկրից մի որևէ աստղի հասնելու համար, լույսի արագության կարգի արագությամբ շարժվելու դեպքում էլ, կպահանջվեն տասնյակ և նույնիսկ հարյուրավոր տարիներ։ Սակայն, եթե Երկրի վրա գտնվողի համար այդ ճանապարհորդությունը կտևի տասնյակ տարիներ, ապա իրեն՝ ճանապարհորդողի համար կարող է տևել ընդամենը 1—2 տարի, գուցե և ավելի քիչ, քանի որ նրա սիստեմում ժամանակը ավելի դանդաղ է հոսում։ Այսինքն՝ շարժվելով մեծ արագությամբ, ուղևորը ավելի երիտասարդ է մնում, քան Երկրի վրա գտնվող նրա հասակակիցը։ Այսպիսով, ուղևորը ժամանակի մեջ ճանապարհորդում է դեպի ապագան։ Նա իր սիստեմում ապրելով մի տարի, Երկրի սիստեմի համար ապրած կլինի տասնյակ տարիներ։

Կարևոր է նշել, որ ժամանակի ու տարածության չափսերի կարճացման այս երևույթը ոչ մի առնչություն չունի սուբյեկտի կողմից տարածության ու ժամանակի հոսքի հոգեբանական ընկալման հետ։ Այն օբյեկտիվ փաստ է, անկախ սուբյեկտի ժամանակի մասին ունեցած պատկերացումներից։ Եթե պատկերացնենք, որ ուղևորն իր հետ վերցրել է ռադիումի մի որոշ պաշար, որի քայքայման արագությունը անկախ է որևէ ֆիզիկական ներգործություններից, և նույնպիսի մի պաշար էլ թողել է Երկրի վրա, ապա Երկրի վրա գտնվող ռադիումի քայքայումը ավելի մեծ արագությամբ կընթանա, քան ուղևորինը։ Կարճ ասած՝ շարժվող սիստեմում բոլոր տեսակի ֆիզիկական, բիոլոգիական, հոգեբանական և այլ պրոցեսներն ընթանում են ավելի դանդաղ, քան այն սիստեմում, որը դիտվում է որպես անշարժ։

Իհարկե, ժամանակի հոսքի դանդաղման էֆեկտը զուտ հարաբերական է, քանի որ հարաբերական է ինքը՝ ուղղագիծ-հավասարաչափ շարժումը։ Այդ էֆեկտը կդիտվի ճիշտ հակառակ ձևով, եթե մենք մեր ուսումնասիրությունները կատարենք այն սիստեմից, որի վրա գտնվում է ուղևորը։ Եթե ընդունենք, որ ուղևորը անշարժ է, և Երկիրը շարժվում է նույնպիսի արագությամբ դեպի հակառակ կողմը (մենք այդպիսի ենթադրություն անելու իրա-

վոյք ունենք շարժման հարաբերականության պատճառով), ապա ուղեորի սիստեմից դիտելիս կստացվի, որ Երկրի վրա ժամանակը հոսում է ավելի դանդաղ։

Տարածության ու ժամանակի հարաբերականությունից բխում է նաև մասսայի հարաբերականությունը։ Շարժվող սիստեմի արագության մեծացման հետ միասին մեծանում է նաև մարմնի մասսան։ Երբ արագությունը մոտենում է լույսի արագությանը, ապա մարմնի մասսան անվերջ մեծանում է։ Այստեղից հետևում է, որ մարմնի շարժման արագությունը երբեք չի կարող հավասարվել լույսի արագությանը, առավել ևս չի կարող գերազանցել նրան։ Լույսի արագությունը բոլոր տեսակի ֆիզիկական փոխազդեցությունների համար վերին սահման է հանդիսանում։

Այսպիսով, ժամանակի հոսքը, տարածական մասշտաբները, երևույթների միաժամանակությունն ու ժամանակային կարգը, ինչպես նաև մարմնի մասսան հարաբերական են. Նրանք տարբեր սիստեմներում հանդես են գալիս տարբեր ձևերով ու տարբեր չափսերով։ Քանի որ բոլոր ուղղագիծ-հավասարաչափ կերպով շարժվող սիստեմները բոլոր տեսակետներից միմյանց լրիվ համարժեք են, ապա իմաստ չունի խոսել երևույթների միաժամանակության, նրանց հաջորդականության, երևույթի ընթացքում հոսած ժամանակի և երևույթների տարածական հեռավորության մասին ընդհանրապես, անկախ որևէ հաշվարկման սիստեմից։ Փաստորեն մարմնի մասսան և չափսերը արտահայտվում են մեծությունների անվերջ բազմությամբ, ժամանակը հոսում է բազմապիսի ձևերով։ Երևույթները չեն կարող անկախ որևէ սիստեմից իրենք իրենց համար լինել միաժամանակ, կամ նրանցից մեկը հաջորդի մյուսին։ Այդ բոլոր հասկացությունները որոշակի, կոնկրետ իմաստ են ստանում միայն այն դեպքում, երբ նշված է որոշակի հաշվարկման սիստեմը. եթե այդպիսի սիստեմ նշված չէ, ապա վերը նշված բոլոր հասկացություններն անիմաստ են։

Հարաբերականության տեսությունից բխող այս հետևություններն, անտարակույս, խորթ են մարդու սովորական պատկերացմանը և ակնհայտ հակասության մեջ են գտնվում տարածության ու ժամանակի մասին ունեցած մեր ամենօրյա պարզ պատկերացումների հետ։ Սակայն այս արտաքին հակասությունը երբեք էլ հիմք չի տալիս ժխտելու հարաբերականության տեսության ճշտությունը։ Գիտության խնդիրը երբեք էլ այն չէ, որ մեզ շրջապատող աշխարհի հարուստ և բազմազան երևույթներն ընդգրկի մեր զգայական պատկերացման նեղ շրջանակների մեջ, այլ նրանում, որ բացահայտի նրանց էությունը։ Առօրյա պատկերացումը միշտ էլ նեղ է, մակերեսային։ Այն պայմանավորված է գիտության զարգացման ընդհանուր մակարդակով և միշտ այդ զարգացման հետևից է գնում։

Անտիկ աշխարհում իշխում էր այն պարզ պատկերացումը, որ առանց ուժի գոյություն չունի ոչ մի շարժում, և որ շարժման արագությունը համեմատական է ազդող ուժի մեծությանը։ Արիստոտելը գտնում էր, որ կառքը, որին լծված է մի ձի, երկու անգամ ավելի փոքր արագությամբ է շարժվում, քան երկու նույնպիսի ձիեր լծվածը, այսինքն՝ նա արագությանը վերագրում էր բացարձակ իմաստ։ Իներցիայի օրենքի հայտնագործումից հետո պարզվեց, որ այդ պարզ, ակնհայտ պատկերացումը միանգամայն սխալ է, սակայն ֆիզիկայից հեռու կանգնած որոշ մարդկանց համար այժմ էլ տարօրինակ է թվում արագության հարաբերական լինելը։ Նման պատկեր տեղի ունի նաև



տը էվկլիդյան երկրաչափության հարցում։ Մեր անմիջական պատկերացումը մեզ ասում է, որ միմյանց զուգահեռ ուղիղները պետք է միմյանցից միշտ միևնույն հեռավորության վրա գտնվեն, եթե երկու ուղիղներ անընդհատ մոտենում են միմյանց, ապա նրանք վերջիվերջո կհատվեն։ Սակայն ռուս նշանավոր մաթեմատիկոս Լոբաչևսկին ցույց տվեց, որ չի բացառվում նաև միմյանց անընդհատ մոտեցող, բայց միմյանց չհատող ուղիղների գոյությունը։ Սա հակասում է մեր առօրյա պատկերացմանը, բայց այդ դեռ չի նշանակում, որ այն ճշմարտություն լինել չի կարող։

Կարելի է բերել նման-բազմաթիվ օրինակներ գիտության տարբեր բնագավառներից, որոնք ցույց են տալիս, որ որևէ տեսության ճշմարիտ կամ սխալ լինելու հարցը չի որոշվում նրանով, թե այդ տեսությունից բխող հետևությունները որքանով են մատչելի մեր զգայական պատկերացմանը։ Երևույթների տարածա-ժամանակային փոխհարաբերությունների, մասսայի, արագության և այլնի մասին մեր ունեցած առօրյա պատկերացումները, հենվելով մատերիայի շարժման պարզագույն ձևի՝ մեխանիկական տեղափոխության վրա, ի վիճակի չեն արտացոլելու մատերիայի, տարածության ու ժամանակի այն հարուստ բովանդակությունը, որը դրսևորվում է լույսի արագության կարգի արագությամբ տեղի ունեցող պրոցեսների ուսումնասիրության ընթացքում, որով և զբաղվում է հարաբերականության տեսությունը։ Եթե հարաբերականության տեսության մեջ մարմինների շարժման արագությունն ընդունենք շատ փոքր, ապա մենք ինքնըստինքյան կհանգենք կլասիկ տեսությանը։

Հարաբերականության տեսության փիլիսոփայական նշանակությունն այն է, որ հաղթահարելով կլասիկ տեսության մետաֆիզիկական բնույթը, այն անխզելի կապ է հաստատում տարածության, ժամանակի և մատերիայի միջև։ Այդ տեսակետից փիլիսոփայական միտքը մի քանի տասնամյակ առաջ է անցել ֆիզիկայից։ Մարքսիզմի կլասիկները, պայքարելով բազմապիսի իդեալիստական ու մետաֆիզիկական փիլիսոփաների դեմ, հետևողականորեն անցկացրել են այն միտքը, որ տարածությունն ու ժամանակը, հանդիսանալով մատերիայի գոյության հիմնական ձևեր, չեն կարող գոյություն ունենալ ինչպես շարժվող մատերիայից, այնպես էլ միմյանցից անկախ։ «...Ամեն մի կեցության հիմնական ձևերը,—գրում է Էնգելսը,—տարածությունն ու ժամանակն են. կեցությունը ժամանակից դուրս նույնպիսի մեծագույն անմտություն է, որքան և կեցությունը՝ տարածությունից դուրս» (Անտի-Դյուրինգ, Հայպետհրատ, 1952, էջ 66)։ Լենինը իր «Փիլիսոփայական տետրեր»-ում նշում է, որ տարածության ու ժամանակի էությունը շարժումն է։

Հարաբերականության տեսությունը ֆիզիկայի բնագավառում հիմնավորեց դիալեկտիկական մատերիալիզմի այս դրույթի ճշտությունը։ Այն ցույց տվեց, որ բացարձակ, մատերիայից միանգամայն անկախ տարածությունն ու ժամանակը դատարկ ֆիկցիաներ են, որոնք ընդունվել են կլասիկ տեսության կողմից։ Տարածությունն ու ժամանակը որպես մատերիայի գոյության ձևեր թե՛ քանակական և թե՛ որակական տեսակետից կախված են մատերիայի շարժման առանձնահատկություններից։ Այն փաստը, որ տարբեր սիստեմներում տարածական հարաբերությունները և ժամանակի հոսքը տարբեր են, փայլուն ապացույցն է այն բանի, որ տարածությունն ու ժամանակը որպես ձևեր, նայած մատերիայի որակական առանձնահատկություններին, իրենք էլ պետք է դրսևորվեն տարբեր որակական ձևերով։

Հարաբերականության տեսությունը բացահայտում է նաև տարածության ու ժամանակի միջև եղած այն օրգանական կապը, որն անտեսվում էր կլասիկ տեսության մեջ։ Կլասիկ տեսության մեջ տարածությունն ու ժամանակը հանդես են գալիս միմյանցից միանգամայն անկախ։ Շարժվող մարմնի տարածական հարաբերությունները փոփոխվում են, այնինչ ժամանակը մնում է նույնը։ Հարաբերականության տեսության մեջ տարածությունն ու ժամանակը երբեք առանձին-առանձին հանդես չեն գալիս։ Մի սիստեմից մյուսին անցնելիս փոփոխվում է և՛ տարածությունը և՛ ժամանակը. միայն նրանց մի առանձին համախմբությունը՝ քառաչափ տարածա-ժամանակային միջակայքն է, որ բոլոր դեպքերում մնում է նույնը։

Ինչպես տեսնում ենք, ի հակադրություն կլասիկ տեսության, որը հենվելով պինդ մարմնի մեխանիկական տեղափոխման օրենքների վրա, հիմնել է տարածության ու ժամանակի մետաֆիզիկական տեսություն, հարաբերականության տեսությունը հանդիսանում է դիալեկտիկական մատերիալիզմի դրույթների կոնկրետ արտահայտությունը ֆիզիկայի բնագավառում։ Նրա էության ճիշտ մեկնաբանման դեպքում այն չի հանգում ո՛չ սուբյեկտիվ իդեալիզմի և ո՛չ էլ փիլիսոփայական ռելյատիվիզմի։

Սակայն, եթե հարաբերականության տեսությունը իր էությամբ դիալեկտիկո-մատերիալիստական է, ապա այն ձևով, որով այն շարադրվել է նրա հեղինակի և դրա մեկնաբանողներից շատերի կողմից, որոշ անկայուն հիմք է ստեղծում այդ տեսությունը իդեալիստորեն ննգափոխելու համար։ Այդպիսի ննգափոխման համար իդեալիստները փորձում են կառչել իրեն՝ տեսության հիմնադիր Էյնշտեյնի առանձին փիլիսոփայական ասույթներից, որոնք ոչ մի կերպ չեն առնչվում տեսության փիլիսոփայական բովանդակության հետ, և ցանկանում են Էյնշտեյնի դեպի իդեալիզմը կատարած առանձին շեղումները ներկայացնել որպես հարաբերականության տեսությունից բխող իդեալիստական հետևություններ։ Անժխտելի է, որ ինչպես բուրժուական գիտնականների ճնշող մեծամասնությունը, այնպես էլ Էյնշտեյնը դիալեկտիկ-մատերիալիստ չէ։ Բնագիտության հարցերում նա տարերայնորեն կանգնել է մատերիալիզմի դիրքերում, սակայն, երբ հարցը վերաբերում է փիլիսոփայությանը, ապա նրա մոտ գերակշռում են պոզիտիվիստական ու մախիստական հայացքները։ Այսպես, օրինակ, ըստ Էյնշտեյնի, գիտության խնդիրը ոչ թե արտաքին աշխարհի էությունը բացահայտելն է, այլ մեր զգայությունները միմյանց հետ համաձայնեցնելը և նրանց տրամաբանական սիստեմի հանգեցնելը։ Խոսելով երկրաչափության մասին, նա հայտարարում է, որ երկրաչափության աքսիոմաները մարդկային մտքի ազատ ստեղծագործություններն են։

Սակայն Էյնշտեյնի առանձին իդեալիստական հայտարարությունները երբեք էլ չեն նշանակում, որ իդեալիստական է նաև հարաբերականության տեսությունը, երբեք էլ չեն նշանակում, որ հարաբերականության տեսությունը մարդկային մտքի «ազատ» ստեղծագործությունն է, որը կոչված է մեր զգայությունները տրամաբանական սիստեմի վերածելու։ Հարաբերականության տեսությունը, որպես տարածության ու ժամանակի ֆիզիկական տեսություն, երբեք էլ սկիզբ չի առնում Էյնշտեյնի պոզիտիվիզմից և բոլորովին էլ նրան չի հանգում։ Այն հենվում է հարյուրամյակների ընթացքում բնագիտության մեջ կուտակված փաստական նյութի վրա։

Հարաբերականության տեսության իդեալիստական խեղաթյուրումները



սկիզբ են առնում հաշվարկման սիստեմի ոչ ճիշտ՝ սուբյեկտիվ մեկնաբանությունից։ Ինչպես տեսանք, տարածական ու ժամանակային հարաբերությունները, մասսան և այլն հանդես են գալիս ոչ թե ինքնին, այլ մի որոշակի հաշվարկման սիստեմի նկատմամբ միայն։ Եթե մենք հաշվարկման սիստեմի տակ հասկանանք ոչ թե երևույթների օբյեկտիվ, ռեալ փոխհարաբերություն, այլ մեր կողմից կամայականորեն գծված ինչ-որ վերացական սխեմա, ապա այդտեղ հիմնական դերը կպատկանի դիտող սուբյեկտին, իսկ այդպիսի սիստեմի նկատմամբ հանդես եկող տարածական ու ժամանակային հարաբերությունները զուրկ կլինեն օբյեկտիվության ամեն մի նշույլից։ Հաշվարկման սիստեմի սուբյեկտիվ մեկնաբանությունը հանգում է նրան, որ հարաբերական տարածությունն ու ժամանակը, հարաբերական արագությունը, հարաբերական մասսան և այլն ներկայացվում են որպես սուբյեկտիվ կատեգորիաներ, այսինքն՝ հարաբերականությունը ննգափոխվում է սուբյեկտիվիզմով։

Էդինգտոնը, որն աչքի է ընկնում հարաբերականության տեսության իր իդեալիստական աղավաղումներով, սկսում է հենց հաշվարկման սիստեմի էության աղավաղումից։ Նրա համար հաշվարկման սիստեմը օրգանական հարաբերության մեջ չի գտնվում ուսումնասիրվող երևույթի հետ, այն սոսկ կամայական սխեմա է, զուտ երևակայության արդյունք, որը ստեղծված է մեր կողմից միայն ու միայն հարմարության համար՝ «մտքի տնտեսման» նկատառումով։ Ուստի, այդպիսի սիստեմի նկատմամբ որոշված ֆիզիկական մեծությունները, ըստ Էդինգտոնի, հանդիսանում են չափման ու հաշվման արդյունք, ստեղծված մեր օպերացիաների միջոցով։ Երկարությունն ու տևողությունը նա դիտում է ոչ թե որպես օբյեկտիվ ռեալություններ, այլ որպես իրերի փոխհարաբերություններ որոշ դիտողի նկատմամբ։ Հետևաբար, Էդինգտոնի համար աշխարհի հիմքը կազմում են ոչ թե մատերիան իր օբյեկտիվ հատկություններով, այլ կամայական հաշվարկման սիստեմի նկատմամբ հանդես եկող սուբյեկտիվ հարաբերությունները։ Իր «Տարածություն, ժամանակ և ձգողականություն» գրքում նա գրում է. «Տվեք ինձ աշխարհ, աշխարհ, որի մեջ կան հարաբերություններ — և ես կկառուցեմ մատերիա ու շարժում»։

Իրականում հաշվարկման սիստեմի ընտրության հարցում եղած ազատությունը երբեք էլ չի ժխտում նրա օբյեկտիվ ռեալությունը։ Ճիշտ է, որ հաշվարկման սիստեմը գրեթե միշտ կապվում է որևէ դիտողի առկայության հետ և հենց այդ դիտողի տեսակետից են ուսումնասիրվում երևույթները, սակայն ամենաէականն այն է, որ դիտողի սուբյեկտը ամբողջությամբ պայմանավորված է նրա սիստեմի ֆիզիկական վիճակով։ Դիտողն ինքը չէ, որ ստեղծում է տվյալ տարածա-ժամանակային հարաբերությունները, այլ նա միայն գրանցում է դրանք։ Մենք կարող ենք դիտողի փոխարեն տվյալ սիստեմում պատկերացնել որևէ գրանցող մեքենա, որն անպայման կգրանցի այդ սիստեմի նկատմամբ նույնպիսի հարաբերություններ, ինչ որ գրանցում է դիտողը։

Այստեղից հետևում է, որ տարածության, ժամանակի, շարժման, մասսայի և այլնի հարաբերականությունը երբեք էլ չի ժխտում նրանց օբյեկտիվությունը։ Մատերիայի գոյության այս ձևերի հարաբերականությունը սուբյեկտիվիզմով ննգափոխելու իդեալիստական փորձերը զուրկ են ամեն մի հիմքից։ Օբյեկտիվ իրականությունը կարող է արտահայտվել ինչպես բացարձակ, այնպես էլ հարաբերական բնութագրումների միջոցով։ Երևույթների հարաբե-

րական հատկությունները նույնքան օբյեկտիվ են, որքան օբյեկտիվ են բացարձակ հատկությունները։

Միայն հարաբերականության տեսությունը չէ, որ բացահայտել է ֆիզիկական մեծությունների հարաբերականությունը։ Կլասիկ մեխանիկան ընդունում էր, որ երևույթների շատ հատկություններ որոշակի իմաստ են ստանում կոնկրետ, որոշակի սիստեմի նկատմամբ միայն։ Օրինակ, կլասիկ մեխանիկայի շրջանակներում մարմնի պոտենցիալ էներգիան հարաբերական մեծություն է։ Լեռան գագաթում գտնվող մարմնի պոտենցիալ էներգիան լեռան ստորոտի նկատմամբ մի մեծություն է, ծովի մակերևույթի նկատմամբ մի այլ, իսկ Երկրի կենտրոնի նկատմամբ բոլորովին ուրիշ։ Հարցնել, թե որքան է մարմնի պոտենցիալ էներգիան ընդհանրապես, անկախ որևէ սիստեմից, անիմաստ է։ Պոտենցիալ էներգիան զուտ հարաբերական մեծություն է, սակայն դա երբեք չի ժխտում նրա օբյեկտիվ բովանդակությունը։ Նույնը կարելի է ասել նաև օդի հարաբերական խոնավության մասին։ Օդի բացարձակ խոնավությունը որոշվում է նրանում եղած ջրային գոլորշիների բացարձակ ճնշմամբ։ Սակայն տվյալ բացարձակ խոնավության դեպքում ջերմաստիճանից կախված օդի խոնավությունը որոշվում է հարաբերական խոնավությամբ, որը հարաբերական լինելու հետ միասին օդի վիճակի բնորոշման օբյեկտիվ հատկանիշ է։

Ուրեմն երևույթները հարաբերական բնութագրությունների միջոցով բնորոշելը ընդունվում էր նաև կլասիկ մեխանիկայում։ Հարաբերականության տեսությունը միայն ճշգրտել է մեր գիտելիքները այդ հարցում, ցույց տալով, որ տարածա-ժամանակային հարաբերությունները, որոնք դիտվել են որպես բացարձակ հարաբերություններ, ըստ էության հարաբերական են։ Դրա հետ մեկտեղ, հարաբերականության տեսությունը ընդունում է, որ լույսի արագությունը, որն ինչպես ամեն մի արագություն, դիտվում էր որպես հարաբերական մեծություն, իրականում բացարձակ է՝ նրա մեծությունը հաստատուն է բոլոր հաշվարկման սիստեմներում։

Իդեալիզմը ուռճացնում է տեսության միայն մի կողմը՝ տարածության ու ժամանակի հարաբերականությունը և միանգամայն անտեսում է մյուսը՝ քառաչափ տարածա-ժամանակային հարաբերությունների բացարձակությունը։ Կլասիկ ֆիզիկայում երևույթների հեռավորությունը և նրանց միջև ընկած ժամանակամիջոցը առանձին-առանձին բացարձակ են, այնինչ հարաբերականության տեսության համաձայն բացարձակ է միայն այդ երկուսի հանրահաշվական գումարը, որը և կոչվում է քառաչափ տարածա-ժամանակային միջակայք։ Այս փաստը, որից այժմ կառչում է իդեալիզմը, ըստ էության հաստատում է դիալեկտիկական մատերիալիզմի այն տեսակետը, համաձայն որի տարածությունն ու ժամանակը որպես միևնույն մատերիայի գոյության երկու տարբեր ձևեր, միմյանցից անջատ գոյություն ունենալ չեն կարող։ Տարածությունն ու ժամանակը միմյանցից անջատելը անցողիկ է, հարաբերական, իսկ նրանց միասնությունը բացարձակ է։

Փիլիսոփայական առումով տարածության ու ժամանակի բացարձակությունը կայանում է նրանում, որ նրանք հանդիսանում են համընդհանուր, անհրաժեշտ պայմանները մատերիայի բոլոր կոնկրետ ձևերի նկատմամբ, որ մատերիայի ոչ մի կոնկրետ վիճակ չի կարող գոյություն ունենալ տարածությունից ու ժամանակից դուրս։ Սակայն դրա հետ միասին տարածությունն ու ժամանակը հարաբերական են, քանի որ նրանք որպես մատերիայի գոյության



ձևեր, կախված մատերիայի կոնկրետ վիճակից, ընդունում են կոնկրետ որակական ու քանակական արտահայտություններ։ Ֆիզիկայում դա արտահայտվում է նրանով, որ մի հաշվարկման սիստեմից մյուսին անցնելիս ժամանակի հոսքը և տարածական մասշտաբները փոփոխվում են։

Հետևաբար, տարածությունն ու ժամանակն ըստ էության բացարձակ են, իսկ ըստ ձևի՝ հարաբերական։ Միայն մետաֆիզիկական մտածողության համար է, որ տվյալ հարաբերությունը պետք է լինի կամ բացարձակ կամ հարաբերական։ Դիալեկտիկական մատերիալիզմի տեսակետից բացարձակն ու հարաբերականը միմյանց հակադիր, բայց միևնույն ժամանակ միմյանցով պայմանավորվող և միմյանց լրացնող կողմեր են։ Տարածությունն ու ժամանակը բացարձակ են այնքանով, որքանով որ մատերիայի գոյության համընդհանուր, անհրաժեշտ պայմաններն են և հարաբերական են այնքանով, որքանով որ ամեն մի կոնկրետ դեպքում հանդես են գալիս կոնկրետ ժամերի ու մետրերի ձևով։

Այսպիսով, դիալեկտիկական մատերիալիզմի համար հարաբերականության տեսության փիլիսոփայական նշանակությունն այն է, որ դա բացահայտեց մեծ արագությամբ ընթացող պրոցեսներում տարածության ու ժամանակի օրգանական կապը շարժվող մատերիայի ներքին օրինաչափությունների հետ և դրանով իսկ հավաստեց նրանց հարաբերական բնույթը։ Այն ցույց տվեց, որ շարժվող մատերիայի ամեն մի կոնկրետ վիճակի հետ կապված տարածա-ժամանակային հարաբերությունները պատմականորեն անցողիկ են, հարաբերական։ Բացարձակ է միայն այն, ինչ որ ընդհանուր է, մնայուն է այդ բոլոր հարաբերական ձևերի մեջ։ Այս իդեան իր արմատներն ունի դեռևս ռուս նշանավոր մաթեմատիկոս Լոբաչևսկու մոտ, որը բացահայտելով ոչ էվկլիդյան երկրաչափության հնարավորությունը, ցույց տվեց, որ էվկլիդյան երկրաչափության միջոցով հանդես եկող տարածական հարաբերությունները երբեք էլ ընդհանուր, բացարձակ հարաբերություններ չեն։ Էյնշտեյնի կողմից Լոբաչևսկու այս իդեաների հետագա զարգացումը հանգեցրեց հարաբերականության տեսությանը, որն իրավամբ խոշոր նվաճում է ֆիզիկայում և ունի հսկայական նշանակություն դիալեկտիկական մատերիալիզմի դրույթների ավելի խոր և բազմակողմանի ըմբռնման համար։

---

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿՈՎ ԱՆՑԿԱՑՆԵԼ ՀԱՇՎԵՏՈՒ ԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ

Ռեսպուբլիկայի սկզբնական պարտիական կազմակերպություններում սկսվել են հաշվետու-ընտրական ժողովները. քննարկվում են սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների, բյուրոների և կոմիտեների հաշվետվությունները։ Դրանց անմիջապես հաջորդելու են շրջանային պարտիական կոնֆերանսները, որտեղ լսվելու և քննարկվելու են շրջկոմների հաշվետվությունները։

Հաշվետու ընտրական ժողովները սկզբնական պարտիական կազմակերպությունների կյանքում կարևոր իրադարձություն են։ Այդ ժողովներում ամփոփվում և հանրագումարի են բերվում հաշվետու ժամանակաշրջանում սկզբնական պարտիական կազմակերպությունների ձեռք բերած նվաճումները և, ելնելով պարտիայի ու կառավարության որոշումներից, նոր խնդիրներ են առաջադրվում տվյալ պարտիական կազմակերպությանը։

Մեր ռեսպուբլիկայում այս տարի սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու ընտրական ժողովները տեղի են ունենալու հայ ժողովրդի համար կարևոր տարելիցի՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-ամյակի տոնակատարության նախօրյակին, երբ ի մի են բերվելու մեր ժողովրդի քառասուն տարիների նվաճումները։

Ամենուրեք ռեսպուբլիկայի գործարաններում և ֆաբրիկաներում, շինարարական հրապարակներում, հանքերում և կոլտնտեսային դաշտերում ռեսպուբլիկայի բանվորները, գյուղատնտեսության աշխատողներն ու ծառայողները սոցիալիստական ստեղծարար մրցություն են ծավալել ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանով նախատեսված խնդիրների և այդ կապակցությամբ ընդունված սոցիալիստական պարտավորությունների կատարման և գերակատարման համար։

Ռեսպուբլիկայի աշխատավորները 1960 թվականի անցած 9 ամիսներին լուրջ հաջողությունների են հասել արդյունաբերության, գյուղատնտեսության, բնակչության նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման ուղղությամբ։ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1960 թվականի 8 ամիսների համախառն արտադրանքի պլանը կատարել է 103,6 տոկոսով և հարազատ Հայրենիքին տվել է մեծ քանակությամբ արտապլանային արտադրանք։ Պլանից դուրս թողարկվել են մեծ քանակությամբ ավտոդողեր, շարժական էլեկտրակայաններ, բրդյա և մետաքսյա գործվածքներ, կաշվե կոշիկ և այլ ապրանքներ։

Սակայն մի շարք ձեռնարկությունների ղեկավարներ, սկզբնական



պարտիական կազմակերպություններ չկարողացան մոբիլիզացնել կոլեկտիվի բոլոր ուժերը պլանով նախատեսված խնդիրները ժամանակին կենսագործելու համար։ Այդ պատճառով էլ միայն Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի սիստեմից 46 ձեռնարկությունների կոլեկտիվներ չկատարեցին իրենց արտադրական պլանները։

Ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղի աշխատողները նույնպես լուրջ հաջողություններ են ձեռք բերել գյուղատնտեսության հետագա զարգացման և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու գործում։ Կոլտնտեսություններում և սովխոզներում անցած 9 ամիսների ընթացքում, 1959 թվականի նույն ժամանակաշրջանի հետ համեմատած, զգալի թվով ավելացել է խոշոր եղջերավոր անասունների, այդ թվում կովերի գլխաքանակը, և գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

ՍՄԿՊ կանոնադրության համաձայն հաշվետու-ընտրական ժողովները սկզբնական պարտիական կազմակերպություններում անց են կացվում նախորդ հաշվետու-ընտրական ժողովից մի տարի հետո։ Այն սկզբնական պարտիական կազմակերպություններում, որտեղ գոյություն ունեն պարտիական խմբեր և ցեխային պարտիական կազմակերպություններ, հաշվետու-ընտրական ժողովները պետք է անցկացնել նախ՝ պարտիական խմբերում և ցեխային կազմակերպություններում, ապա՝ ընդհանուր ժողով կամ կոնֆերանս գումարել։ Այն սկզբնական պարտիական կազմակերպություններում, որտեղ ստեղծված են ադմինիստրացիայի նկատմամբ վերահսկողություն իրականացնող հանձնաժողովներ, հաշվետու-ընտրական ժողովի օրակարգին ավելանալու է այդպիսի հանձնաժողով ընտրելու հարցը, որը պետք է կատարվի բաց քվեարկությամբ։ Ի դեպ, սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարի հաշվետվության մեջ անհրաժեշտ է ցույց տալ այդ հանձնաժողովների կատարած աշխատանքները և նրանց հետագա խնդիրները։

Հաշվետու-ընտրական ժողովներում կազմակերպությունների կատարած գրական աշխատանքն ամփոփելու հետ միասին, ինչպես պարտիական կազմակերպության քարտուղարների, բյուրոների և կոմիտեների հաշվետվություններում, այնպես էլ կոմունիստների ելույթներում անհրաժեշտ է բացահայտել այն թերությունները ու բացերը, որոնք տեղ են գտել տվյալ սկզբնական պարտիական կազմակերպության աշխատանքներում։ Միաժամանակ պարտիական ժողովները պետք է նշեն կոնկրետ միջոցառումներ եղած թերություններն ու սխալները շտկելու համար։

Որպեսզի պարտիական հաշվետու-ընտրական ժողովները հասնեն իրենց նպատակին, անհրաժեշտ է ամենից առաջ կազմել կազմակերպության կյանքը լրիվ վերլուծող զեկուցում և ստեղծել բոլոր հնարավորությունները, որպեսզի հաշվետվությունները քննարկվեն ազատ և գործարար մթնոլորտում, որպեսզի կոմունիստներն իրենց ելույթներում վեր հանեն պարտիական, սովետական և տնտեսական կազմակերպությունների աշխատանքներում տեղ գտած թերությունները, բացերն ու սխալները։ Միմիայն այս ճանապարհով հնարավոր կլինի վերացնել առանձին օղակներում եղած սխալներն ու թերությունները և հասնել լուրջ հաջողությունների։

Պարտիական կազմակերպության քարտուղարի, բյուրոյի կամ կոմիտեի հաշվետվությունները կազմելիս չի կարելի աչքի առաջ չունենալ այն հարցը, թե ՍՄԿՊ անդամ-թեկնածուները ինչպե՛ս են իրենց արդարացնում արտա-

դրության մեջ, հասարակական աշխատանքներում, ընտանիքում, կատարո՞ւմ են արդյոք ՍՄԿՊ Կանոնադրությամբ նախատեսված պարտականությունները։ Այս հարցը կարևոր է և միշտ էլ գտնվելու է մեր քաղկոմ-շրջկոմների և սկզբնական պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Վերջերս ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի բյուրոն քննարկեց կոմունիստների կողմից կանոնադրական պարտականությունների կատարման ուղղությամբ Շահումյանի և Կիրովականի շրջանների պարտիական կազմակերպությունների աշխատանքը։ Պարզվեց, որ նշված շրջանների շատ սկզբնական պարտիական կազմակերպություններ անհրաժեշտ աշխատանք են տանում կոմունիստների շրջանում, որի շնորհիվ էլ նրանց ճնշող մեծամասնությունը բարեխիղճ կերպով կատարում է ՍՄԿՊ Կանոնադրությամբ նախատեսվող պարտականությունները։

ՀԿՊ Կենտկոմի բյուրոն միաժամանակ նշեց, որ, ինչպես Շահումյանի և Կիրովականի շրջկոմների, այնպես էլ մի շարք սկզբնական պարտիական կազմակերպությունների աշխատանքներում կան լուրջ թերություններ. Նրանք դեռևս լիովին չեն հասել այն բանին, որպեսզի բոլոր կոմունիստները կատարեն պարտիայի Կանոնադրությամբ նախատեսված պարտականությունները։ Առանձին կոմունիստներ ակտիվ կերպով չեն մասնակցում պարտիական որոշումների կենսագործմանը, նրանց մի մասը ֆորմալ և պասիվ վերաբերմունք է ցույց տալիս դեպի այդ որոշումները։ Այդ է պատճառը, որ նշված շրջանների առանձին կոմունիստներ խախտում են պարտիական կարգապահությունը։

Բյուրոն միաժամանակ նշեց, որ երկու շրջկոմները և առանձին պարտիական կազմակերպություններ երբեմն լիբերալ վերաբերմունք են ցուցաբերում այդ կոմունիստների նկատմամբ։ Կան դեպքեր, երբ առանձին կոմունիստներ հրաժարվում են արտադրության մեջ աշխատելուց։

ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի բյուրոն մշակեց մի շարք կոնկրետ միջոցառումներ վերոհիշյալ շրջկոմներին և սկզբնական կազմակերպություններին օգնելու և եղած թերությունները վերացնելու համար։

ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումը լուրջ խնդիրներ է դրել արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների առջև։ Հաշվետու-ընտրական ժողովները նախապատրաստելիս արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է առանձնակի ուշադրություն դարձնեն արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորման, աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման, ավտոմատացման և արտադրության կազմակերպման հետագա բարելավման հարցերին։

Արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրներից է նաև արտադրության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման հարցերը, որոնք շատ կարևոր նշանակություն ունեն սոցիալիստական արդյունաբերության առջև դրված խնդիրների կենսագործման համար։ Հաշվետու-ընտրական ժողովների ընթացքում պետք է բացահայտվեն արտադրական ձեռնարկություններում եղած նոր հնարավորություններն ու ռեզերվները և ամբողջ սրությամբ դրվեն դրանք օգտագործելու և այդ ճանապարհով մեր Հայրենիքին ավելի շատ արտադրանք տալու հարցը։ Չի կարելի աչքաթող



անել նաև որակը։ Մեր ռեսպուբլիկայի մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ դեռևս թողարկում են ցածրորակ արտադրանք։

Լուրջ և կարևոր խնդիրներ են դրված շինարարական կազմակերպությունների առջև։ Նրանք ոչ միայն պետք է կառուցեն յոթնամյա պլանով նախատեսված արդյունաբերական ձեռնարկություններ, այլ մեծ թվով կուլտուր-լուսավորական հիմնարկներ, հիվանդանոցներ, բնակարաններ, որոնցով հնարավոր կլինի բավարարել մեր բնակչության կուլտուր-կենցաղային պահանջները։

Շինարարական հիմնարկների պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում պետք է մեծ ուշադրություն հատկացնել շինարարական ու մոնտաժային աշխատանքների արժեքի իջեցմանը։ Շինարարության արժեքի իջեցման գործում կարևոր նշանակություն ունեն հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաների կիրառումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, շինարարության կոմպլեքսային մեքենայացումը։ Ահա այս հարցերը պետք է կազմեն պարտիական կազմակերպությունների քարտուղարների հաշվետվությունների առանցքը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան կարևոր խնդիրներ է դրել մեր երկրի կոլտնտեսային գյուղացիության առջև։ Գյուղական սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների, բյուրոների հաշվետվություններում պետք է հանգամանորեն բացահայտվեն գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և հանրային անասնապահության գլխաքանակի ու մթերատվության բարձրացման հարցերը։

Կոլտնտեսություններին և սովխոզներին կից, ինչպես նաև գյուղական մնացած սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում պետք է դրվի գյուղատնտեսության ասպարեզում չօգտագործված ռեզերվների բացահայտման և օգտագործման հարցը։ Հատուկ ուշադրության է արժանի անասուններին բարձրորակ կերով ապահովելու խնդիրը։ Այստեղ դեռևս քիչ չեն թերությունները։

Գյուղական սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները պետք է հանգամանորեն վեր հանեն այն թերությունները և բացերը, որոնք խանգարում են ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ ստանալու գործին։ Ինչպես հաշվետվություններում, այնպես էլ կոմունիստների ելույթներում կարևոր տեղ պետք է գրավեն գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցման, աշխատատար պրոցեսների մեքենայացման, մեքենաների խնամքի և վերանորոգման հարցերը։

Միջնակարգ և միջնակարգ մասնագիտական դպրոցների, ինչպես նաև բարձրագույն ուսումնական հաստատությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում ամբողջ սրությամբ պետք է առաջ քաշել ուսման առաջադիմության բարձրացման, կարգապահության ամրապնդման, աշակերտների և ուսանողների ուսուցումը կյանքի հետ սերտորեն կապելու, նրանց արտադրական պրակտիկայի և կոմունիստական դաստիարակության հարցերը։ Անհրաժեշտ է պատշաճ ուշադրություն հատկացնել նաև դպրոցների և բուհերի ուսումնա-նյութական բազայի ամրապնդման, ուսումնական արհեստանոցների, կաբինետների և լաբորատորիաների կահավորման հարցերին։

Սովետական հիմնարկների, մինիստրությունների և գերատեսչությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում ուշադրության կենտրոնում են լինելու ապարատի աշխատանքի ճկունության և հստակության հարցերը։ Այս կազմակերպություններում պետք է ամբողջ սրությամբ առաջ քաշել աշխատավորների դիմում-բողոքներին հոգատար վերաբերմունք ցույց տալու և բյուրոկրատիզմի դեմ անհաշտ պայքար մղելու խնդիրները։

Ամփոփելով տվյալ սկզբնական պարտիական կազմակերպության առջև դրված արտադրական խնդիրների գծով ձեռք բերած հաջողությունները, հաշվետու-ընտրական ժողովներում պետք է հանգամանորեն անդրադառնալ կոմունիստների գաղափարական-քաղաքական մակարդակի բարձրացման, ինչպես նաև աշխատավորների շրջանում տարվող ագիտացիոն-մասսայական և կուլտուր-լուսավորական աշխատանքների հարցերին, ցույց տալ թե սկզբնական պարտիական կազմակերպությունը ինչ աշխատանք է տարել ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» որոշման կենսագործման ուղղությամբ։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների, բյուրոյի կամ կոմիտեի հաշվետվությունների մեջ պետք է ամփոփ կերպով ի մի բերվեն անցյալ քաղաքական ուսուցման տարում սկզբնական պարտիական կազմակերպության աշխատանքները կոմունիստների և անկուսակցականների մարքս-լենինյան դաստիարակության ուղղությամբ։ Հաշվետու-ընտրական կամպանիան զուգադիպում է քաղաքական ուսուցման նոր տարվա հետ. անհրաժեշտ է հստակ կերպով առաջադրել նոր ուսումնական տարում տվյալ սկզբնական կազմակերպության առջև ծառացած խնդիրները, հատուկ ուշադրություն հատկացնել ինքնակրթությամբ զբաղվող կոմունիստների ուսուցման և դաստիարակության գործին։ Մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման հսկայական թափը պահանջում է անընդհատ հարստացնել կոմունիստների տնտեսագիտական գիտելիքները։

Անհրաժեշտ է լուրջ ուշադրություն դարձնել կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունների աշխատանքին, ցույց տալ, թե երիտասարդությունն ինչպե՛ս է մասնակցում յոթնամյա պլանով նախատեսված վիթխարի խնդիրների կենսագործմանը, կոմերիտական կազմակերպություններն ինչպե՛ս են կատարում արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում իրենց ստանձնած պարտավորությունները, ինչպե՛ս են աշխատում կոմերիտական հարվածային կառույցներին կից կոմերիտական շտաբները։ Ամենից առաջ պետք է դրվատվի և խրախուսվի վերջին տարիներին երիտասարդության շրջանում ծնունդ առած նոր հայրենասիրական շարժման՝ աշխատանքի կոմունիստական շարժման ծավալումը։

Պարտիական կազմակերպությունների ժողովներում բազմակողմանիորեն պետք է բարձրացվեն երիտասարդների կողմից ռացիոնալիզատորական և գյուտարարական աշխատանքների, երիտասարդության տեխնիկական ուսուցման հարցերը, թե գյուղական կոմերիտական կազմակերպությունները ինչպես են մասնակցում բերքատվության ավելացման, անասնապահության մեջ մսի, կաթի, բրդի, ձվի բարձր արտադրության գործին։

Պարտիայի քաղկոմ-շրջկոմները պետք է օգնեն սկզբնական պարտիական կազմակերպություններին հաշվետու-ընտրական ժողովները բազմակողմանիորեն նախապատրաստելու և անցկացնելու գործում։

Պարտիայի շրջանային և քաղաքային կոմիտեները հաշվետու-ընտրական ժողովներն սկսելուց առաջ պետք է կազմեն ժողովների անցկացման օրացուցային պլան, ելնելով յուրաքանչյուր սկզբնական պարտիական կազմակերպության հնարավորություններից։ Անհրաժեշտ է ընտրություններից առաջ շրջկոմում կամ քաղկոմում հրավիրել սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարների սեմինար պարապմունք կամ խորհրդակցություն, որտեղ պետք է մանրամասն բացատրվեն հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստման հետ կապված բոլոր հարցերը։

Հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստմանն ու անցկացմանը պետք է ակտիվ կերպով մասնակցեն քաղկոմ-շրջկոմների բյուրոների և պլենումների անդամներն ու թեկնածուները։ Նրանք պետք է տեղում կոնկրետ օգնություն ցույց տան սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարին, ինչպես հաշվետվություններ կազմելու, այնպես էլ ժողովները գաղափարական-քաղաքական բարձր մակարդակով անցկացնելու գործում։ Անհրաժեշտ է, որ ինչպես հաշվետվություններ կազմելու, այնպես էլ ժողովը նախապատրաստելու հետ կապված մնացած հարցերին մասնակցեն հնարավորին չափ մեծ թվով կոմունիստներ, որով հնարավոր կլինի լավ հաշվետվություն կազմել և ժողովը բարձր մակարդակով անցկացնել։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում անհրաժեշտ է լայն կերպով ծավալել քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Լավ կլինի զեկուցման մեջ ցույց տալ, թե ինչպես են կենսագործվել նախորդ հաշվետու-ընտրական ժողովի մասնակիցների կողմից արված քննադատական դիտողությունները։ Այդպիսով կոմունիստները կհամոզվեն, որ իրենց ընտրած պարտիական օրգանը ունկնդրել է կոմունիստների ձայնին։ Հաշվետու զեկուցման մեջ պետք է էական տեղ գրավի ցեխային պարտիական կազմակերպությունների և խմբերի, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքը։

Շրջանային և քաղաքային կոմիտեները, ինչպես նաև հաշվետու-ընտրական ժողովին մասնակցող կոմունիստները պետք է լուրջ ուշադրություն դարձնեն այն բանին, թե ո՛վ է ընտրվում պարտիական ղեկավար օրգանում, կամ ո՛վ է լինելու իրենց սկզբնական կազմակերպության քարտուղարը։ Անհրաժեշտ է ղեկավար օրգաններում ընտրել կոլեկտիվում հեղինակություն վայելող, գործիմաց մարդկանց, համարձակորեն տեղ տալ երիտասարդ կոմունիստներին և կանանց։

Հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստումը և բարձր մակարդակով անցկացումը նոր խթան կհանդիսանա սկզբնական պարտիական կազմակերպությունների առջև դրված խնդիրների հաջող լուծման համար։

---

# ՊԱՐՏԻԱՅԻ ՇՐՋԿՈՄԸ ԵՎ ԴՊՐՈՑԸ

Խ. ԵՐԻՑՅԱՆ

Պարտիայի շրջանային կոմիտեի առօրյա գործունեության մեջ ժողովրդական կրթությունն այն կարևորագույն բնագավառներից է, որը պահանջում է առավել հոգատարություն և ուշադրություն։ Շրջկոմի կոնկրետ ղեկավարությունը, նրա օպերատիվ օգնությունը ժողովրդական կրթության աշխատողներին մեծ չափով նպաստում է դպրոցի առջև ծառացած խնդիրների հաջող լուծմանը։ Այս բանում համոզվելու համար դիմենք փաստերին։

Ստեփանավանի շրջանում զգալի հաջողություններ են ձեռք բերվել ժողովրդական կրթության ասպարեզում։ Եվ, երբ խորանում ես դրանց մեջ, անմիջապես աչքի են ընկնում շրջանային կոմիտեի հետևողական քայլերն այդ բնագավառում։

Ամրապնդել դպրոցների նյութական բազան, մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակությունը հանձնել այդ գործի հմուտ վարպետներին, մշտապես բարելավել մանկավարժական կադրերի կազմը, ահա այն հիմնական խնդիրները, որոնց լուծման ուղղությամբ է ընթացել գլխավորապես դպրոցներին պարտիայի Ստեփանավանի շրջկոմի ցույց տրվող ղեկավարությունը։

Շրջանի պարտիական և սովետական ղեկավար օրգանների ջանքերի շնորհիվ համաժողովրդական հոգատարությամբ է շրջապատված դպրոցը, հատկապես դպրոցական շինարարությունը։ Դպրոցները լավագույն շենքերով, լուսավոր և հարմար դասարաններով ապահովելը դարձել է ոչ միայն ժողովրդական կրթության ֆրոնտի աշխատողների, այլև գյուղական Սովետների, կոլտնտեսային պարտիական կազմակերպությունների պատվավոր խնդիրը։ Եվ իրոք, իզուր չեն անցել այդ ջանքերը։

Այս ուսումնական տարվանից շրջանի դպրոցների կեսից ավելին արդեն անցել է մեկհերթ պարապմունքի, իսկ առաջիկա մեկ-երկու տարվա ընթացքում շրջանի բոլոր դպրոցները կանցնեն մեկհերթ պարապմունքների։ Շրջանում չկա մի գյուղ, ուր չկատարվի դպրոցական շինարարություն. մեկը մյուսի հետևից վեր են խոյանում բարեկարգ դպրոցական շենքերը։ Ընդամենը մի քանի ամսվա ընթացքում Հոբարձիի կոլտնտեսության պարտիական կազմակերպության և կոլտնտվարչության նախաձեռնությամբ, ժողկրթբաժնի և կոլտնտեսության միջոցներով կառուցվեց և շահագործման հանձնվեց երկհարկանի դպրոցական շենքը։ Մեկ տարվա ընթացքում շահագործման կհանձնվեն նաև Պուշկինոյի, Գյուլագարակի և այլ գյուղերի տուֆակերտ, գեղեցիկ, երկհարկանի դպրոցական շենքերը։

Դպրոցի նյութական բազայի ամրապնդման հետ միասին նշանակալի չափով բարելավվել է նաև մանկավարժական կադրերի կազմը։ Շրջանի դպրոց-



ներում աշխատող ուսուցիչների մոտ 70 տոկոսը ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն։ Մեծ հոգատարություն է ցուցաբերվում ուսուցիչների նկատմամբ. նրանց համար շրջանի բոլոր գյուղերում կառուցվել են լավագույն բնակելի տներ. այդ նպաստում է դպրոցները ավելի պատրաստված, զարգացած մանկավարժներով ապահովելու գործին։ Ստեփանավանի շրջանում գյուղական ուսուցիչն այլևս չի մտածում այն մասին, որ նա կարող է ապրել բնակարանային վատ պայմաններում։

1959—1960 ուսումնական տարին հաջողությամբ փակեցին շրջանի դպրոցները։ Նրանք նախապատրաստված և կազմակերպված սկսեցին նաև այս ուսումնական տարին։ Արդեն մի քանի տարի է, ինչ շրջանի ժողկրթության աշխատողներն իրենց ձեռքում են պահում Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի փոխանցիկ դրոշը՝ նոր ուսումնական տարին լավ նախապատրաստելու համար։ Ինչպես անցյալ, այնպես էլ այս ուսումնական տարում դպրոցական շենքերի և գույքի վերանորոգումը կատարվեց բացառապես աշակերտական շինարարական բրիգադների ուժերով (այդպիսի բրիգադներ կային շրջանի բոլոր գյուղերում)։ Երկու տարվա ընթացքում տնտեսված դրամական միջոցները ծախսվեցին դպրոցական շենքերի նորոգման, ինչպես և լաբորատորիաների հարստացման համար։

Սկսած 1959 թվականից նոր ուսումնական տարվա նախապատրաստման կապակցությամբ շրջանում սահմանվեց գեղեցիկ դպրոցի մրցանակաբաշխություն, որի նպատակն է պատշաճ տեսք տալ դպրոցներին, կարգավորել դպրոցի պատերն ու ցանկապատերը, ստեղծել ծաղկանոցներ, մաքրություն պահպանել դպրոցների միջանցքներում ու դասասենյակներում, կազմակերպել յոթնամյակի խնդիրներին նվիրված մատչելի ցուցադրական ագիտացիա, բարելավել դպրոցների սանիտարական վիճակը և այլն։ Նոր ուսումնական տարվա նախապատրաստման ժամանակ հատուկ ուշադրություն է հատկացվել նաև կաբինետների հարստացմանը, ուսումնական արհեստանոցների ստեղծմանը, սպորտ հրապարակների կարգավորմանը, ծառատնկմանն ու կանաչապատմանը, ուսումնա-արտադրական տնտեսությունների և արտադրական բրիգադների աշխատանքների բարելավմանը, ուսուցիչների և աշակերտների հանգստի խելացի կազմակերպմանը։ Նշված խնդիրների լուծումը կենսական նշանակություն ունի դպրոցի և, հատկապես, կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու մասին պարտիայի և կառավարության որոշումների կենսագործման համար։

Այս առումով էլ չափազանց կարևոր է նշել այն աշխատանքը, որ կատարվել է Ստեփանավանի շրջանում։

Պարտիայի շրջկոմը կոնկրետ միջոցառումներ մշակեց դպրոցներին օգնություն ցույց տալու ուղղությամբ։ Դպրոցական, կոլտնտեսային պարտիական կազմակերպությունների, կոլտնտվարչությունների, գյուղսովետների ուշադրությունը բևեռեց դպրոցներում ուսումնա-արտադրական բազա ստեղծելու գործին կոնկրետ օգնություն ցույց տալու վրա։ Նշված միջոցառումների կենսագործման նկատմամբ շրջկոմը սահմանեց հսկողություն ապարատի աշխատողների և պարտիական ակտիվի միջոցով, բյուրոյի նիստերում սիստեմատիկաբար քննության առնելով ուսումնա-դաստիարակչական աշխատանքների վիճակն այս կամ այն դպրոցում։ Երկար ժամանակ չի անցել դպրոցի վերաբերյալ որոշումից, սակայն արդեն կարելի է որոշ հանրագումարի բերել Ստեփա-

նավանի շրջանի դպրոցների կատարած աշխատանքն աշակերտների ուսուցման, կրթության և դաստիարակության բնագավառում։ Շրջանի բոլոր դպրոցներն ունեն իրենց ուսումնական արհեստանոցները։ Մի շարք դպրոցներում (Կույբիշև, Հոբարձի, Գյառգյառ) օրինակելի աշխատանք կատարվեց ուսումնական արհեստանոցներն իրենց ուժերով կահավորելու գործում։ Կույբիշևի յոթնամյա դպրոցի ուսումնական արհեստանոցում աշխատանքային ուսուցման համար ստեղծված են լավ պայմաններ։ Դպրոցի դիրեկտոր Ս. Լանչինսկին ինքն է ղեկավարում արհեստանոցի աշխատանքները։ Օրվա բոլոր ժամերին այնտեղ կարելի է տեսնել խմբերով աշակերտների, որոնք իրենց արհեստանոցի ուժերով վերանորոգեցին գույքը, ծածկեցին նորակառույց ճագարանոցի ու թռչնանոցի տանիքը։ Այդ դպրոցի ուժերով ստեղծված բիոլոգիայի կաբինետը, որի համար շրջանակներ ու վանդակներ են պատրաստել աշակերտները, ամենաօրինակելի կաբինետներից է, որը հաջողությամբ ծառայում է աշակերտների կողմից նյութի խոր ըմբռնմանը, նրանց գիտելիքների հարստացմանը։

Ուսումնական արհեստանոցի ստեղծման գործում զգալի քայլեր է կատարել նաև Ստալինի անվան միջնակարգ դպրոցը։ Մինչև ուսումնական արհեստանոց ստեղծելը և դրանից հետո պարտիական բյուրոյի նիստերում և պարտժողովներում քննարկվել է աշակերտների պոլիտեխնիկական ուսուցման հարցը և նշված միջոցառումների կենսագործման շնորհիվ հաջողվել է դպրոցում ստեղծել ուսումնական արհեստանոց, որն ունի մի քանի ցեխեր՝ մետաղամշակման, փայտամշակման, կար ու ձևի։ Արհեստանոցի աշխատանքների աշխուժացման և աշակերտներին կայուն ունակություններ տալու նպատակով դպրոցի պարտկազմակերպությունը և դիրեկցիան կազմակերպել են մշտական ցուցահանդես, որտեղ ցուցադրվում են արհեստանոցում պատրաստված իրերն ու գործիքները, որոնք իրենց որակով արդեն բավարարում են զանազան կազմակերպությունների պահանջը։ Այս տարվա ընթացքում մի քանի հիմնարկություններից արհեստանոցն արդեն պատվերներ ընդունեց և պատրաստեց աթոռներ, սեղաններ, վառարաններ և այլ իրեր։

Միայն ուսումնական արհեստանոցի աշխատանքները չեն, որ զբաղեցնում են Ստալինի անվան միջնակարգ դպրոցի պարտիական կազմակերպությանը։ Մշտապես նրա ուշադրության կենտրոնում են ուսումնա-կրթական հարցերը։ Պարտիական կազմակերպությունը ճիշտ է կողմնորոշում դպրոցի ուսուցչական կոլեկտիվին, որ երեխաների աշխատանքային դաստիարակությունն ու պոլիտեխնիկական ուսուցումը պետք է տարվի աշակերտներին խոր ու կայուն գիտելիքներով զինելու ուղղությամբ։ Անցյալ ուսումնական տարում աշակերտների ուսման առաջադիմությունը դպրոցում կազմեց մոտ 95 տոկոս, իսկ մի շարք առարկաների գծով՝ (քիմիա, բիոլոգիա, լեզու, աշխարհագրություն և այլն) 100 տոկոս։ Այդ առարկաների դասատուներ, կոմունիստներ՝ Ա. Բաբայանը, Գ. Հակոբյանը, Ա. Իսաբեկյանը, Կ. Հակոբյանը և ուրիշներ արդեն երկար տարիների մանկավարժներ են և աչքի են ընկնում իրենց բարձր վարպետությամբ։

Պարտիական բյուրոն մեծ հոգատարություն է հանդես բերում կոմերիտական և պիոներական կազմակերպությունների նկատմամբ։ Հաճախակի բյուրոյի նիստերում քննարկում է նրանց աշխատանքների ընթացքը և ուղղություն տալիս։ Կոմերիտական կազմակերպությունն իր շարքերում ընդգրկում է 100-



ից ավելի կոմերիտականներ, որոնք արձակուրդների ընթացքում մեծ եռանդով մասնակցեցին դպրոցի շենքի շինարարության և վերանորոգման աշխատանքներին։ Պարտիական բյուրոյի խորհրդով դպրոցի ԼԿԵՄ կոմիտեն սիստեմատիկաբար, ամիսը մեկ անգամ կազմակերպում է գրական երեկոներ, որոնք խոշոր դաստիարակչական նշանակություն ունեն աշակերտների աշխարհայացքի ձևավորման համար։ Այդ երեկոներից վերջինը նվիրված էր «Երիտասարդության սխրագործությունների արտացոլումը հայ գրականության մեջ» թեմային, որի քննարկմանը ակտիվ կերպով մասնակցեցին բարձր դասարանների կոմերիտականներն ու աշակերտները։

Ստալինի անվան միջնակարգ դպրոցի դիրեկցիան, պարտիական կազմակերպությունը խիստ պահանջկոտ են ո՛չ միայն աշակերտների ուսման և դաստիարակության, այլև ուսուցիչների մանկավարժական և քաղաքական գիտելիքների բարձրացման նկատմամբ։ Պարտիայի շրջկոմի ցուցումով պարտիական լուսավորության անցյալ ուսումնական տարում դպրոցի բոլոր ուսուցիչներն ընդգրկված էին ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրող սեմինարում (սեմինարավար Հ. Տոնոյան), որը հաջողությամբ ավարտեց իր դասընթացը և համարվում էր օրինակելի սեմինարներից մեկը շրջանում։

Բազմազան է ու բովանդակալից նաև Վարդաբլուրի միջնակարգ դպրոցի պարտիական կազմակերպության աշխատանքը (քարտուղար Ռ. Գրիգորյան)։ Նա հատուկ ուշադրություն է հատկացնում ուսուցման և աշխատանքային դաստիարակության միջև սերտ կապ ստեղծելու հարցին։ Դպրոցում չկար ո՛չ ուսումնական արհեստանոց, ո՛չ ուսումնա-արտադրական տեղամաս։ Կոմունիստները հավաքվեցին պարտիական ժողովի, որը քննարկելու էր «Կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու մասին» պարտիայի և կառավարության որոշման կենսագործման խնդիրը։ Դա 1959 թվականի սկիզբն էր. այդ հարցի լավ նախապատրաստման և անցկացման համար պարտիական կազմակերպությանը օգնեցին պարտշրջկոմի աշխատողները։ Ժողովի որոշման կենսագործման շնորհիվ դպրոցում ստեղծվեցին ուսումնական արհեստանոց, թռչնանոց, ճագարանոց. ուսումնա-արտադրական աշխատանքների համար կոլտնտեսության վարչությունը հատկացրեց մի քանի հեկտար հողամաս։

Պարտիական կազմակերպության աչքից այստեղ գրեթե ոչ մի հարց չի վրիպում, հատկապես ուսուցման հարցերը։ Նա անմիջապես միջոցներ է ձեռնարկում թերությունների վերացման ուղղությամբ. բերենք մի օրինակ. պարտիական կազմակերպության առաջադրանքով ստուգվեց աշակերտներին զանազան հանձնարարություններով ծանրաբեռնելու հարցը։ Պարզվեց, որ շատ աշակերտներ ունեն նույնիսկ 4—5 հանձնարարություն, որն անշուշտ բացասաբար է անդրադառնում նրանց ուսման առաջադիմության վրա։ Այս հարցը կարգավորվեց. աշակերտները բեռնաթափվեցին մի քանի հասարակական հանձնարարություններից։

Պարտիական կազմակերպությունը սիստեմատիկորեն հոգում է ետ մնացող աշակերտների մասին, նրանց համար կազմակերպում օգնություն ուսման առաջավոր կոմերիտականների միջոցով, հաճախակի լսում դասղեկների, ուսուցիչների ինֆորմացիան՝ առարկաների դասավանդման որակի, ավագ ջոկատավարի ինֆորմացիան՝ պիոներական աշխատանքների մասին և այլն։

Վերը հիշված դպրոցների պարտիական կազմակերպությունների աշխատանքը ցույց է տալիս, թե ինչպիսի վիթխարի նշանակություն ունի ավելի

մոտիկից ուսումնա-դաստիարակչական հարցերով զբաղվելը, թե ինչպիսի մեծ օգնություն է դպրոցի դիրեկցիային այս կամ այն հարցի բազմակողմանի քննարկումը պարտիական ժողովներում։

Ինչ խոսք, դպրոցական պարտիական կազմակերպությունների առկայության դեպքում անհամեմատ հեշտանում է շրջանային կոմիտեի ղեկավարությունը դպրոցներին. այս դեպքում սկզբնական կազմակերպության քարտուղարը սերտ կապված լինելով շրջկոմի հետ՝ կարողանում է ավելի արագ կողմնորոշվել այս կամ այն հարցում։ Իսկ եթե դպրոցներում չկա պարտիական կազմակերպություն, ապա այս դեպքում շրջանային կոմիտեի աշխատողներից պահանջվում է ավելի շատ լինել այդ դպրոցներում։

Շատ ճիշտ է վարվում պարտիայի Ստեփանավանի շրջկոմը, երբ պարբերաբար քննարկում է ուսումնա-դաստիարակչական աշխատանքների վիճակը այս կամ այն դպրոցում։ 1959—60 ուսումնական տարում շրջկոմը քննարկել է Գյուլագարակի, Ստեփանավանի բաներիտ և Ագարակի գյուղերիտ, Ուռուտի, Կաթնաղբյուրի և այլ դպրոցների աշխատանքների վերաբերյալ հարցեր։ Շրջկոմի բյուրոն, հատկապես, լուրջ թերություններ արձանագրեց, երբ 1959 թվականի հունվարին քննարկեց ուսումնա-դաստիարակչական աշխատանքի վիճակը Գյուլագարակի միջնակարգ դպրոցում։ Վերջինիս դիրեկցիան ինքնահոսի էր մատնել դպրոցի ղեկավարությունը, չէր ապահովել ուսուցչական կոլեկտիվի միասնական աշխատանքը, վատ էր կարգապահության և ուսման վիճակը, երեխաների աշխատանքային դաստիարակության համար չէին օգտագործվել գյուղում եղած հնարավորությունները։ Դպրոցի դիրեկցիան առարկայական հանձնաժողովների աշխատանքը ամբողջովին չէր ուղղել ուսուցիչների մեթոդամանկավարժական գիտելիքների մակարդակի բարձրացման և առարկաների դասավանդման որակի բարելավման նպատակին։ Շրջանային կոմիտեի բյուրոն նշեց կոնկրետ միջոցառումներ, որոնց կենսագործման շնորհիվ այժմ զգալի չափով բարելավվել է աշխատանքը Գյուլագարակի միջնակարգ դպրոցում։

Սակայն այդ դպրոցում աշխատանքներն ավելի լավ կլինեին, եթե այնտեղ լիներ պարտիական կազմակերպություն, եթե դպրոցի աշխատանքներով զբաղվեին հենց իրենք՝ ուսուցիչ կոմունիստները, որոնց հիմնական աշխատանքի տեղամասը դպրոցն է և ոչ թե կոլտնտեսությունը, որի պարտկազմակերպության հաշվառման մեջ գտնվում են նրանք։

Խոսք անգամ չի կարող լինել, որ դպրոցն ունի իր սպեցիֆիկ խնդիրները, որոնք պահանջում են լուրջ ուշադրություն։ Հասկանալի է, որ Գյուլագարակի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունն ի վիճակի չի լինի բազմակողմանիորեն զբաղվելու դպրոցի հետ կապված բոլոր հարցերով, ինչպես զբաղվում են Վարդաբլուրի, Կուրթանի, Ստալինի անվան և այլ դպրոցների պարտիական կազմակերպությունները։

Այս առումով նպատակահարմար է առաջ քաշել Գյուլագարակի, Ագարակի, Ուռուտի և Կաթնաղբյուրի միջնակարգ դպրոցներում պարտիական կազմակերպություններ ստեղծելու խնդիրը, քանի որ այդ դպրոցներում կան 9—10 պարտանդամներ։ Այդքան պարտանդամ ունեցող պարտիական կազմակերպությունները լիովին ընդունակ են լուծելու դպրոցների առջև կանգնած խնդիրները։

Դպրոցի նկատմամբ պարտիայի Ստեփանավանի շրջկոմի ցուցաբերած հոգատարության մասին է վկայում այն, որ դպրոցի վերակառուցման սկզբից



ևեթ նա պարտավորեցրեց կոլտնտեսությունների վարչություններին և սկզբնական պարտիական կազմակերպություններին՝ ամեն կերպ օգնել դպրոցներին աշակերտների ուսումնա-դաստիարակչական աշխատանքները լավագույն ձևով կազմակերպելու գործում։ Այժմ շրջանի բոլոր հանրակրթական դպրոցներն ունեն ուսումնափորձնական հողամասեր։ 1959 թվականին շրջանի Կուրթանի, Ուռուտի, Ագարակի, Լեջանի, Վարդաբլուրի, Սվերդլովի, Կիրովի և մյուս գյուղերի դպրոցները Ռյազանի մարզի առաջավոր դպրոցների օրինակով իրենց հատկացված հողամասերին հատուկ ձև տվեցին, պատրաստեցին ծառուղիներ գեղեցիկ բաժանվածությամբ։ Շրջանի բոլոր գյուղերի դպրոցների ուսումնափորձնական հողամասերն ունեն իրենց պտղատու այգիները, իսկ Կուրթանի և Կիրովի դպրոցների հողամասերում կան նաև տնկարաններ։

Հողամասերում աշակերտների կատարած աշխատանքը մեծ չափով նպաստում է բուսաբանության առարկայի ծրագրային նյութի յուրացմանը և աշակերտներին տալիս է պրակտիկ գիտելիքներ։ Գյուղական դպրոցներում փորձնական աշխատանքները ձմռան ամիսներին ևս շարունակելու նպատակով դպրոցամերձ հողամասերում կառուցվել են ջերմոցներ։ Խոշոր աշխատանք է կատարում ուսումնափորձնական հողամասում և, հատկապես, ջերմոցներում Կիրովյի դպրոցը։ Մի քանի տարի առաջ դպրոցին կից եղած ամայի տարածությունը աշակերտների և մանկավարժական կոլեկտիվի համառ ջանքերով մշակվեց, մաքրվեց և ցանկապատվեց։ Ձմեռվա ամիսներին ջերմոցներում կարելի է տեսնել վարունգ, պոմիդոր, սոխ և այլն։ Հողամասերում կատարվող ուսումնափորձնական աշխատանքները ղեկավարում են մասնագիտական կրթություն ունեցող ուսուցիչներ. աչքի է ընկնում, հատկապես, Կուրթանի դպրոցի հողամասի աշխատանքները գլխավորող գյուղատնտես Ռիմա Գալստյանը։

Ուսումնա-արտադրական հողամասերից բացի դպրոցներում պրակտիկ աշխատանքներ կազմակերպելու համար ստեղծվեցին նաև ուսումնական տնտեսություններ։ Բոլոր դպրոցներում մեղվաբուծությունը, ճագարաբուծությունը և թռչնաբուծությունը դարձել են աշակերտների զբաղմունքի առարկան. շրջանի բոլոր գյուղական դպրոցներն ունեն 2—5 մեղվաընտանիք։ Անցյալ ուսումնական տարում մեղվաբուծական արտադրական խմբակներում ընդգրկված են եղել 240, ճագարաբուծականում՝ 218, իսկ թռչնաբուծականում՝ 326 աշակերտներ, որոնք ստացել են մեծ եկամուտ։ Կույբիշևի յոթնամյա դպրոցը 1960 թվականի հունվարից մինչև այսօր ստացել և պետությանն է հանձնել 8600 ձու, Կիրովյի դպրոցը՝ 7900, Ագարակինը՝ 5000, Պուշկինոյինը՝ 6800 և այլն։

Աշակերտների աշխատանքային դաստիարակությունը բարելավելու, կոլտնտեսային աշխատանքի հանդեպ սեր պատվաստելու նպատակով շրջանի շատ դպրոցներում կազմակերպված են արտադրական բրիգադներ։ Իր գործունեությամբ առաջավոր տեղ է գրավում Կուրթանի միջնակարգ դպրոցի արտադրական բրիգադը։ Կոլտնտեսության վարչությունը և պարտիական կազմակերպությունը բոլոր հնարավորություններն ստեղծեցին բրիգադայի աշխատանքները հաջող կազմակերպելու համար։ Այս, ինչպես և անցյալ տարի նա մշակեց մի քանի հեկտար կարտոֆիլ, ճակնդեղ, 15 հեկտար եգիպտացորեն և այլն։ Դպրոցների արտադրական բրիգադների միջև ծավալվեց սոցիալիստական մրցություն. մրցող բրիգադներն ամիսը մեկ անգամ հավաքվում էին դաշտում և քննարկում վերցրած պարտավորությունների կատարման ընթացքը։ Հավաքույթները հետաքրքիր էին անցնում, կազմակերպվում էին ցերե-

կույթներ, որոնք մեծ բավականություն էին պատճառում մասնակիցներին։

Աշակերտների աշխատանքային դաստիարակության կազմակերպման բնագավառում, անշուշտ, լուրջ քայլեր են արված Ստեփանավանի դպրոցներում։ Մեծ հոգատարություն է ցուցաբերում շրջսովետի ժողկրթության բաժինը (բաժնի վարիչ Մ. Մանասյան) աշակերտներին կայուն գիտելիքներ տալու գործի նկատմամբ։ Այս նպատակով էլ ժողկրթբաժնի աշխատողները հաճախակի լինում են դպրոցներում և կոնկրետ օգնություն կազմակերպում ուսուցիչներին, իրենց խելացի խորհուրդներով նպաստում ուսման որակի բարձրացմանը։

Այս գործում չափազանց կարևոր է առաջավոր ուսուցչի փորձի տարածման հարցը։ Անցյալ ուսումնական տարվա ընթացքում ուսումնասիրվել և ընդհանրացվել է Ագարակի դպրոցի դիրեկտոր Ս. Թունյանի, Ուռուտի ուսմասվար Տ. Էլոյանի, 6 ուսուցչի և 8 դասղեկի աշխատանքի առաջավոր փորձը։ Առաջավոր ուսուցչի փորձի տարածման լավագույն ձևերից է մանկավարժական ընթերցումների կազմակերպումը։ Անցյալ ուսումնական տարում շրջանի 349 ուսուցիչներից 198-ը հանդես եկան շրջանային, 98-ը ռեսպուբլիկական ընթերցումների ժամանակ։ Անցյալ ուսումնական տարում ամփոփվեց լեզվի և գրականության դասատուներ Տ. Էլոյանի և Ս. Վերմիշյանի գրական տեքստի վրա տարվող աշխատանքի առաջավոր փորձը։

Չնայած այս ամենին շրջանի առանձին դպրոցներում դեռևս հանդիպում ենք անորակ դասավանդման, աշակերտների նկատմամբ ոչ պահանջկոտ վերաբերմունքի, նրանց ուսման և դաստիարակության թերագնահատման և այլ փաստերի։ Անբավարար է, օրինակ, լեզվի և գրականության դասավանդման դրվածքը Արմանիսի, Կողեսի, Սվերդլովի, Լ. Բերդի, Գյուլագարակի և այլ դպրոցներում, ուր 4—7-րդ դասարանների աշակերտների գիտելիքները շատ ցածր են, վատ են զարգացած ինքնուրույն ստեղծագործական ունակությունները։ Նրանք դժվարանում են խոսել գրական լեզվով, ճիշտ կառուցել նախադասությունները, որովհետև աղքատ է նրանց բառապաշարը։ Չի կարելի այս կապակցությամբ չնշել նաև այն, որ ֆիզիկայի դասատուներ Ա. Հովսեփյանը, Մ. Ջալինյանը (Լեջանի միջնակարգ դպրոց), Ս. Գագիկյանը (Ագարակի միջնակարգ դպրոց), Ա. Մարտիրոսյանը (Կաթնաղբյուրի միջնակարգ դպրոց) իրենց հնարավորությունների չափ չեն աշխատում, դասի պրոցեսում սերտ կապ չեն ստեղծում տեսականի և գործնականի միջև, աշակերտները վատ են յուրացնում ծրագրային նյութը, լավ չեն ճանաչում այս կամ այն գործիքը, ինքնուրույն չեն կարողանում դեմոնստրացիաներ և լաբորատոր աշխատանքներ կատարել, դժվարանում են խնդիրների լուծման մեջ։ Մի քանի դպրոցներում վատ է նաև թվաբանության դասավանդումը (Լ. Բերդ, Արմանիս)։

Հայտնի է, որ աշակերտների աշխարհայացքի ձևավորման համար վճռական նշանակություն ունեն պատմությունը, գրականությունը։ Այս առարկաների դասատուներից պահանջվում է լինել բազմակողմանիորեն զարգացած, կրթված մանկավարժներ։ Դասավանդման պրոցեսը պետք է այնպես կազմակերպվի, որ աշակերտները կարողանան ճիշտ կողմնորոշվել մեր պարտիայի քաղաքականության հարցերում, պարզ պատկերացում ունենան մեր հասարակարգի առօրյա խնդիրների, սովետական ժողովրդի աշխատանքային սխրագործությունների մասին։ Ինչպե՞ս կարելի է հաջողությամբ դասավանդել պատմությունը, երբ ավանդողը կտրված է կենտրոնական թերթերից և ժուռ-



նալներից։ Նման փաստեր կարելի է բերել Արմանիսի, Գյուլագարակի և այլ դպրոցների կյանքից։ Այդ է պատճառը, որ աշակերտների մտահորիզոնը սահմանափակ է։ Շրջանի գյուղական դպրոցների աշակերտների մի մասը թերագնահատում է աշխատանքը կոլտնտեսային արտադրության մեջ, որի պատճառներից մեկն էլ դպրոցական կոմերիտական կազմակերպությունների անբավարար աշխատանքն է։

Գրականության դասն այն կարևորագույն գործոններից է, որը վճռական ազդեցություն է թողնում աշակերտի հոգեկան աշխարհի վրա։ Ուստի այդ առարկան դասավանդողը պետք է կարողանա իր անձնական օրինակով պատվաստել աշակերտներին լավագույն գծեր, պատվաստել ճիշտ վերաբերմունք սիրո, ամուսնության, ընտանիքի և երջանկության նկատմամբ։ Իհարկե, համեմատաբար հեշտ է աշակերտներին սովորեցնել ճիշտ գրել, վճռել խնդիրներ, կարդալ քարտեզը և այլն, բայց խոսել կոմունիստական բարոյականության մասին, հաշվի առնելով նրանց տարիքը, որպեսզի խոսքերը իզուր չանցնեն, շատ ավելի դժվար է։ Դրա համար ուսուցիչը պետք է վայելի աշակերտների սերն ու հարգանքը։ Անհրաժեշտ են ուսուցչի և աշակերտի այնպիսի հարաբերություններ, որոնք նպաստեն թե՛ մեկի և թե մյուսի հոգեկան հարստացմանը։ Այս ուղղությամբ Ստեփանավանի շրջանում զգալի գործ է կատարված։ Մի շարք դպրոցներում տրադիցիա է դարձել գրական երեկոների, դիսպուտների անցկացումը։ Դա կարևոր նախաձեռնություն է և խրախուսելի։ Սակայն այդ երեկոները պետք է այնպես կազմակերպել և անցկացնել, որ նրանք նպաստեն աշակերտների ճիշտ դաստիարակությանը, պրակտիկորեն ճիշտ կիրառելու կոմունիստական բարոյականության նորմերը։

Ստեփանավանի շրջանի դպրոցական կյանքի լուրջ թերություններից է աշակերտների երկտարեցիությունը։ Կարելի է նշել նաև այլ բացեր, որոնց մասին խոսվեց ուսուցիչների շրջանային կոնֆերանսում։ Առանձին դպրոցների (Վարդաբլուր, Պուշկինո) շինարարությունն ընթանում է դանդաղ. մինչև այժմ էլ ձգձգվում են շրջկենտրոնի ռուսական միջնակարգ դպրոցի նոր շենքի նախագծային աշխատանքները։ Այս խնդիրների լուծման գործում շրջանային կազմակերպություններին օգնության պետք է գան Լուսավորության և Շինարարության մինիստրությունները։

Վերևում նշված փաստերը վկայում են, որ ՀԿՊ Ստեփանավանի շրջկոմի կողմից ժողովրդական կրթության օրգաններին ցույց տրվող ղեկավարության դրական կողմերի հետ միասին դեռևս կան մի շարք չլուծված խնդիրներ և բացեր։

ՀԿՊ Ստեփանավանի շրջկոմից այսուհետև պահանջվում է ավելի լարված աշխատանք դպրոցական բնագավառում։

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՀՐԱՀԱՆԳԻՉԸ

## Վ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՀԿՊ Ղափանի շրջկոմի քարտուղար

*Պարտիան ուսուցանում է, որ չի կարելի տնտեսական լուրջ հաջողությունների հասնել առանց քաղաքական ու կազմակերպական աշխատանքի մակարդակի բարձրացման, առանց մասսաների հետ սերտ և գործնական շփում ունենալու: Այս գործում վճռական է սկզբնական պարտիական կազմակերպությունների դերը: Հրահանգիչն այն օղակն է, որի միջոցով շրջկոմը կապվում է սկզբնական կազմակերպության, աշխատավորության լայն զանգվածների հետ, ժամանակին ապահովում է վերադաս օրգանների և սեփական որոշումների կատարումը:*

*Որպեսզի ամուր լինի շրջկոմի կապը սկզբնական պարտկազմակերպությունների հետ, առաջին հերթին պետք է պատշաճ ուշադրություն նվիրել հրահանգչական խմբի ընտրությանը, դաստիարակությանը և նրա հետ կատարվող աշխատանքին: Ղափանի պարտշրջկոմն այդպես էլ անում է: Նա իր աշխատանքում հենվում է ինչպես հաստիքային, այնպես էլ արտահաստիքային հրահանգիչների վրա: Հրահանգչի ընտրությունը կատարելիս շրջկոմը հաշվի է առնում նրա անցած աշխատանքային ուղին, գիտելիքներն ու փորձը, սկզբունքայնությունը, մասսաների հետ աշխատանք կատարելու ունակությունը: Ղեկավարվելով այս սկզբունքով, պարտշրջկոմը վերջին տարիներին և, մասնավորապես, պարտիայի XX համագումարից հետո բարելավել է հրահանգիչների ընտրության ու դաստիարակության գործը, նրանց հետ կատարվող աշխատանքը: Եթե պարտիայի XX համագումարի պահին շրջկոմի հրահանգիչների կազմում կար բարձրագույն կրթություն ունեցող մեկ, միջնակարգ կրթություն՝ 5, պարտիական դպրոցն ավարտած 2 մարդ, ապա այժմ կա բարձրագույն կրթությամբ 5, միջնակարգ կրթությամբ՝ 3, պարտիական դպրոցն ավարտած՝ 4 մարդ: Հրահանգիչների մեջ կան տնտեսագետներ, գյուղատնտեսներ, պարտիական, սովետական աշխատանքի փորձ ունեցողներ:*

*Հենրիկ Բաղդասարյանը սկզբում աշխատում էր որպես կոշկակար, իսկ Երևանի Գյուղատնտեսական ինստիտուտն ավարտելուց հետո՝ գյուղատնտես: Այնուհետև Բաղդասարյանն ընտրվում է ՀԼԿԵՄ շրջկոմի քարտուղար, որից հետո առաջադրվում է ՀԿՊ շրջանային կոմիտեի հրահանգիչ: Այժմ նա սպասարկում է 5 կոլտնտեսային սկզբնական պարտկազմակերպություն:*

*Վարոս Հակոբյանը շարքային կոլտնտեսական էր Ծավ գյուղում: Նա իր բարեխիղճ աշխատանքով և ակտիվությամբ արժանացավ կոմունիստների վստահությանը և ընտրվեց կոլտնտեսային սկզբնական պարտկազմակերպության*



*քարտուղար, որից հետո սովորեց և ավարտեց ՀԿՊ Կենտկոմին կից եռամյա պարտիական դպրոցը և աշխատանքի անցավ շրջկոմում որպես հրահանգիչ: Այժմ նա հեռակայում է ՍՄԿՊ Կենտկոմին կից բարձրագույն պարտիական դպրոցին: Նույնը կարելի է ասել շրջկոմի հրահանգիչներ Հ. Հարությունյանի, Վ. Միքայելյանի և մյուսների մասին:*

*Սակայն հրահանգչի ընտրությունը գործի սկիզբն է: Խնդիրն այն է, թե ինչպիսի աշխատանք է տարվում հրահանգիչների հետ, ինչպես է շրջկոմը նրանց միջոցով ուժեղացնում կապը սկզբնական պարտկազմակերպությունների հետ, ապահովում պարտիայի ու կառավարության որոշումների կատարումը: Այդ տեսակետից կարևոր նշանակություն ունի շրջկոմի հրահանգիչների հրահանգավորումը, նրանց հաճախակի հանձնարարություններ տալը, պարտիական- կազմակերպչական և պարտիական-քաղաքական աշխատանքի ձևերին ու մեթոդներին ծանոթացնելը: Որպես պրակտիկա շրջանային կոմիտեում սիստեմատիկաբար տեղի են ունենում հրահանգիչների խորհրդակցություններ: Օրինակ, հրահանգիչների համար կազմակերպվել են զրույցներ՝ «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» ՍՄԿՊ Կենտկոմի որոշման, էկոնոմիկական զանազան հարցերի, պարտիական ժողովների նախապատրաստման ու անցկացման գործում շրջկոմի հրահանգչի անելիքների և այլ հարցերի շուրջ: Որպես կանոն շրջկոմի հրահանգիչները միշտ մասնակցում են պարտիական կազմակերպությունների քարտուղարների և պրոպագանդիստների սեմինարներին:*

*Հրահանգչական աշխատանքին շատ է օգնում շրջանային կոմիտեի աշխատողների խորհրդակցությունում հրահանգչի ինֆորմացիան իր գործունեության մասին: Դա հնարավորություն է տալիս իմանալու, թե հրահանգիչը ինչպե՞ս է աշխատում և ի՞նչ օգնության կարիք է զգում: Բացի այդ, շրջկոմի հրահանգիչների հետ զրույցներ են ունենում շրջկոմի քարտուղարները, և դա օգնում է հարցերը լուծել առանց ձգձգումների: Այսպես, շրջկոմի հրահանգիչ Ա. Ղազարյանի հետ ունեցած զրույցի ժամանակ պարզվեց, որ նրա սպասարկած պարտիական կազմակերպություններում պարտիական խմբերը լավ չեն գործում: Այդ հարցը նախապատրաստելուց հետո քննարկվեց ապարատի խորհրդակցությունում: Այնուհետև մտցվեց շրջանային կոմիտեի բյուրո, որն այդ մասին կայացրեց գործին օգնող որոշում: Դրանից հետո Ղափանի պղնձահանքային կոմբինատի, «Քաջարանշին» տրեստի, քաղաքի, լեռնահետախուզական գրասենյակի և ուրիշ պարտկազմակերպություններում աշխուժացավ պարտիական խմբի աշխատանքը:*

*Շրջկոմում պրակտիկա է դարձել նաև հրահանգիչների փորձի փոխանակումը: Շրջկոմի ապարատի վերջին խորհրդակցություններից մեկում շրջկոմի հրահանգիչ Հ. Բաղդասարյանը պատմեց, թե ինքն ինչպես է օգնում պարտիական կազմակերպություններին՝ մրցության ղեկավարումն ուժեղացնելու և պարտավորությունների կատարումն ապահովելու համար: Հրահանգիչ Գ. Բադալյանը պատմեց, թե ինքն ինչ օգնություն է կազմակերպել սկզբնական կազմակերպություններին պարտշարքերի աճի և երիտասարդ կոմունիստների դաստիարակման գործը լավ կազմակերպելու համար: Մի այլ խորհրդակցությունում իրենց սպասարկած կազմակերպություններին ցույց տրվող օգնության մասին պատմեցին հրահանգիչներ Վ. Հակոբյանը և Ա. Ղազարյանը: Կազմակերպվում են նաև հրահանգիչների փոխայցելություններ: Օրինակ, ան-*

ցած ամիսներին Շիկահողի ենթաշրջանի կոլտնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպություններին սպասարկող հրահանգիչ Վ. Հակոբյանը եղավ Արծվանիկի ենթաշրջանի կոլտնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպություններում, որոնց սպասարկում է հրահանգիչ Հ. Բաղդասարյանը. վերջինս էլ եղավ Վ. Հակոբյանի կողմից սպասարկվող կազմակերպություններում: Նման փոխայցելությունները, փորձի փոխադարձ ուսումնասիրումը մեծ չափով օգնում է հրահանգիչներին՝ ավելի լավ կազմակերպելու իրենց աշխատանքը, ավելի օպերատիվ օգնություն ցույց տալու սկզբնական պարտիական կազմակերպություններին:

Հրահանգիչներին օգնելու համար շրջկոմի քարտուղարները, բաժնի վարիչները նրանց հետ հաճախակի լինում են սկզբնական պարտիական կազմակերպություններում և նրանց հետ միասին նախապատրաստում այս կամ այն հարցը:

Դրանով չի սպառվում հրահանգիչների հետ կատարվող աշխատանքը: Շրջանային կոմիտեն հոգ է տանում նաև այն մասին, որ շրջկոմի հրահանգիչը միշտ զբաղվի իր քաղաքական մակարդակի բարձրացմամբ, մտահորիզոնի ընդլայնմամբ: Պարտիական լուսավորության անցած ուսումնական տարում բոլոր հրահանգիչներն ընդգրկված էին «Միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման պատմություն» ուսումնասիրող սեմինարում, որտեղ նրանք զանազան թեմաների շուրջ («Միջազգային կոմունիստական և բանվորական շարժումը երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին», «Ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակը և սոցիալիստական շինարարության հաջողությունը Չինաստանում», «Կոմունիստական և բանվորական պարտիաների ինֆորմացիոն բյուրոյի ստեղծումը և նրա գործունեությունը», «Պայքար ժամանակակից ռևիզիոնիզմի դեմ» և այլն) հանդես են եկել զեկուցումներով: Պետք է ասել, որ բոլոր հրահանգիչները շրջկոմի դասախոսական և զեկուցողների խմբի անդամներ են և պարբերաբար հանդես են գալիս զեկուցումներով ու դասախոսություններով:

Շրջանային կոմիտեն ամենօրյա աշխատանք կատարելով հրահանգիչների հետ, ուժեղացնում է շրջկոմի օգնությունն ու ղեկավարությունը սկզբնական պարտկազմակերպություններին, բարձրացնում նրանց մարտունակությունը՝ շրջանի առջև դրված խնդիրների հաջող լուծման համար: Փորձը ցույց է տվել, որ շրջկոմի կողմից օպերատիվ ղեկավարության դեպքում հարցերը լուծվում են ժամանակին ու ճիշտ, որից և գործը շահում է: Այսպես, օրինակ, Ժողտընտխորհի Քաջարանի ավտոգրասենյակն ընթացիկ տարվա սկզբից վատ էր աշխատում, չէր կատարում պլանը: Շրջկոմի հրահանգիչ Ա. Ղազարյանը մանրամասն ուսումնասիրեց ավտոգրասենյակի ետ մնալու պատճառը: Պարզվեց, որ պլանի թերակատարման հիմնական պատճառը ոչ թե ավտոդողերի և պահեստային մասերի սակավությունն է, ինչպես ասում են գրասենյակի ղեկավարները, այլ աշխատանքի միանգամայն անբավարար կազմակերպումը: Ինչպես գրասենյակի ղեկավարությունը, այնպես էլ պարտկազմակերպությունն անհրաժեշտ պահանջկոտություն չէին ցուցաբերում ավտովարորդների նկատմամբ, կադրերի հետ տարվող աշխատանքը մատնված էր ինքնահոսի: Շրջկոմի բյուրոն այդ հարցը հատուկ քննության առարկա դարձրեց: Կոնկրետ միջոցառումներ մշակվեցին այդ ուղղությամբ: Դրանից հետո պարտիական կազմակերպությունն ուժեղացրեց գրասենյակի նկատմամբ իր ղեկավարությունը, վա-



րորդների համար կազմակերպվեցին զրույցներ ու զեկուցումներ: Այս կոնկրետ միջոցառումները տվեցին դրական արդյունք: Գրասենյակը սկսեց ոչ միայն կատարել, այլև գերակատարել պլանները:

Պարտիայի շրջանային կոմիտեի, նրա հրահանգիչների գլխավոր խնդիրներից մեկն այն է, որ սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարներն ընտրվեն պարտիայի գործին նվիրված ակտիվ ու եռանդուն մարդիկ:

Հրահանգիչ Ղուլյանի ուսումնասիրությունից պարզվեց, որ Ագարակի և Խնդրանցի կոլտնտեսություններում պարտիական աշխատանքը գտնվում է ցածր մակարդակի վրա: Դրա պատճառը, ինչպես եզրակացրեց ընկ. Ղուլյանը, այն էր, որ պարտկազմակերպությունների քարտուղարների ընտրությունը հաջող չէր կատարված: Նախկին քարտուղարներ Գ. Մարտիրոսյանը և Թ. Բաբայանը ի վիճակի չէին կատարելու իրենց պատասխանատու պարտականությունները, արդարացնելու կոմունիստների վստահությունը: Նրանք կոլտնտեսականների շրջանում բարձր հեղինակություն չէին վայելում, չունեին կոլտնտեսականներին համոզելու և նրանց ուժերը առաջադրված խնդիրների կատարմանն ուղղելու կարողություն: Ավելին, առանձին դեպքում նրանք պարտիական աշխատանքի մեթոդները փոխարինում էին մերկ վարչարարությամբ: Այդ էր պատճառը, որ կոմունիստները նրանց փոխարեն քարտուղար ընտրեցին գործունյա և հեղինակավոր ընկերների՝ Արշավիր Սարգսյանին և Սաշա Խաչատրյանին: Նրանք սկզբնական շրջանում չունեին պարտիական աշխատանքի փորձ, չէին կարողանում պլան կազմել, ժողովները լավ նախապատրաստել: Շրջկոմի հրահանգիչը նրանց սովորեցրեց պարտիական աշխատանքի ձևերն ու մեթոդները, օգնեց աշխատանքը պլանավորելու, ժողովներ նախապատրաստելու, որոշումների կատարման ստուգումը կազմակերպելու և այլ հարցերում: Հրահանգչի կոնկրետ աշխատանքը տվեց իր դրական արդյունքը: Այժմ Ա. Սարգսյանը և Ս. Խաչատրյանը լավագույն քարտուղարներից են. նրանք կարողանում են ժամանակին լուծել կոլտնտեսային արտադրության կարևորագույն հարցեր, օրինակելիորեն վարել պարտիական տնտեսությունը:

Փորձը ցույց է տվել, որ հրահանգիչը որքան շատ է լինում մասսաների շրջանում, խորհրդակցում կոմունիստների, աշխատավորների հետ, այնքան լավ է կարողանում լուծել հարցերը: Բերենք հրահանգիչ Հենրիկ Բաղդասարյանի օրինակը: Նա սերտորեն կապված է իրեն ամրացված սկզբնական կազմակերպությունների հետ, գիտի յուրաքանչյուր կոմունիստի, ճանաչում է բոլոր կթվորուհիներին, անասնապահներին և հաճախակի զրույց է ունենում, խորհրդակցում նրանց հետ: Արծվանիկի կոլտնտեսությունում կթվորուհու պակաս էր զգացվում. երիտասարդ կանայք և աղջիկները հրաժարվում էին ֆերմա գնալուց. գյուղում այն կարծիքը կար, որ կթվորուհու աշխատանքը լավ չի գնահատվում և այլն: Այդ հարցը դարձավ շրջկոմի հրահանգչի գլխավոր հոգսը և նա սկսեց ելք փնտրել:

Ֆերմայում էր աշխատում 55-ամյա կթվորուհի Սաթենիկ Օհանջանյանը: Հրահանգիչ Հ. Բաղդասարյանի նախաձեռնությամբ պարտիական կազմակերպությունը և կոլվարչությունը որոշեցին կազմակերպել կթվորուհու մեծարման երեկո: Այդպես էլ արվեց: Նրան տրվեցին նվերներ, հայտնվեց շնորհակալություն և միաժամանակ որոշվեց մեծահասակության պատճառով ազատել աշխատանքից: Սակայն կթվորուհին խնդրեց իրեն թողնել ֆերմայում: Հենց այդ ժամանակ երեք կոմերիտուհիներ ցանկություն հայտնեցին ֆերմա գնալու՝

որպես կճվորուհի։ Նման նախաձեռնություններ հանդես են բերում և շրջկոմի մյուս հրահանգիչները։

Շրջկոմի հրահանգիչը պետք է լավ կազմակերպիչ լինի, կարողանա մասսաներին մոբիլիզացնել պարտիայի և կառավարության որոշումները կատարելու համար։ Ս. Մ. Կիրովը լավ է ասել, որ հրահանգիչը չունի իր ապարատը, չունի մեքենագրուհի և ոչ էլ սղագրող, և որ մենք դիտմամբ ենք այդ այդպես արել, որպեսզի նա տեղերում կոնկրետ աշխատանք տանի, չծաքնվի թղթի հետևը, որպեսզի թուղթը նրան չխանգարի, ամեն ինչ հրահանգչին տեսանելի լինի և ինքն էլ տեսանելի լինի։

Բացի հաստիքային հրահանգիչներից շրջկոմը հավասարապես աշխատանք է կազմակերպում նաև արտահաստիքային հրահանգիչների հետ, որոնց թիվը հասնում է 8-ի։

Սակայն այս ամենը չի ասում, որ Ղափանի շրջկոմը հրահանգիչների հետ կատարվող աշխատանքում չունի թերություններ։ Շրջկոմի հրահանգչի դերն ու պատասխանատվությունը պետք է ավելի բարձրացվի։ Շրջանային կոմիտեն որոշել է այսուհետև ավելի հաճախ լսել հրահանգիչների ինֆորմացիան կամ զեկուցումը, թե նրանք ինչ փորձ են կուտակել, ինչ դժվարությունների են հանդիպել և ինչպիսի օգնության կարիք են զգում։

Կարևոր հարց է նաև այն, թե ինչպես աճեցնել շրջկոմի հրահանգչին՝ ինքնուրույն աշխատանքի ուղարկելու համար։ Վերջին մեկ տարում մի շարք հրահանգիչներ ուղարկվել են ինքնուրույն աշխատանքի։ Դրանցից են Գ. Պետրոսյանը և Գ. Ղահրամանյանը, որոնք աշխատում են որպես սկզբնական պարտկազմակերպությունների ազատված քարտուղարներ։ Շրջկոմի հրահանգիչներ Ա. Անտոնյանը, Մ. Ծատրյանը, Ժ. Կոստանդյանը, Ա. Մեհտիևը ուղարկվել են տնտեսական պատասխանատու աշխատանքի և բարեխղճորեն են կատարում իրենց պարտականությունները։

Շրջկոմի, նրա հրահանգիչների օգնությամբ շրջանի արդյունաբերության ու տրանսպորտի աշխատողները հաջողությամբ փակելով յոթնամյակի առաջին տարին, 1960 թվականի սկզբից մրցության մեջ մտան ի պատիվ Սովետական Հայաստանի 40-ամյակի և համառ պայքարով ապահովեցին ինմամսյա պլանի կատարումը։ Մեծ չափով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, իջել արտադրանքի ինքնարժեքը։

Ղափանի հանքաշխարհի մարդիկ՝ բանվորները, ծառայողները, ինժեներա-տեխնիկական աշխատողները, շինարարները և տրանսպորտայինները լայն մրցություն են սկսել Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումները անթերի կատարելու, Սովետական Հայաստանի 40-ամյակը արժանավայել դիմավորելու համար։

---

# ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՌԱՍՆԱՄՅԱԿԸ

## ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

### ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՄԵԾ ՋԱՀԱԿԻՐԸ



Վաղ գարնանային մի օր, երբ Կասպից ծովից փչում էր ցուրտ ու աղաբույր քամին, գնացքից Բաքվի կառամատույցն իջավ միջին տարիքի, սրածայր, թուխ, փոքրիկ մորուքով մի մարդ։ Կապույտ ու ջինջ էին նրա աչքերը, բռնկված ներքին մեղմ ու ջերմ կրակով։ Այդ աչքերը արտասովոր հմայք ու գեղեցկություն էին տալիս նրա կիրթ, նուրբ դիմագծերին։ Ճակատը բաց էր, ակնիվ, բանականության կնիքը վրան։

Չնայած մտավորականի արտաքինին, նա քայլում էր զինվորի ու զորավարի պես, քայլում խրոխտ, առնական։

Նոր էր նա ոտքը դրել կառամատույց, երբ այնտեղ հավաքված բանվորական հոծ խմբերը որոտացին.

— Կեցցե՛ ընկեր Շահումյանը։

— Կեցցե՛ ազատությունը։

— Կեցցե՛ կոմունիզմը։

1917 թվականի մարտ ամիսն էր դա։ Երկրում նոր էին լռել փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի որոտները։ Շահումյանը գալիս էր աքսորից, Սարատովից։ Ամբողջ ճանապարհը նա անցել էր զինվորներով, գյուղացիներով, նավաստիներով լիքը լցված գնացքների ծխոտ, աղմկալի վագոններով, ամբողջ ճանապարհին զրուցել նրանց հետ, հաղորդակից դարձել նրանց մտքերին, կյանքին, խոհերին։

Երբ գնացքը մոտենում էր Բաքվին, բազմաթիվ հուշեր արթնացան նրա մեջ, հուշեր՝ կապված այդ բանվորական քաղաքի և իր անցյալի հետ։ Նա հիշեց նաև Թիֆլիսը, ռեալական դպրոցը, հիշեց Ջալալօղլին, ուր ինքը կազմակերպեց մարքսիստական խմբակ, որ առաջինն էր Հայաստանում։ Հետո հիշեց Ռիգայի պոլիտեխնիկական ինստիտուտը, որտեղից հեռացվեց ռևոլյուցիոն գործունեության համար։ Պայքարի օրեր եկան, ընդվզման օրեր... բոլշևիկյան թերթեր, համագումարներ, կոնֆերանսներ...

Բայց մի հիշողություն ամենից պայծառն էր ու գեղեցիկը... Ժնևում էր դա։ Այնտեղ ծանոթացավ մի մարդու հետ, որ անջնջելի հետք թողեց իր սրտում, իր կյանքում, մի մարդ, որին նա սիրեց ամբողջ հոգով, հարգեց անսահմանորեն։

Այժմ այդ մարդու անունը թնդում է անծայրածիր Ռուսաստանով մեկ։

Լենին է այդ անունը։

Նա վերհիշեց իր հանդիպումները Լենինի հետ, Նադեժդա Կոնստանտինովնայի այնքան բարի ու հոգատար հյուրընկալությունը... հիշեց երկար տարիների իր նամակագրությունը Լենինի հետ, ու սիրտը լցվեց անսահման մի կարոտով, նրան նորից տեսնելու ցանկությամբ։

Սակայն մի խոսակցություն, որ գնում էր իր կողքին նստած սպայի ու կնոջ միջև, ընդհատեց նրա մտքերի թելը։

— Ի՞նչ վիճակ է այժմ Բաքվում, չգիտե՞ք, կարելի՞ է արդյոք այնտեղ հանգիստ ապրել,— հարցնում էր կինը սպային։

— Չգիտեմ, տիկին,— պատասխանում էր ըսպան,— միայն գիտեմ, որ Բաքվի Սովետի նախագահ են ընտրել մի բոլշևիկի՝ Ստեփան Շահումյանին, այն էլ նրա բացակայությամբ, այն էլ այն դեպքում, երբ բոլշևիկների թիվը քիչ է Բաքվի Սովետում:

— Իսկ ո՞վ է Շահումյանը,— հարցրեց կինը:

— Մի՞թե չեք լսել Շահումյանի մասին, նա Լենինի մերձավորագույն ընկերն է... Բանվորները նրան Կովկասի Լենին են կոչում: Բանվորների սիրելին է նա:

Հավանաբար ապշեցին և՛ սպան, և՛ այդ տիկինը, երբ իջնելով կառամատույց տեսան, թե ի պատիվ իրենց կապտաչյա ուղեկցի բանվորական խմբերն ինչպես գոչեցին.

— Կեցցե՛ ընկեր Շահումյանը:

...Իր մարտական զինակիցների, բանվորական խմբերի հետ քայլեց Շահումյանը դեպի քաղաք:

Նրան ուղեկցող բանվորները ճանապարհին երգում էին.

Անվախ ընկեր, քայլենք շար-շար,
Հոգով կռվում ամրանանք,
Ազատության վեհ ճանապարհ
Հարթենք կրծքով մեկ համար:

Քայլում էին նրանք քաղաքի փողոցով, իսկ հեռվում փռված էր մուգ-կապույտ ծովը, որ փոթորիկ էր գուշակում: Եվ նրանք կարծես քայլում էին դեպի այդ փոթորիկը:

Եվ, հիրավի, Բաքվում սկսվեց Ստեփան Շահումյանի՝ Լենինի մերձավորագույն զինակցի, Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ականավոր գործչի ռևոլյուցիոն գործունեության ամենափոթորկալի շրջանը: Վերադառնալով Բաքու՝ նա իր մարտական ընկերների՝ Ջափարիձեի, Ազիզբեկովի, Ֆիոլետովի, Միկոյանի և ուրիշների հետ անհաշտ պայքար ծավալեց իշխանության գլուխ անցած բուրժուական-նացիոնալիստական պարտիաների դեմ:

...Ամիսներ էին արդեն անցել, ինչ Շահումյանը վերադարձել էր Բաքու: Խիզախ պայքարի ու մաքառումների ամիսներ էին դրանք, որ խոր կնճիռներ էին թողել նրա պայծառ ճակատին, բայց աչքերը շողում էին նույն հանգիստ ու վճռական փայլով:

Մինչև խոր գիշեր Շահումյանի առանձնասենյակում չէր հանգչում լույսը, և մինչև խոր գիշեր այդ առանձնասենյակի դուռը բաց էր բանվորների ու զինվորների, նավաստիների և ամենքի առաջ:

Այժմ էլ նա նստած աշխատում էր: Նա գրում էր Բաքվի ռևոլյուցիոն պաշտպանության Կոմիտեի կոչը՝ ուղղված աշխատավորներին: Դրսում լռություն էր. լսվում էր միայն ծովի հեռավոր ճողփյունը: Քաղաքի ծայրամասերից մեկ-մեկ հրաձգության չարագուշակ սուլոցներ էին գալիս, որոնք խուլ արձագանքում էին ամայի փողոցներում: Ավարտելով կոչը, նա վայր դրեց գրիչը, ընկղմվեց բազկաթոռի մեջ ու կիսափակեց աչքերը:

Դժվար և օրհասական ժամանակներ էին:

Կոնտրռևոլյուցիոն բոլոր ուժերը, մենշևիկներն ու էսեռները, դաշնակցականներն ու մուսավաթականները իրար հետ դաշնակցած, դիմում էին ամեն միջոցի, որպեսզի Անդրկովկասը կտրեն Սովետական Ռուսաստանից և այն դնեն օտարերկրյա կապիտալիստների տրամադրության տակ:

Բայց իր կյանքի բոլոր դժվարին պահերին Ստեփան Շահումյանը հիշում էր Իլյիչին, հիշում նրա վճռականությունը, նրա պողպատե կամքը: Այժմ էլ, հիշելով նրան, նա հանեց Իլյիչից ստացած վերջին նամակն ու կարդաց.

«Թանկագին ընկեր Շահումյան... Մենք հրճվանքի մեջ ենք Ձեր հաստատակամ ու վճռական քաղաքականությունից: Կարողացեք դրան միացնել այն ամենազգույշ դիվանագիտությունը, որն անպայման թելադրվում է այժմյան դժվարագույն դրությամբ, և մենք կհաղթենք:

Դժվարություններն անհաշիվ են, առայժմ մեզ փրկում են միայն իմպերիալիստների հակասությունները, կոնֆլիկտներն ու պայքարը: Կարողացեք օգտագործել այդ կոնֆլիկտները. առայժմ հարկավոր է դիվանագիտություն սովորել:

Լավագույն ողջույններ ու ցանկություններ, և ողջույն բարեկամներին:

Վ. Ի. Լենին»

— Այո՛, անհրաժեշտ է դիվանագիտություն սովորել: Իմաստուն խորհուրդ,— մտածեց Շահումյանը:

Ապա նա հիշեց այն օրերը, երբ ինքը մեկնել էր Սովետների Համառուսական առաջին համագումար, ուր կրկին հանդիպեց իր մեծ բարեկամին՝ Իլյիչին: Հիշեց և փոքր մի դեպք, որը թեթև ժպիտ վառեց նրա կապույտ, պայծառ աչքերում: Երբ ինքը մեկնում էր համագումար, և իր որդին իմացավ, որ այնտեղ հանդիպելու է Լենինին, որոշեց մի նվեր ուղարկել նրան: Նա պատրաստեց կրծքանշան՝ Մարքսի փոքրիկ նկարով: Համագումարից հետո, երբ Վլադիմիր Իլյիչը, Նադեժդա Կոնստանտինովնան և ինքը դուրս էին եկել զբոսնելու, Վլադիմիր Իլյիչին տվեց այդ կրծքանշանը: Մանկական ինչպիսի՜ հրճվանք շողաց Իլյիչի աչքերում...

Հիշեց նա այս դեպքն ու կրկին ժպտաց:

Բայց գիշերային լռության մեջ ինչ-որ ծանր ու հատու ոտնաձայներ լսվեցին ընդունարանից:

Դրան հաջորդեց հերթապահի և այցելուներից մեկի խոսակցությունը:

— Մենք պետք է տեսնենք ընկեր Շահումյանին:



— Այժմ ընդունելության ժամ չէ, բացի այդ նա շատ է հոգնած,— պատասխանեց հերթապահը:

— Մենք ավելի վաղ հնարավորություն չունեինք գալու այստեղ, իսկ գործը շատ է կարևոր:

— Ներեցեք, բայց չեմ կարող թույլ տալ, ասացի, որ նա շատ է հոգնած,— լսվեց նորից հերթապահի ձայնը:

Շահումյանը սեղմեց զանգի կոճակը, և ներս մտավ հերթապահը:

— Լսո՛ւմ եմ, ընկեր Շահումյան:

— Մի՞թե ես ամեն անգամ պետք է հիշեցնեմ, որ երբ և ո՛ր ժամին էլ այցելուներ գան ինձ մոտ, պետք է ընդունել: Ինչպե՞ս կարելի է մարդկանց ետ դարձնել, այն էլ այս ժամին: Խնդրում եմ ներս հրավիրել նրանց:

Ու ներս մտան երեք ադրբեջանցի բանվոր.

— Սալամ, ընկեր Շահումյանին:

— Սալամ, սալամ, նստեցեք: Ինչո՞վ կարող եմ օգտակար լինել:

— Ընկեր Շահումյան, մենք մի կարևոր գործով ենք եկել Ձեզ մոտ: Մենք Բալախանիի բանվորներից ենք և եկել ենք Ձեզ հայտնելու, որ մուսավաթականները և մենշևիկները խռովություն են ուզում բարձրացնել բոլշևիկների դեմ. մենք եկանք զգուշացնելու Ձեզ:

— Շատ շնորհակալ եմ. պատմեք, պատմեք, թեև մենք գիտենք այդ մասին:

Ու նրանք պատմեցին Շահումյանին այն ամենը, ինչ գիտեին նախապատրաստվող խռովության մասին: Ապա նրանցից մեկն ավելացրեց.

— Ընկեր Շահումյան, մենք շատ ենք անհանգստանում Ձե՛զ համար, Խաս Մամեդովը, այդ բեկը ասել է, թե առաջինը Շահումյանին պիտի կախենք ազատության հրապարակում:

— Մի՛ անհանգստացեք, սիրելի բարեկամներ,— ժպտալով ասաց Շահումյանը,— ճիշտ է, վիճակը շատ ծանր է: Սովետական իշխանությունը Բաքվում վտանգի մեջ է, բայց մեզ հետ է բանվորության մեծագույն մասը, և մենք կհաղթենք:

Մարդկային անկրկնելի հմայք ուներ Ստեփան Շահումյանը:

Այդ մասին են պատմում այն բոլոր հիշողությունները, որ գրված են նրա մասին. այդ մասին են պատմում բոլոր այն մարդիկ, որոնք գեթ մեկ անգամ տեսել են նրան:

Շահումյանին հավասարապես սիրել են և՛ հայ բանվորը, և՛ ադրբեջանցի նավթագործը, և՛ ռուսը, և՛ վրացին, սիրել են բոլորը... Նրա գաղափարական հակառակորդներն անգամ չեն համարձակվել բացարձակորեն դուրս գալ նրա դեմ, վախենալով նրա անսահման հեղինակությունից:

Եվ այդ սերն էր անշուշտ, որ կես-գիշերին Բալախանու երեք ադրբեջանցի բանվորներին բերել էր Շահումյանի մոտ, բերել՝ զգուշացնելու, որ վտանգ է սպառնում այդ մեծ, հմայիչ մարդու կյանքին...



Բոլշևիկների բոլոր ջանքերը՝ կանխելու եղբայրասպան կռիվը, ապարդյուն անցան: Բաքվի Սովետը բանակցությունների մեջ մտավ կոնտրռևոլյուցիոն խռովությունը հրահրողների պարագլուխների հետ, բայց հենց բանակցությունների ժամանակ թշնամիները փողոցներում կրակ բացարին կարմիր գվարդիականների վրա: Քաղաքը ծածկվեց խրամատներով: Երեք օր տևեց այդ արյունոտ կռիվը: Շահումյանը իր մարտական զինակիցների հետ հերոսական մարտի տարավ Բաքվի բանվորներին, զինվորներին ու նավաստիներին. գրոհում էին նրանք, ու նրանց վրա ծփում էր ռևոլյուցիայի բոսոր դրոշը:

Երեք օր տևեց այդ օրհասական մարտը, և Բաքվի պրոլետարիատը հաղթանակեց: Այդ հաղթանակը զգալիորեն ամրապնդեց Բաքվի Սովետական իշխանությունը: Ստեղծվեց Ժողովրդական Կոմիսարների Սովետ: Ժողկոմսովետի նախագահ ընտրվեց Ստեփան Շահումյանը: Նա անցավ նաև տնտեսական բուռն գործունեության: Ազգայնացվեցին նավթարդյունաբերությունը, առևտրական նավատորմը, բանկերը, քաղաքային տնտեսությունը:

Բայց Բաքվի Սովետական իշխանությունը շարունակում էր պաշարված մնալ:

Հարավից նրան սպառնում էին մուսավաթականներն ու պարսկական շախսևանները: Հյուսիսից՝ Դաղստանի կոնտրռևոլյուցիան: Արևմուտքից՝ մուսավաթական-մենշևիկյան միավորված ուժերը:

Սակայն այս երեք ուղղություններում էլ Բաքվի հերոսական պրոլետարիատն ու նրա զինված ուժերը մի շարք փայլուն հաղթանակներ տարան: Հարավում նրանք գրավեցին Լենքորանը, հյուսիսում՝ Պետրովսկը, արևմուտքում՝ Հաջիքաբուլը:

Բաքվի պրոլետարիատի հաղթանակները վայրի մոլուցքով էին լցնում նրա բոլոր թշնամիների սիրտը: Անգլիական ու գերմանական իմպերիալիստները նավթի մոտալա բույրից, ասես, խելագար՝ տարբեր կողմերից իրենց ոճրագործ ձեռքերն էին մեկնում դեպի Բաքու: Նրանք ուզում էին ընկճել Բաքուն դավով, մատնությամբ, դավաճանությամբ: Ստոր դավերի ցանց էր հյուսվում Սովետական Բաքվի շուրջը: Բաքուն օղակված էր կրկնակի օղակով — բազմազգույն ու բազմատեսակ թշնամիների և սովի: Այդ օրերին բոցավառ կոչով, հրապարակախոսի հմայիչ ու ազդու խոսքով մասսաներին էր դիմում Շահում-

վանը: Նա կոչ էր անում քշել, արհամարհանքով խարանել կաշառված հուդաներին, բուրժուազիայի ստոր ծառաներին, անգլիացի վարձկաններին, ժողովրդի դավաճաններին... Կոչ էր անում՝ վենքը ձեռքին կանգնել ռևոլյուցիայի դրոշի տակ, պաշտպանել Բաքվի կոմունան:

Սակայն ուժերն անհավասար էին: Բաքվի կոմունան ընկավ:

...Օգոստոսյան իրիկնամուտը ամպամած էր ու մռայլ: Երկինքը սև կամարով իջել էր ծովի վրա, ու սև էին դարձել նաև ջրերը: Այդ սև ջրերի միջով Բաքվի նավահանգստից դեպի ծովը հեռացան 16 շոգենավ: Հերոսական դիմադրությունից հետո Շահումյանն իր մարտական ընկերների հետ Բաքվի Սովետական իշխանությունը ժամանակավորապես տեղափոխեց Աստրախան:

Նավերից մեկի տախտակամածին գլխաբաց, հասարակ, սպիտակ վերնաշապիկը հագին կանգնել էր Ստեփան Շահումյանը: Ծովի սաստկացող ու սառը քամին շոյում էր նրա այրող ճակատը, ծածանում նրա առատ մազերը: Բազմաթիվ ծանր ու մռայլ խոհեր էին փոթորկվում նրա հոգում, սակայն մռայլ խոհերի միջից, ինչպես արևը ամպերի, շողում էր հույսը... «Մենք դեռ կգանք»,— շշնջում էին նրա շուրթերը: Բայց նրանց չհաջողվեց հեռանալ: Ռազմանավերը շրջապատեցին նրանց և ստիպեցին վերադառնալ Բաքու: Դա էսէռների ու մենշևիկների հերթական դավադրությունն էր: Կոմիսարները ձերբակալվեցին:

Այդ օրերին Լենինը գրում էր. «Բաքվի դրությունը ինձ համար այնուամենայնիվ պարզ չէ: Ո՞վ է իշխանության գլուխ կանգնած, որտե՞ղ է Շահումյանը, հարցրեք Ստալինին, և գործեցեք բոլոր հանգամանքների նկատառումով: Դուք գիտեք, որ ես լիովին վստահում եմ Շահումյանին...»:

Այո՛, մեծ Իլյիչը վստահում էր Շահումյանին... Նրան վստահում էր Բաքվի պրոլետարիատը, նրան վստահում էր աշխատավոր ժողովուրդը:

Շահումյանը ռևոլյուցիոն մրրիկների մեջ ծնված ու կոփված խիզախ մարտիկ էր և մարքսիզմի հմուտ տեսաբան. Օրջոնիկիձեի խոսքերով ասած՝ նա մարքսիզմի ծանր հրետանին էր:

Նա իր մեջ մարմնավորում էր հայ ժողովրդի ազատասիրական լավագույն տենչանքներն ու երազանքները: Եվ նա տարավ իր ժողովրդի այդ երազանքները՝ կապելու մեծ և հզոր Ռուսաստանի ռևոլյուցիոն վիթխարի շարժման հետ:

Ռևոլյուցիայի խիզախ ասպետն էր նա և ասպետորեն ընդունեց իր վերջին ժամը:

...Անապատի մռայլ գիշերն էր իջել Կարա-Կումի վրա:

Անգլիացի կապիտան Տիգ-Ջոնսը հրամայեց Բաքվի կոմիսարներին դուրս բերել վագոնից:

Սվիններով շրջապատված՝ նրանք քայլեցին դեպի մոտակա ձորակը: Նրանց շարեցին ձորակի եզրին: Բոլորի առջևում կանգնած էր Շահումյանը՝ ձեռքերը կրծքին խաչած: Նա կանգնած էր հանգիստ, անվրդով, ինչպես լինում էր միշտ, իր ռևոլյուցիոն պարտականությունները կատարելիս:

Նա մի վայրկյան նայեց շուրջը. բոլորն էլ կանգնած էին հանգիստ ու լուռ: Որոտաց համազարկը: Եվ արդեն գնդակը սրտում էր, երբ Շահումյանը գոչեց.

— Մենք մեռնում ենք հանուն կոմունիզմի, կեցցե՛ կոմունիզմը:

...Երևանում աշնանային պայծառ օր է: Քաղաքը վրնգում է ուրախ աղմուկով: Պիոներական զվարթ մի ջոկատ է անցնում փողոցով, քամին ծածանում է նրանց ալ կարմիր փողկապները: Նրանք մի մեծ պսակ են տանում՝ հյուսված թարմ ծաղիկներից: Քայլում է նրանց երթը ու գալիս երևանյան մի փոքրիկ հրապարակ: Այստեղ, գրանիտե պատվանդանին, կանաչ ծառերի ու կապույտ ֆոնի վրա բարձրանում է Շահումյանի արձանը: Կանգնած է նա՝ ձեռքերը կրծքին խաչած, ինչպես գնդակահարության գիշերը: Պիոներները լուռ ու հանդիսավոր մոտենում են ու թարմ պսակը դնում արձանի պատվանդանին:

Երևանում վրնգում է աշնանային պայծառ օրը:

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

# ՊԱՐՏԻԱՅԻ ՀԱՎԱՏԱՐԻՄ ԶԱՎԱԿԸ

1915 թվականին ուսուցիչ Ղևոնդ Խանջյանի ընտանիքն ապաստան գտավ Երևանում: Կոտորած, բռնություն, սարսափ՝ մնացին հետևում... Հետևում մնաց և հայրենի Վանը...

Համաշխարհային պատերազմը դեռևս մոլեգնում էր հեռավոր ճակատներում: Դեռ ամբողջ երկու տարի պետք է անցներ, որպեսզի 1917 թվականի հոկտեմբերին պայթեր ռևոլյուցիան, գար «փոթորկով գոտևորված» նոր դեմոկրատիան և հին Ռուսաստանի կեղտն ու գարշանքը սրբեր: Իսկ առայժմ պատերազմ էր: Մարդկության ծաղիկը՝ երիտասարդությունը, տարիներով նստած էր խրամատներում. կռվում էր, սպասում, մեռնում... Աշխարհը կանգնած էր համաշխարհային-պատմական իրադարձությունների նախաշեմին:

Տագնապալից այդ օրերին, ահա, Ղևոնդ Խանջյանը հաստատվեց Երևանում՝ ռուսական կայսրության գավառական այդ գորշ քաղաքում: Որդին՝ տասնհինգամյա Աղասին, սկսեց հաճախել թեմական դպրոց՝ կիսատ մնացած ուսումը շարունակելու:



Պատանի Խանջյանի համար դրանք լինելիության տարիներ էին և նա անհագուրդ մղումով ընթերցում էր բազմաթիվ գրքեր: Այդ կիրքը նա պահպանեց իր ողջ կյանքի ընթացքում: Այո՛, նա բացառիկ գրասեր էր և ուսման մեջ ակնառու:

Այդ տարիներին երկիրը տոգորված էր վերահաս ռևոլյուցիայի գաղափարներով: Երևանում գործող ընդհատակյա բոլշևիկյան խմբակը շուտով Խանջյանին ներգրավեց քաղաքական պայքարի հորձանուտը:

Յուրաքանչյուր մարդու կյանքում լինում են տարեթվեր կամ պահեր, երբ նա ինքն իրեն և ուրիշներին լռելյայն հավատարմության երդում է տալիս: Աղասի Խանջյանի համար այդպիսի բախտորոշ տարեթիվ եղավ 1917 թվականի մարտ ամիսը, երբ նա ընդունվեց Կոմունիստական պարտիայի շարքերը:

Սկսվեց աշխատանքը երիտասարդության շրջանում: Անհրաժեշտ էր գաղափարապես ջախջախել դաշնակցությանը և մյուս բուրժուանացիոնալիստական պարտիաներին, որոնք տասնամյակներ շարունակ թունավորել էին հայ իրականությունը. անհրաժեշտ էր երիտասարդ սերնդին խլել քաղքենիական-տիրացուական ճահճից և դուրս բերել քաղաքական-դասակարգային պայքարի լայն ճանապարհ: Կռվի նետվեցին երիտասարդները՝ Ղուկաս Ղուկասյան, Ալեքսանդր Իսահակյան, Լիպարիտ Աթարբեկյան, Աղասի Խանջյան... Գիտելիքների թերին լրացվում էր պատանեկան կրակով, փորձի պակասը՝ գործի արդարացիության ջերմ հավատով, անձնուրացությամբ:

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախօրյակին նրանց ջանքերով Երևանում ստեղծվեց երիտասարդ մարքսիստ ինտերնացիոնալիստների միություն, իսկ 1919 թվականի ապրիլին Ղ. Ղուկասյանի, Ա. Խանջյանի և Ա. Բուդաղյանի անմիջական ղեկավարությամբ ծնունդ առավ երիտասարդ կոմունիստների «Սպարտակ» կազմակերպությունը: Պարտիայի ղեկավարությամբ պայքարի էր մտնում երիտասարդ կոմունիստների սերունդը:

1919 թվականին Խանջյանը, ինն ուրիշ ընկերների հետ ձերբակալվեց և երկու ամսով բանտ

նետվեց. առաջին լուրջ փորձությունը՝ բանտային կյանքի «դպրոցը», որտեղից նա դուրս եկավ պայքարը շարունակելու աներեր վճռականությամբ:

Սկսվեց Հայաստանի աշխատավորության մայիսմեկյան ցույցերի և մայիսյան պինված ապստամբության նախապատրաստությունը: ՌԿ(բ) պարտիայի Հայաստանի կոմիտեի հանձնարարությամբ Խանջյանը շրջում է երկրի տարբեր վայրերը, ջանալով պարտիական ուժերը համախմբել և գաղափարապես կոփել մոտալուտ մարտերի համար:

Չնայած դաշնակցության ռեպրեսիաներին ու տեռորին, մայիսմեկյան ցույցերը վիթխարի թափ ստացան Երևանում և Հայաստանի այլ քաղաքներում ու շրջաններում: Տասնյակ հազարավոր բանվորներ, պինվորներ ու գյուղացիներ արձագանքեցին բոլշևիկյան պարտիայի կոչին և փողոց դուրս եկան ռևոլյուցիոն լոզունգներով: Մայիսմեկյան ցույցերը վերածվեցին պինված ապստամբության, որն ընդգրկեց գրեթե ամբողջ Հայաստանը:

Սակայն դաշնակներին հաջողվեց իմպերիալիստների օգնությամբ ճնշել ապստամբությունը և արյունալի դատաստան տեսնել նրա ղեկավարների հետ:

Աղասի Խանջյանը ևս դատապարտվեց տասը տարվա տաժանակրության: Պարտությունը ցնցել էր նրան, բայց ոչ վհատեցրել: Նա վարպետ կոնսպիրատոր էր: Գնալով նրա կապերն ավելի ու ավելի էին ամրապնդվում դրսի պարտիական ընկերների հետ: Քսան թվականի ամռանը նա ընտրվում է Հայաստանի բանվորա-գյուղացիական երիտասարդության Կենտրոնական կապմբյուրոյի անդամ:

Դաշնակցությունը վերջնականապես սնանկ դուրս եկավ իր արտաքին ու ներքին քաղաքականության մեջ: Տնտեսական քայքայումը, սովը, համաճարակները և ազգամիջյան կռիվները դարձան այդ պարտիայի բնորոշ գծերը:

Հարցականի տակ էր դրված հայ ժողովրդի ֆիզիկական գոյությունը:

1920 թվականի նոյեմբերի 29-ին հայ աշխատավորները, բոլշևիկյան պարտիայի գլխավորությամբ, տապալեցին դաշնակ-մաուզերիստների անիծյալ լուծը և իշխանությունը վերցրին իրենց ձեռքը:

Խանջյանը ազատվեց բանտից և շուտով ընտրվեց պարտիայի Երևանի կոմիտեի քարտուղար:

Այժմ, երբ իշխանությունը նվաճված էր, կարեւի էր մտածել նաև ուսման մասին: Տնտեսությունը վերականգնելու, վերքերը բուժելու և նոր թափով առաջ գնալու համար ավելի շատ ու ավելի հիմնավոր գիտելիքներ էին հարկավոր: Աղասի Խանջյանը մեկնում է Մոսկվա՝ Սվերդլովի անվան կոմունիստական համալսարանում սովորելու: Սկսվում է երիտասարդ ռևոլյուցիոների կյանքի մի նոր շրջան:

***

Օ՜, գրքերի աշխարհը — տիեզերք է անեզր...

Մոսկվայում Խանջյանը գլխովին թաղվում է գրքերի մեջ: Մարքսիզմի կլասիկներ, ռուս և համաշխարհային գեղարվեստական գրականություն... Լև Տոլստոյը, Գյոթեն, Թումանյանը, Չեխովը, Բլոկը, Գորկին դառնում են նրա կյանքի անբաժան ուղեկիցները:

Բայց նրան չվիճակվեց երկար սովորել: Դեռևս համալսարանը չավարտած, նա մոբիլիզացվում և ուղարկվում է Լենինգրադ՝ պարտիական ղեկավար աշխատանքի:

Այդ ժամանակ Լենինգրադում գլուխ էր բարձրացրել տրոցկիստական-զինովևական օպոզիցիան: Խանջյանը այն պարտիական աշխատողների թվում էր, որոնք համարձակորեն դուրս եկան օպոզիցիայի դեմ, ի պաշտպանություն պարտիայի լենինյան միասնության:

Ցավոք սրտի, Խանջյանի կյանքի ու գործունեության լենինգրադյան շրջանը դեռևս քիչ է ուսումնասիրված: Մինչդեռ, անկասկած, հենց այդ տարիներին էր, որ նա վերջնականապես ձևավորվեց իբրև պարտիական այնպիսի ղեկավար, որի մոտ թեորիական գիտելիքները ներդաշնակորեն զուգակցվում էին պրակտիկ գործունեության հետ: Այդպիսին էր արդեն Խանջյանը մեկ մոտ, երբ նա ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշմամբ 1928 թվականին Հայաստան եկավ:

***

Սկզբում Աղասի Խանջյանն ընտրվում է Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի երկրորդ քարտուղար, իսկ 1930 թվականի մայիսին՝ առաջին քարտուղար: Երեսնական թվականները պատմական մեծ բեկման տարիներ էին մեր երկրի կյանքում: Դա կապիտալիզմի դեմ սոցիալիզմի ծավալուն հարձակման շրջանն էր:

Պարտիայի կամքով երկիրը բռնել էր սոցիալիզմի կառուցման ուղին: Այդ նպատակով էլ Հայաստանում ևս ստեղծվում են արդյունաբերական առաջին խոշոր օջախները՝ սինթետիկ կաուչուկի կոմբինատը, Կիրովականի քիմիական կոմբինատը, Ձորագէսը, Քանաքեռգէսը և տասնյակ այլ ձեռնարկություններ: Այստեղ-այնտեղ վեր բարձրացող գործարանային ծխնելույզները ագրարային երկրի բնանկարը հարստացրին բոլորովին նոր, մինչև այդ չտեսնված երանգներով: Մասիսների ֆոնին՝ գործարանային կորպուսների ու ծխնելույզների սիլուետները: Ակնբախ էր, որ Հայաստանը թևակոխում էր իր ինդուստրիալ զարգացման շրջանը, ստեղծվում էր երիտասարդ բանվոր դասակարգ, նոր տեխնիկական ինտելիգենցիա:

Սոցիալիզմի կառուցումը պահանջում էր երկրի արագ ինդուստրացում, հնգամյակների անթերի կատարում: Միայն այդ հիմքի վրա հնարավոր էր գյուղը տանել կոլեկտիվ տնտեսության զարգացման ուղիով:

Սկսվեց գյուղի սոցիալիստական վերակառուցումը, մեծագույն ռևոլյուցիոն և դժվարին գործը: Պահանջվում էր ճկուն ղեկավարություն, դասակարգային կռվի օրինաչափությունների իմացություն:Ստանձնելով ՀԿ(բ)Պ Կենտկոմի առաջին քարտուղարի պատասխանատու պարտականությունը, երեսունմեկամյա Խանջյանը հանդես բերեց պարտիայի վարած քաղաքական գծի ճիշտ ըմբռնում, նրա կիրառման պատշաճ տակտ: Շնորհիվ այդ տակտի, հնարավոր եղավ ամրապնդել մեծ բեկումը, շտկել «գլխապտույտից» առաջացած սխալները և գյուղը առաջ մղել կոլեկտիվացման ճանապարհով:

Գյուղի սոցիալիստական վերակառուցման, արդյունաբերության նոր օջախների ստեղծման, սոցիալիզմի դեմ ծառացող հակալենինյան հոսանքների դեմ մղվող պայքարում Խանջյանն իրեն դրսևորեց որպես պարտիայի լենինյան գծի փայլուն կիրառող: Եվ իր մեծ ծառայությունների համար արժանացավ Լենինի շքանշանի:

***

Որպես պարտիական ղեկավար գործիչ, Խանջյանը լրջորեն հաշվի էր նստում իր հետ աշխատող ընկերների հետ:

Որոշումներ կամ վճիռներ ընդունելիս նա հաճախ «դանդաղում» էր: Կարծեք թե ձգտում էր ժամանակ տալ, որպեսզի անմիջական տպավորությունը սառչի և ապա հարցը լուծվի խոհի օգնությամբ: Բայց երբ որոշումն ընդունված էր պարտիական կամ պետական մարմինների կողմից՝ միշտ հետամուտ էր, որ այն ճշտորեն կիրառվի:

Իր բեղմնավոր և անձնվեր գործունեության ընթացքում Խանջյանը միշտ հենվում էր պարտիական ակտիվի և անպարտիական առաջավոր գործիչների բարյացակամության և լայն աջակցության վրա:

Օժտված լինելով հռետորի և հրապարակախոսի փայլուն ունակություններով, Խանջյանը հաճախակի էր հանդես գալիս աշխատավորների հավաքներում և պարբերական մամուլի էջերում: Նրա խոսքը անբռնազբոս էր և ավյունով. շեշտված անկեղծությունն ու անմիջականությունը և արագ տրամաբանելու կարողությունը նրան հնարավորություն էին ընձեռում համակելու ունկնդիրներին, համոզելու նրանց:

Նրան մեծ ուրախություն էին պատճառում սովետական մարդկանց թե՛ մեծ և թե՛ փոքր հաջողությունները: Այսպես, օրինակ, մտնում եք նրա կաբինետը, բարևում եք: Նա ջերմորեն սեղմում է ձեր ձեռքը:— Բարև՛, ընկեր խմբագիր: Երեկ չէ մյուս օրվա խմբագրականը ո՞վ է գրել: Կարդացի: Ա՛յ, լավ էր: Ափսոս մի երկու արխայիկ բառեր կան Պեշիկթաշլյանի բառապաշարից: Դա ավելորդ է: Բայց գրածի ոգին ու ոճը կենդանի են: Այդպես շարունակեք: Բայց խուսափեք ֆորմուլաներից: Մեկի գրածը պետք է տարբերվի մյուսի գրելաձևից:

***

Կենցաղում ժուժկալ ու սակավապետ, նա աշխատավոր մարդկանց կարիքների ու հոգսերի հանդեպ զգայուն էր ու հոգատար: Ըստ որում, այդ հոգատարությունը զերծ էր ցուցադրականությունից: Նա պարզապես սիրում էր աշխատավոր մարդկանց և իր ողջ եռանդը նվիրել ու նվիրում էր նրանց կյանքի բարգավաճման գործին:

Ուստա Հովհաննեսը հիշում է.

— Քառասունհինգ-երեսուն տարվա բան եմ պատմում: Ջահել որմնադիր էի, նոր-նոր ուստիս ձեռի տակից դուրս եկած: Լավ էի աշխատում, սրտով: Միայն մի քիչ վախենում էի. ախր ոչ փորձ ունեի, ոչ աչքաչափ, ոչ էլ ձեռքի մեծ հունար: Բայց դե ամեն ինչ միանգամից չի լինում: Հա, էդպես... Մի շոգ օր է: Դպրոցի շենքն եմ շարում: Հրես, մեր կողքի Կռիլովի անվան դպրոցի շենքը: Աշնանը պիտի հասցնեինք, որ երեխեքը դասի գնային: Դե, դրա համար էլ շտապում էինք: Մեկ էլ վերևից տեսնեմ՝ ձեռնափայտը ձեռին, խունացած մազերով մի մարդ մեր կողմն է գալիս: Մտիկ տամ, ի՛նչ, ընկեր Խանջյանն է: Մոտեցավ, բարևեց ներքևում աշխատող քարտաշներին ու նստեց նրանց մոտ, մի քարի վրա: Մի տասը րոպե խոսելուց հետո վեր կացավ, տեսնեմ՝ սանդուղքով վերև է բարձրանում: Սիրտըս ծուլ ելավ: «Հմի կարող է էստեղ գալ»,— մտածում եմ: Ու եկավ:

«Բարև, ասում է, ուստա»:

«Բարև, ընկեր Խանջյան»,— պատասխանում եմ, համա ձենս դողում է:

«Դե, ո՞նց են գնում գործերը: Շենքը ժամկետին կավարտե՞ք»:

«Ավատաս ավարտենք»:

«Ավատա՞ս, թե՞ անպայման»,— հարցնում է ու խորամանկ ժպտում:

«Անպայման, ընկեր Խանջյան»,— ու ես էլ եմ ժպտում:

Նա ուրախ, բարձրաձայն ծիծաղում է, հետո լուրջ ասում.

«Այ, դա լա՜վ է: Անպայման պիտի ժամկետին հասցնել: Երեխաներն ավելի պահանջկոտ են: Նրանց չի կարելի հուսախաբ անել»:

Հետո հետաքրքրվեց շարվածքով.

«Մեր պապերն այդ գործը բավականին լավ էին անում. նրանց շինած պալատներն ու վանքերը հասել են մեզ: Ամոթ է, որ մենք հիմի նրանցից ետ մնանք: Ախր մենք շինում ենք մեզ համար, ոչ թե թագավորների ու իշխանների...»:

Հետո հարցուփորձ արավ իմ մասին՝ պսակված եմ թե չէ, քանի երեխա ունեմ, տունս ո՞նց է, աշխատավարձս հերիքում է ու էսպես բաներ...

«Տուն չունեմ, ընկեր Խանջյան: Թե չէ, էնպես, մնացած բաները ոչինչ: Աշխատավարձս էլ հերիքում է»:

«Տուն էլ կունենաս: Հենց քո շինած շենքերից մեկում բնակարան կտանք, կապրես: Ամեն ինչ միանգամից չի լինում: Ամբողջ հայ ժողովուրդը տուն չուներ ու հիմի ունի. հարկավոր է շենացնել այդ տունը, այ թե ինչ»:

Հետո վեր կացավ տեղից, հաջողություն ցանկացավ բոլորիս ու գնաց: Էսպես մի հինգ րոպե լուռ մնացինք, հետո ուստա Աբրահամն ասաց՝ մտիկ տալով նրա հետևից.

«Ո՞նց է էդ հիվանդ տեղով շարունակ ման գալիս»:

«Մեզ համար է ման գալիս, ժողովրդի համար...»:

«Էդքանը հասկանում ենք: Ախր ափսոս է, ասում եմ...»:

Ճիշտ որ ափսոս մարդ էր,— անսպասելիորեն խոսքն ավարտում է ուստա Հովհաննեսը:

***

Աղասի Խանջյանը չափազանց խստապահանջ էր իր նկատմամբ. պարտիայի և ժողովրդի վստահությունը պարտավորեցնում էր, և նա աշխատում էր արդարացնել այդ բարձր վստահությունը: Չնայած վատառողջությանը, նա ժամանակ էր գտնում սիստեմատիկաբար ընթերցելու բազմաթիվ գրքեր: Նրա հետաքրքրությունների շրջանակը մեծ էր, աշխատելու ցանկությունն՝ անսպառ:

Մեր այս հինավուրց, երիտասարդ քաղաքը հուշեր է պահում Աղասի Խանջյանից, որոնք երբեք չեն խամրի: Երբ ծնվում, ձևավորվում էր սոցիալիստական Երևանը, Խանջյանը կանգնած էր նրա մոտ: Առաջին նախագծերի մոտ նա շա՜տ ու շա՜տ գիշերներ է անցկացրել: Հաճախ իր մոտ կամ ճարտարապետ Ա. Թամանյանի արվեստանոցում միասին երազել են մեր մայրաքաղաքի ապագան:

Այս կանաչ անտառները, որ այսօր շրջապատում են մեր ջահել մայրաքաղաքը, նրա օրոք են տնկվել: Այստեղ ամեն ծառ ու թուփ պահում են նրա հիշատակը:

Խանջյանը սիրում էր շրջել Երևանում: Նրան կարելի էր տեսնել քաղաքի տարբեր մասերում, տարբեր փողոցներում, օրվա տարբեր պահերին՝ ցերեկը կամ երեկոյան: Նա հաճախ էր լինում գործարաններում և ֆաբրիկաներում, գյուղերում և ավաններում: Հաճույքով լինում էր բուհերում, դպրոցներում և լսում այս կամ այն դասը:

Խանջյանը հոգատար էր ինտելիգենցիայի նկատմամբ. հաճախ լինում էր նկարիչների մոտ, զրուցում գրողների հետ: Նրա ջանքերով Սովետական Միության տարբեր քաղաքներից Հայաստան եկան հայ ժողովրդի անվանի արվեստագետներ՝ նկարիչներ, կոմպոզիտորներ, ճարտարապետներ՝ երաժիշտներ:

Քայլում էր՝ խառնված բազմությանը, սիրալիր բարևելով ծանոթներին, անցուդարձող ջահել զույգերին ժպտալով: Նրա համար այնքա՜ն հաճելի էր խորհրդածել իր վերածնված Հայրենիքի ու ժողովրդի մասին:

Շրջում էր նա Երևանում և ուրախանում մի լավ ձևավորված ցուցափեղկի, փողոցի առատաշող լույսերի, Աբովյանի մատղաշ ծառերի, մարդկանց սրտաբուխ, վարակիչ ծիծաղի համար, այդ ամենի մեջ, ինչպես մի կաթիլ ջրում, տեսնելով նորի վերասլաց ընձյուղները, իր Հայրենիքի լուսավոր վաղը: «Ես էլ, անշուշտ, իմ բաժինն ունեմ այստեղ»,— մտածում էր նա:

Այո, մեր մեծ նվաճումների մեջ կա և նրա անսպառ եռանդի բաժինը: Այդ ամենի մեջ, ուշադիր ականջ դնելիս, կարելի է լսել նրա մարդկային մեծ սրտի տրոփյունը: Նա իր ողջ գիտակցական կյանքը նվիրեց կոմունիզմի կառուցման մեծ գործի հաղթությանը: Որպես նոր կյանքի անբասիր կառուցող, նա պարտիայի և ժողովրդի ջերմ սերն էր վայելում: Աղասի Խանջյանը գաղափարական կոմունիստի, անձնվեր լենինյանի անմոռաց տիպար էր:

Աճելով «Սպարտակ»-ի փոքր հույլից, նա դարձավ Հայաստանի Կոմունիստական պարտիայի մեծ համաստեղության անմար աստղերից մեկը:

Խ. ՀՐԱՉՅԱՆ

# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԱՆԶՆՎԵՐ ՄԱՐՏԻԿԸ.



Այգեհատը փոքրիկ գյուղ էր, գեղատեսիլ Լոռվա պառիթափ սարալանջի ստորոտում կծկված: Ձմռան գիշերներին կտուրների վրա մոլեգնում էր ձնահողմը, ձյունը ծածկում էր ճանապարհները: Բուխարիկի ջերմ կրակի մոտ գյուղացիք ծալապատիկ նստում էին, լսում տարեց մարդկանց զրույցը: Մի ժամանակ աշխարհում արդարություն է եղել: Հետո հայտնվել է չար դևը, ու աշխարհում տիրել է անարդարությունը: Հետո մի դյուցազն հաղթել է դևին, և արդարությունը նորից է տիրել աշխարհին:

Ու երբ ձնահողմի միջից առկայծում էր գյուղի մի ճրագ, գայլերը ոռնում էին դունչները երկինք տնկած. «Ո՜ւ-ո՜ւ...»: Կրակը շիջանում էր, օդան մթնում, մտահոգ դեմքերը մի պահ անհետանում էին խավարում: Դրսում մոլեգնում էր ձնահողմը. «Ո՜ւ-ո՜ւ...»: Փոքրիկ Դանուշը ավելի էր կըծկըվում պապի ծնկների արանքում: Թվում էր, թե ամբողջ աշխարհն էր այսպես թաղված խավարում, չի եղել դյուցազն, ոչ ոք չի հաղթել դևին: Բուխարիկի մեջ նորից առկայծում էր աթարի կրակը, նորից երևում էին ծանոթ դեմքերը: Դանուշի աչքերը փայլում էին. նա թողնում էր պապի ծնկները, մտածում այն ժամանակվա մասին, երբ ինքը մեծ կլինի, կհաղթի չար դևին ու աշխարհում կլինի այնպես, ինչպես հեքիաթն էր պատմում:

Գարնանը սկսվում էր ձնհալը: Գետը վարարում էր, պղտորվում:

Գյուղամիջյան ճանապարհի վերջում, քարաշեն մի տան պատշգամբում հայտնվում է սև, հնամաշ սերթուկը հագին տարեց մի մարդ: Նա մի ձեռքին բռնած ուներ ցուպը, մյուսին՝ լայնեզր գլխարկը: Բարակ շրջանակներով ակնոցների տակից նրա աչքերը նայում էին պարզ, խելացի:

Նա կանգնում էր քարե սանդուղքների վրա, նայում երկնքին, կկոցում էր աչքերը. «Շտապիր, Մարիա»,— ասում էր նա: Տնից դուրս էր գալիս տարեց մի կին, թևանցուկ էր անում նրան. նրանք իջնում էին քարե սանդուղքով և դանդաղ քայլում էին գյուղից դուրս տանող ճանապարհով. հանդիպող գյուղացիք նրանց բարևում էին հարգանքով և, երբ նրանք հեռանում էին, նայում էին նրանց հետևից. «Նարոդնիկ Վասիլ Շահվերդյանն է», կամացուկ ասում էին իրար: Պատմում էին, թե 1881 թվականին Վասիլը մասնակցել է Ալեքսանդր 2-րդ ցարի սպանության գործին և դրա համար քսանհինգ տարով աքսորվել է Կովկաս: Դանուշը ծնվել էր այդ թվականից մի տարի հետո:

Վասիլը Դանուշենց ազգականն էր: Նրանց տները հանդիպակաց էին: Վասիլը հաճախ էր գալիս նրանց հյուր, զրուցում նրանց հետ: Չկան չար դևեր: Կան չար մարդիկ: Աշխատող մարդը՝ մշակը, չպետք է ընչազուրկ լինի: Ահա թե ինչ էին խոսում նրանք: «Գյուղացիական համայնքը պիտի հեղաշրջի աշխարհը», համոզված պնդում էր Վասիլը: Դանուշին նա թվում էր դյուցազն:

Գարուններ անցան: Գյուղին հաջորդեցին Թիֆլիսը, երկրորդ գիմնազիայի նեղ, անձուկ միջանցքները: 90-ական թվականների Թիֆլիսը: Շահույթի ու ապրուստի համար խլրտացող մարդկային քաոսի կիսասափական այս բովում աճում էր երիտասարդ ու կիսաքաղց մի սերունդ, որն սկսում էր հասկանալ աշխատավոր մարդու շահագործումը և պատրաստ էր նույնիսկ սեփական կյանքը զոհելով հասնել իր իդեալին՝ մարդու ազատագրմանը:

լինում ազատ գյուղացիներն ու արհեստավորները: Միայն Գաղիայի գրավումը (58—51 թթ. մ.թ.ա.) Հռոմի ստրկավաճառման շուկա շպրտեց մեկ միլիոն գաղիացի ստրուկներ: Գնալով աճում էր հասարակության ողորմածությամբ ապրող թշվառների բանակը և նվազում անմիջական արտադրողների թիվը: Հռոմի իշխանությունների կործանարար ավարառությունների հետևանքով ծայր աստիճան քայքայվում էր և հյուծվում նվաճված երկրների էկոնոմիկան: Այս ամենը Հռոմը մոտեցնում էր կործանման եզրին:

Իր գոյության վերջին դարն ապրող (133—31 թթ. մ. թ. ա.) Հռոմեական ռեսպուբլիկան որպես ուժասպառ մի սֆինքս հանգչում էր հրաբխի վրա: Այդ շրջանի գրականության, ինչպես և քրիստոնեական շարժման խուլ որոտներում պարզ կգացվում է գավառներում բռնկված ռևոլյուցիոն շարժման պանզվածների սուր ճիչը: Մոտ երկու դար ծփացող սոցիալական ալեկոծությունները (որոնք իրենց անկազմակերպվածության և հատվածականության պատճառով որպես կանոն միշտ էլ պարտվում էին), և նվաճողական կռիվներն ի վերջո հանգեցրին նրան, որ Հռոմեական ռեսպուբլիկան տեղի տվեց կայսրության (31 թ. մ.թ.ա.): Շահագործումը, ճնշումն ու անօրինականությունն անպատում չափերի հասան: Դա ցայտուն երևաց նաև Հռոմի գավառներից մեկում՝ Պաղեստինում, ուր պարտված և հուսաբեկ զանգվածներին մնում էր կարծել, թե կայսրությունը հավիտենական է ու անպարտելի, թե երջանիկ կյանք այս աշխարհում միայն հարուստներին է տրված, իսկ «հոգով հարուստ» աղքատներին կարող է փրկել «Գառն Աստծո», որի գալստյան ժամանակը մոտենում է:

Կայսրության արևելյան մարզերում, ուր ավելի վաղ և ավելի խոր էր արտահայտվում ստրկատիրական արտադրաեղանակի ճգնաժամը, առավել ցայտունորեն դրսևորվեցին վարակիչ հոռետեսության տրամադրությունները, որոնք հանգեցին մեսիանիզմի սևեռուն գաղափարին: Վհատված, ծեծկված և բոկոտն ստրուկներն իրոք արժանի էին կարեկցանքի, սփոփանքի ու մանավանդ՝ փրկության: Սակայն ժողովրդի դարավոր անձկումներն ու սպասումները հնչում էին որպես ձայն բարբառո յանապատի:

Ումի՞ց կարող էին հուսալ լքված զանգվածներն իրենց փրկությունը: Հռոմեական պաշտոնական աստվածներ Յուպիտերի՞ց, Մարսի՞ց, Վեներայի՞ց: Չէ՞ որ նրանք հովանավորում էին իշխանության կիրառած բոլոր գազանությունները: Չէ՞ որ այդ աստվածներն էլ հագենում էին սուսերից ընկած գլադիատորների արյամբ: Երկրում ծայր առած Հռոմի կայսրների պաշտամունքը գնալով ծավալվում էր պատրիկների և, նույնիսկ, պլեբեյների շրջանում: Եվ, երբ մահամերձ կայսր Վեսպասիանն ասում էր, թե կարծյոք ինքն աստված է, դրանով իսկ պաշտոնական կրոնն ստրուկներին ավելի ատելի էր դառնում:

Ահա թե ինչու բնական պետք է համարել այն երևույթը, երբ Հռոմի կայսրության ճնշված ու լլկված ժողովուրդների մոտ ընդունելություն գտան իրանական Միհր, եգիպտական Օսիրիս, Իսիդա և այլ աստվածներ, որոնք իրենց հետ բերին բավականին թանձր միստիկական շաղախ:

## ԱՐՄԱՏԱԿԱՆ ՇՐՋԱԴԱՐՁ

Եթե Հովհաննու հայտնության մեջ դեռ ակներև է քրիստոնեության և հրեության կրոնների օրգանական կապը, ապա Ավետարանի մյուս գրքերում պատկերը բոլորովին այլ է: Քրիստոսի «աշակերտների» առջև կյանքը խնդիր էր դրել՝ հրապուրել մասսաներին և համակել նրանց նոր կրոնի ոգով: Դա հնարավոր չէր անել հրեության փոքրիկ աղանդի վիճակում մնալով: Հին եբրայական կրոնի ծեսերն իրենց շեշտված էթնիկական սահմանափակությամբ մեծապես խանգարում էին այլազգիներին՝ մերձենալու քրիստոնեական շարժմանը: Հրեությունը որպես կրոն պահանջում էր ընդունել, որ միայն եբրայեցիք են աստծո ընտրյալ ազգը, որ տիրոջը հավատարիմ լինելու կարևորագույն ապացույցներից մեկն էլ թլպատումն է:

Ակն ընդ ական, ատամն ընդ ատաման, քարոզում էր Հին կտակարանը՝ հրեական կրոնը: Մի՛ կալ հակառակ չարին, ուսուցանում էր Նոր կտակարանը: Վերջապես, մարտական և ագրեսիվ Յահվեից հուսահատ ստրուկները փարվեցին այնքան մոտ թվացող փրկչին, որը «եկել» էր: Սա արդեն արմատական շրջադարձ էր և որոշ կասերի խզում Հին կտակարանից: Նոր հանգամանքներում կրոնը դրսևորման նոր ձևեր ընդունեց:

Քրիստոնյաները ստիպված էին հակադրվել հրեությանը և նույնիսկ մաքառել նրա վաղեմի դոգմաների դեմ: Երեկվա հրեա և այժմ քրիստոնյա Պողոս առաքյալը համամիտ չէ իր ազգակիցների հետ, որոնք կարծում են, թե հեթանոսներն ի վիճակի չեն հասկանալու աստծո իմաստությունը: Դրա համար էլ նա վայրացած ասում է, թե հրեից օրենքը «ստրկական լուծ է», որի կրողներն իզուր թլպատվում են: Եթե հեթանոսները թլպատվեն, Քրիստոսը նրանց չի օգնի: Մեղավոր մարդը չի կարող արդարանալ տիրոջ դատաստանի առջև Մովսեսի օրենքով, այլ միայն Քրիստոսի հավատով: Եթե արդարությունը օրենքով էր, ապա Քրիստոսը իզուր է մեռել, ուսուցանում էր Պողոսը:

Երբ առաքյալը կոչ էր անում քրիստոնյաներին



ասելով՝ ձեր միջից հանեք հին մարդուն իր գործերով և տվեք նոր մարդուն, որն իր ստեղծողին է նման, նա ի նկատի ուներ հրեության ներկայացուցիչներին, որոնք չէին կարողանում հասկանալ, թե Հիսուսի «աշակերտների» համար չկան այլևս ազգային կրոններ և ազգային ծեսեր: Կա մեկ աստված, որը Յահվեի մի ընտրյալ ժողովրդի փոխարեն ճանաչում է բոլոր ժողովուրդներին: Դրա համար էլ Պողոսն ասում էր. Նոր վարդապետության համար ոչ հույն կա և ոչ հրեա, ոչ թլպատություն և ոչ անթլպատություն, խուժ, դուժ, սկյութացի, ստրուկ, ազատ, ամենքը և ամենքի մեջ՝ Քրիստոս (Թուղթ առ կողոսացիս, գ. 11—12):

Պողոսը գիտակցում էր, որ հեթանոսները ավելի շուտ կարող են հավատալ Քրիստոսին, քան Մովսեսի օրենքներով կաշկանդված հրեական ժողովուրդը: Պատշաճ հանդուրժողականություն դրսևորելով հեթանոսների կենցաղի ու ծեսերի նկատմամբ, արհամարհելով հրեության դարավոր կապանքները, քրիստոնեությունը իր մեջ ներծծեց հրեից Հին կտակարանը՝ այն դարձնելով երկրորդ անգամ աշխարհ եկող Քրիստոսի նախահայրերի «Սուրբ գիրքը»:

Մինչև վերջ չըմբռնելով կրոնական աշխարհում տեղի ունեցող պատմական շրջադարձը, հրեության ջատագովները մնացին բուն իրենց ծոցից ծագած նոր կրոնի կատաղի հակառակորդները:

## ԷՆԳԵԼՍԻ ՀԱՅԱՑՔՆԵՐԸ

**Իր «Բրունո Բաուերը և վաղ քրիստոնեությունը», «Հայտնության գիրքը», «Վաղ քրիստոնեության պատմության առթիվ»** սեղմ դրվագներում Ֆ. Էնգելսը տվել է քրիստոնեության ճշմարտացի և համոզիչ գնահատականը:

Սկզբում հանդես գալով որպես ճնշվածների, ստրուկների, աղքատների և իրավազուրկների խնկական զանգվածային շարժում, քրիստոնեությունը քարոզում էր տիրող ստրկության և կեղեքումների մոտալուտ վախճանը, երկնից արքայության հավիտենական թագավորում լոկ այն աշխարհում: Հակառակ դաժան հետապնդումների ու հալածանքների և «հաճախ նույնիսկ անմիջականորեն դրանց շնորհիվ», քրիստոնեությունն իր ուղին հարթեց մեծամեծ կոհերով, մինչև որ իր ծագումից երեք հարյուր տարի անց՝ հռչակվեց պետական կրոն:

Ո՞րն է քրիստոնեական վարդապետության կարևոր հատկանիշներից մեկը թե՛ այն ժամանակ և թե այսօր: Այն, որ նրա առաջին քարոզիչները և վերջին կեղեքիչները մարդկանց կյանքում եղած անիրավությունների և թշվառությունների վերացման գործը հնարավոր են համարում լոկ երկնքում, երբ Քրիստոսի դատաստանից հետո չարին վերջ կլինի, իսկ արդարները կդառնան երկնքի հավիտենական բնակիչները:

Մեր թվարկության սկզբի բուռն տարիներին փըտող և կործանվող հին աշխարհի ալեկոծությունից ափ նետվածներն էին հարում քրիստոնեությանը: Լինելով այդ քայքայման արգասիքը, ասում է Էնգելսը, նրանք այդ քայքայման դեմ ծառս ելնող միակ ուժն էին կազմում: Ամեն կարգի երեվակայական պատրանքներ, հիմարություններ կամ հնարանքներ տեղ էին գտնում վաղ քրիստոնեական համայնքներում: Եվ, որովհետև առաջին քրիստոնյաներն անասելի դյուրահավատ էին այն ամենի հանդեպ, ինչ համապատասխանում էր նրանց հայացքներին, ապա բորբոքված կրոնական երևակայության պտուղները վերջին հաշվով միշտ հրաշապատում էին:

Էնգելսը ճիշտ է համարում այն տեսակետը, որի համաձայն Նոր կտակարանի չորս հիմնական ավետարանները չեն պատկանում ականատեսների գրչին: Դրանք, անշուշտ, հանդիսանում են վաղուց անհետացած այլ ավետարանների և գրքերի ուշացած վերամշակումները: Քրիստոնեության լեգենդան, որը մեկեն և պատրաստի ձևով առաջացավ հրեությունից և որը հաղթական դուրս եկավ, հիմնական գծերով ձևակերպված իր դոգմատիկայով և էթիկայով այդ լեգենդան՝ Բրունո Բաուերից հետո պաշտպանելն այլևս անհնարին է: Այն կարող է իր գոյությունը տակավին քարշ տալ միայն թեոլոգիական ֆակուլտետներում և այն մարդկանց շրջանում, ովքեր ցանկանում են «կրոնը պահել ժողովրդի համար», թեկուզ ի վնաս գիտության, նշում է Էնգելսը: Քրիստոնեության վրա գործած ալեքսանդրյան—փիլոնյան ուղղության և հունահռոմեական վուլգար փիլիսոփայության, պլատոնական և, հատկապես, ստոիկյան փիլիսոփայության խոշոր ազդեցության բացահայտումը Էնգելսը համարում է Բ. Բաուերի երախտիքը: Նա էր, որ ապացուցեց, թե քրիստոնեությունը ոչ թե մուծված է Հրեաստանից, այլ հունա-հռոմեական աշխարհի արգասիք է:

Ինչ վերաբերում է, այսպես կոչված՝ «Ապոկալիպսիսին»՝ «Հայտնությանը» (որը կետեղված է Ավետարանի վերջում), դա գրված է 68—69 թըվականներին: Հովհաննու անունը կրող այդ գիրքը արտացոլում է քրիստոնեության ամենավաղ շըրջանի հայացքները: Եվ, ըստ իս, ասում է Էնգելսը, վաղ քրիստոնեության բուն էությունն ըմբռնելու տեսակետից այդ գիրքն ավելի կարևոր է, քան բոլոր մնացած ավետարանները և «թղթերը», որոնք գրվել են բավականին ուշ ժամանակներում: Իր ժամանակի համար և իր տեսակի մեջ այդ գիրքը միակը չէ, հարկավ: Այդպիսի գրքեր շատ են եղել այն դարաշրջանում, երբ Փոքր Ասիայում, Սիրիայում, Եգիպտոսում, նույնիսկ Հռոմում և Հունաստանում ի մի էին խառնվել բազմաթիվ

Սա, հարկավ, աստծուց սերվածին սազական չէ:

Ինչպես շատ կրոններում, Մատթեոսի և Ղուկասի մոտ Հիսուսն անարատ կույսից է ծնվում, մինչ Հովհաննի և Մարկոսի ավետարաններում անարատ բեղմնավորման մասին ծպտուն չկա: Մի կողմ թողնելով Հիսուսի մասին եղած մտահնար հրաշագործությունները՝ մեր ընթերցողի ուշադրությունն ենք հրավիրում Ավետարանի ավելի կարևոր կողմերի վրա:

Ովքե՞ր են կեղեքման վրա հիմնված աշխարհի երջանիկները: Մատթեոսի բերանով Հիսուսն ասում է. երանի՜ հոգով աղքատներին, որովհետև նրանց է պատկանում երկնից թագավորությունը: Երանի՜ սգավորներին՝ նրանք պետք է մխիթարվեն: Երանի՜ հեզերին՝ նրանք պիտի ժառանգեն երկիրը: Այսպիսով, կեղեքումից և տառապանքներից կարելի է ազատվել միայն երկնքում: Աղքատները թող որ բավականանան իրենց վիճակով, բայց թե դրախտը նրանց համար է պահված: Աշխարհի անմխիթար վիճակը և անարդարությունները, ըստ Մատթեոսի՝ անհրաժեշտ են և անտրոհելի: Որովհետև Հիսուսն ինքն է ասել, թե միք կարծի ես եկա օրենքը կամ մարգարեները խախտելու. ես խախտելու չեկա, այլ կատարելու (Ե, 17):

Սոցիալական ստրկատիրության այս սրբագործումը տրամաբանորեն բխում է քրիստոնեական այն սկզբունքից, թե պետք է միաբանել ոսոխի հետ: Եթե թշնամին կուզենա ձեզ դատել և շապիկը վերցնել, ձեր բաճկոնն էլ տվեք նրան, ասում է Հիսուսը Մատթեոսի Ավետարանում (Ձ, 40—41): Ստոիկյան այս մորալը, որը թափանցել է ամբողջ Ավետարանի մեջ, քրիստոնեությունը դարձրել է մարդկության կեղեքման և խաբեության վտանգավոր միջոց: Ահա թե ինչու Կ. Մարքսը գտնում էր, որ քրիստոնեության սոցիալական սկզբունքներն **արդարացնում էին** հին ստրկատիրությունը, **փառաբանում էին** միջնադարյան ճորտատիրությունը և նմանապես կարողանում են, հարկ եղած դեպքում, թեկուզ և ողորմելի ծամածռությամբ՝ արդարացնել պրոլետարիատի արդի կեղեքումը (հատոր V, էջ 173):

Պետք է նկատել, որ ստոիցիզմից փոխառած պասսիվության մորալը քրիստոնեությունը կարգացրել-հասցրել է մինչև իր տրամաբանական վախճանը: Եթե ձեզ գայթակղեցրել է աչքը, հանե՛ք այն և դեն նետեք: Եթե ձեզ գայթակղեցրել է ձեռքը, կտրե՛ք այն և դեն նետեք: Մարդը չպետք է հոգա վաղվա օրվա մասին, դա հեթանոսություն է: Մարդիկ պետք է ապրեն թռչունների պես, իրենց բախտի տնօրինությունը թողնելով նախախնամության կամքին: Գաղտնիք չէ, որ այս վայրագ մորալը կատարյալ կինաթափ է արել հավատացյալներին, կասեցնելով իրենց երջանկության համար մղվող կռիվը:

Մատթեոսը հավատացնում է, թե Քրիստոսը եկել է ոչ թե արդարներին կանչելու, այլ մեղավորներին ապաշխարելու: Բայց նույն ավետարանիչն ասում է, թե Քրիստոսն ասաց. մի՛ք կարծի, թե ես եկա աշխարհում խաղաղություն բերելու, այլ սուր: Եկա մարդն իր հորից բաժանելու, աղջիկն իր մորից, հարսն իր սկեսուրից (ԺԲ, 32—38):

Հարցին իրազեկ յուրաքանչյուր ոք կնկատի, որ Հիսուսն այստեղ խոսում է կռվատենչ մեսիանիզմի, վաղեմի և դաժան Յահվեի ոգով: Եվ Ավետարանի շատ էջերում սուր փշերի պես դուրս են ցցվում հրեության դոգմաները, որոնք երբեք չմերվեցին քրիստոնեության «գթասրտության» մորալի հետ: Տարօրինակ չէ՞, երբ անվերջ հրաշքներ գործող Հիսուսը խոստովանում է, թե հայրը նրան ամեն ինչ տվել է, բայց ոչ ոք որդուն չի ճանաչում՝ բացի հորից: Իսկ հորն էլ ոչ ոք չի ճանաչում՝ բացի որդուց: Եվ, որպեսզի իրեն հետևորդներ ունենա, նա ասում է. ինձ մոտ եկեք, բոլոր վաստակածներ ու բեռնավորվածներ և ես ձեզ հանգիստ կտամ: Իմ լուծը ձեզ վրա առեք և սովորեք ինձանից, որ հեզ եմ և սրտով խոնարհ: Իմ լուծը քաղցր է և իմ բեռը՝ թեթև (ԺԴ, 24—28): Չնայած իր «հրաշագործ» կարողությանը, Հիսուսը համենայն դեպս ստիպված է խոստովանել, որ ժողովուրդը նրան միայն շրթունքներով է պատվում, իսկ սրտով հեռացել է նրանից:

Գթասիրտ, հեզ և բարի Քրիստոսը հաճախ է մատնում այն ճշմարտությունը, որ նրան հնարողները ո՛չ միայն իր ժամանակակիցները չեն, այլև սովորական մարդիկ են՝ խաբեությունների, չափազանցությունների և գուշակությունների հակված: Դրա համար էլ նա կարող է ասել. թողե՛ք կույրերը միմյանց առաջնորդեն՝ որպեսզի փոսն ընկնեն (ԺԸ, 24): Այս քարոզը լսողը կարո՞ղ է հավատալ նրան, թե՝ «ես եկել եմ մեղավորներին ապաշխարություն տալու, և վաստակածների բեռը թեթևացնելու»:

Հովհաննու Հիսուսը եկել է փրկելու բոլոր մարդկանց: Մատթեոսի Հիսուսը եկել է փրկելու միայն Իսրայելի տան կորած ոչխարներին (ԺԸ, 24): Դա չի խանգարի նրան, որպեսզի նույն Հիսուսը կայրանա Իսրայելացոց վրա, որոնք նրան չեն հավատում, ուստի և նրանցից խլելու է աստծո թագավորությունը մի այլ ազգի հանձնելու նպատակով: Արևելյան դուալիզմին տուրք տվող Մատթեոսի Հիսուսը գտնում է, թե աշխարհիս վրա չար և բարի պտուղներ տվող ծառեր կան, որ ստրուկն իր տիրոջից բարձր չի կարող լինել, թե անհրաժեշտ է՝ կայսրինը տալ կայսրին, իսկ աստծունը՝ աստծուն, որովհետև սուր վերցնողները պետք է սրից կործանվեն (ԻԳ, 53): Իհարկե, այս համոզման տեր Հիսուսը կապ չունի աշխարհին ոչ թե խաղաղություն, այլ սուր բերող Քրիստոսի հետ: Հիրավի, որքա՜ն անմեղ բան է մի քանի մարդու սրի քաշելը, համեմատած Մատթեոսի այն Հիսուսի հետ, ըստ որի, երբ ինքը նորից աշխարհ գա (ինչպես Ջրհեղեղի ժամանակ), բոլորը պիտի ոչնչանան:



Որովհետև ավետարանների հեղինակները տարբեր են և շատ, գրել են տարբեր ժամանակներում և տարբեր ըմբռնողությամբ, ստացվում է հայացքների և սկզբունքների կատարյալ շիլաշփոթ: Հավատացե՛ք Քրիստոսին: Մի՛ք հակառակվի չարին, ասում են նրա «աշակերտներից» ոմանք: Մյուսներն ասում են. եթե չեք հավատա, միևնույն է, Քրիստոսը կգա երկրորդ անգամ և կջնջի բոլոր կենդանի էակներին: Փրկությունը հավատքի մեջ է, ասում են ավետարանիչները միահամուռ կերպով:

Քրիստոնեական հավասարությունը նախնական մեղքի հանդեպ՝ հավասարություն «հոգու մեջ», հավանաբար, սկիզբ է առնում ո՛չ միայն էսսեյականների պրակտիկայից, այլև Հերմասին վերագրվող «Հովիվ» գրքից, որտեղ դատապարտվում են պորտաբուծությունը և ընչաքաղցությունը: Ավետարանական դեմոկրատիզմի որոշ տարրեր նմանապես առնված են այդ «Հովվից»: Թըշվառները կգնան դրախտ, իսկ հարուստները՝ դըժոխք. այս թեզն ակներև է վաղ քրիստոնեության նշված գրքում: Ուստի պատահական չպետք է համարել, որ Ղուկասի ավետարանում Հիսուսը հարուստ Զաքեին մեղքերի թողություն է շնորհում այն բանի համար, որ նա իր հարստության մի մասը ողորմել է թշվառներին:

Չարին չհամակերպվելու ոգով են գրված Պողոս առաքյալին վերագրվող թղթերը: Այստեղ ենք հանդիպում այն ստրկական մորալին, ըստ որի ծառաները պետք է հնազանդ լինեն մարմնավոր տերերին, վախով և դողով, սրտանց և հոժարությամբ պետք է ծառայեն տիրոջը:

Այսպիսով, քրիստոնեությունը սկզբում հանդես գալով որպես ստրուկների և ճնշվածների կրոն, շուտով դարձավ շահագործում և կեղեքում արդարացնող կրոն: Ամբողջ Ավետարանի ոգին դըրա արդարացումն է, շահագործողական հասարակության գաղափարական և փաստական սըրբագործումը:

Կրոնի ականավոր հետազոտողներից մեկը ճիշտ է ասել, որ, եթե Ավետարանից դուրս նետվեն հրաշքներին նվիրված էջերը, շատ քիչ բան կմնա:

## ՀԻՍՈ՞ՒՍ, ԹԵ՞ ՔՐԻՍՏՈՍ

Ավետարանի սումբուր բնույթը ցայտուն կերպով դրսևորվում է հատկապես առասպելական Հիսուսի անձնավորության հարցում: Պաշտոնական Ավետարանի գլխավոր դոգմատի համաձայն, Հիսուսը դա նույն Քրիստոսն է: Ավետարանն ըստ Մարկոսի ասում է, թե մի անգամ Հիսուսն իր աշակերտներին հարցրեց. մարդիկ ինձ ո՞վ են համարում: Մեկն ասաց, թե Հովհաննես Մկրտիչ, մյուսը, թե՝ Եղիա մարգարե, երրորդը, թե՝ մարգարեներից մեկը: Սակայն այդ հարցին Պետրոսը պատասխանեց՝ դու Քրիստոսն ես: Լսելով այդ, Քրիստոսը սաստեց աշակերտներին այդ մասին որևէ մեկին լուր չտալ: Ինչո՞ւ է Որդին աստծո վախենում մարդկանցից: Չէ՞ որ ավետարանների պատմելով նա սկզբից ևեթ գիտեր, որ պիտի չարչարվի, մեռնի ու հարություն առնի: Սա ևս խոսում է նրա անձի առասպելականության օգտին:

Մարկոսի մոտ Հիսուսը նույն Քրիստոսն է: Բայց Հիսուսը Գալիլեացի մարգարեի անունն է: Մարկոսի Հիսուսը ոչ ծնունդ, ոչ մանկություն գիտե, այլ հրապարակ է գալիս 30-ի մոտ, իսկ Հովհաննի՝ հիսունի մոտ տարիքում:

Քրիստոս ոչ այնքան անուն է, որքան կոչում, ասում է հարցին մեծ գիտակ սովետական պատմաբան Վիպպերը: Նրա կարծիքով, երբ Հիսուսն ու Քրիստոսը նույնացվում են, դա նշանակում է միաձուլվում են երկու տարբեր ըմբռնումներ: Մեկն այն, որ Հիսուսը համարվում է մարգարե, քարոզիչ և բուժող, որը եղել է աշխարհում, սակայն մարդիկ նրան չեն ճանաչել և սպանել են: Մյուս ըմբռնումը՝ որպես բոլոր հավատացյալների փրկիչ, Քրիստոսը նոր պետք է աշխարհ գա չարի նկատմամբ արդար դատաստան տեսնելու համար: Առաջին դեպքում, Հիսուսի պատկերացումը դեռևս մնում է հրեության շրջանակներում, իսկ երկրորդում՝ հավակնում է գործել բոլոր ժողովուրդների անունից, հանուն բոլորի փրկության: Փրկչի այս տարբեր ըմբռնումները, որոնք պրոպագանդվել են II դարի (մ.թ.) 60-ական թըվականներին միանգամայն տարբեր աղանդների կողմից, անցել են ավետարանի կազմողներին, առանց ի մի ձուլվելու:

Մինչև քրիստոնեության ընդհանուր ճանաչում նվաճելը, մի շարք կրոնական աղանդներ Հիսուսին պատկերացրել են որպես սիմվոլիկ էակ: Մինչդեռ մի քանի ավետարաններ նրան համարում են Գալիլեացի մարգարե: Հին եբրայերեն՝ Հիսուսը, դա Յեշուա-ն կամ թե Յոշուա-ն է, որը նշանակում է՝ փրկիչ, պահպանիչ, բուժող: Թեև Ավետարանում ասված է, թե Հիսուսը Գալիլեի Նազարեթ քաղաքից է, սակայն այն ժամանակ այդպիսի անունով քաղաք չի եղել: Հին եբրայերեն՝ Նազարեյ կամ Նազորեյ առաջացել է նազարա բառից, որը նշանակում է փրկիչ, հովանավոր:

«Գործք առաքելոց»-ից էլ ակներև է, որ վաղ քրիստոնեության քարոզիչները երկար ժամանակ գաղափար չեն ունեցել Քրիստոսի վերաբերյալ: Երկար ժամանակ Ալեքսանդրիայի հավատացյալ-

հարել հայ գիտնականների, հրապարակախոսների և ժուռնալիստների գործունեությունը գնահատելու և, մանավանդ, նրանց տեսակավորելու («սորտավորելու») ծանր բեռը։ Բայց ամբողջ ցավն էլ այն է, որ առանց մտածելու այն մասին, թե կարո՞ղ է արդյոք այդ բեռը գետնից վերցնել ու տեղ հասցնել, նա հատկապես աշխատության երկրորդ մասում, «գիտնականների, հրապարակախոսների ու ժուռնալիստների» ինչ-որ դասակարգում է կատարել, ասենք, նրա մեջ տեղ տալով ոչ քիչ երկրորդական կամ առանձնապես աչքի չընկնող անձանց։

Իսկ այդ ամբողջը, իհարկե, պատահական չէ. գիտնականների ու հրապարակախոսների տեսակավորումը Հովհ. Պետրոսյանը կատարել է ոչ թե նրանց գիտական ու հասարակական գործունեության տեսանկյունից և այն նկատի առնելով, որ կարևոր է, այլ, ընդհակառակն, ինչպես ինքն է ասում՝ ելակետ է ունեցել «նրանց գիտական աստիճանն ու կոչումը, գիտական ստաժն ու արգասավորությունը»։

Առաջնորդվելով նման խախուտ «ելակետով», նա, բնականաբար, ըստ ամենայնի չի ներկայացրել սովետական շրջանի հայագիտության զարգացման ու նրա նվաճումների պատկերը, նրա ոլորտից «դուրս է հանել» մի շարք գիտնականների լավագույն աշխատություններ, որոնք, սակայն, իրենց ուրույն տեղն են գրավում հայագիտության գանձարանում և հետևաբար, չպետք է «մոռացության մատնվեին»։

Հովհ. Պետրոսյանը, չբավարարվելով, սակայն, մատենագիտական ցանկեր «կազմելով» և գիտնականների ու հրապարակախոսների տեսակավորում «կատարելով», նրանց մասին գրել է, այսպես կոչված, կենսագրական ծանոթագրություններ. բայց այստեղ ևս կիրառվել է աշխատանքի նույն ոճը, այսինքն՝ դարձյալ նա դիմել է ուրիշների աշխատանքներին և դրանից էլ արել «յուրօրինակ» կոմպիլյացիաներ, որոնք և հենց այդ պատճառով նույնպես զերծ չեն բազմաթիվ աղճատումներից ու աղավաղումներից։ Հիշենք դրանցից միայն մի քանիսը. կենսագրական տեղեկություններ քաղելով բավական հին աղբյուրներից, նա Խ. Աբովյանին համարում է «աշխարհաբար լեզվի ստեղծողը» (էջ 2), չգիտենալով սակայն, որ լեզվի ստեղծողը ժողովուրդն է, որ աշխարհաբարը ծնունդ է առել Խ. Աբովյանից շատ առաջ, և մի անհատն էլ երբեք չի կարող մի ամբողջ ժողովրդի լեզվի ստեղծողը լինել։

Եվ կամ՝ մանկավարժ Ս. Մանդինյանի կենսագրությունը «կազմելիս»՝ Պետրոսյանը չի կարողացել նույնիսկ հավատարիմ մնալ իր «օգտագործած» աղբյուրին։ Օրինակ, 60-ական թվականների ռուսական հասարակական-լուսավորական եռուն շարժման ազդեցության տակ նա (Ս. Մանդինյանը—Ա. Մ.) հակվում է դեպի մանկավարժությունը» («Հայ մանկավարժներ», 1959 թ., էջ 474) հիշատակությունն արտահայտում է այնպես, որ իբրև թե «70-ական թվականների ռուսական հասարակական-քաղաքական շարժումների ազդեցության տակ» է Ս. Մանդինյանն անում այդ բանը, թեև քիչ հետո, սկզբնաղբյուրի հիման վրա նշվում է, որ «1870 թ. նա մեկնում է Գերմանիա» (էջ 126)։

Նմանապես Գ. Տեր-Հովհաննիսյանի (Քաջբերունու) կենսագրական բաժնում բանն այնպես է պատկերվում, որ «1871—75 թվականներին (!) Գ. Տեր-Հովհաննիսյանն եկել է Ալեքսանդրապոլ» և «հետագայում (!) աշխատել է Անդրկովկասի շատ վայրերում, բժշկություն է արել և գրել է «Հյուսիսափայլ», «Մեղու Հայաստանի»... պարբերականներում» (էջ 214), այնինչ դպրոցի աշակերտին անգամ հայտնի է, որ «Հյուսիսափայլ» ամսագիրը մեկընդմիշտ փակվել է 1864 թ., ուստի և «հետագայում» Գ. Տեր-Հովհաննիսյանը չէր կարող այդտեղ ոչինչ գրել։

Պատկերը, սակայն, շատ ավելի տխուր է ստացվել, երբ հեղինակների կենսագրական ծանոթագրությունների համար «օգտագործվել» են ոչ թե մեկ, այլ մի քանի աղբյուրներ. այդ տեսակետից շատ բնորոշ է Հր. Աճառյանի կենսագրությունը (էջ 263—264), որտեղ, օրինակ, նշվում է, որ իբրև թե Արմատական բառարանի յոթ մեծ հատորները լույս են տեսել 1925—1932 թթ., այնինչ իրականում 7-րդ հատորը լույս է տեսել 1935 թ., որ իբրև թե՝ «Լիակատար քերականություն հայոց լեզվի» աշխատությունը պետք է բաղկացած լիներ 12 հատորից (տես էջ՝ 264—273) և «արդեն լույս են տեսել այդ մեծ գործի 1-ին (1952) և 2-րդ, 3-րդ հատորները», այնինչ իրականում այն 10 հատոր է, և արդեն լույս է տեսել ոչ թե 3-ը, այլ՝ հինգը։ Եվ կամ աղբյուրներից մեխանիկորեն օգտվելու հետևանքով այնպես է ստացվել, որ իբրև թե այդ աշխատության հիմնական նյութը ածականն ու թվականն են, մինչդեռ իրականում դրանք կազմում են միայն մի հատորը։

Բնավ չկամենալով ընդարձակել նման թերությունների շարքը, պետք է ասել, որ ճիշտ և ճիշտ այդ եղանակով են կազմված գրեթե բոլոր հեղինակների (դրանց թիվը հասնում է 180-ի) կենսագրական ծանոթագրությունները, որոնք և, իրենց որակով ուղիղ համեմատական լինելով անկատար ու սխալաշատ մատենագիտական ցանկերին, հաստատում են, որ ներկա աշխատությունը Հովհ. Պետրոսյանի կազմած բիբլիոգրաֆիաների գլուխ գործոցն է և կատարելապես հեռու է ուղեցույց մատենագիտություն լինելուց։ Պատահական չէ, որ այդ աշխատությունն էլ գրված է բավական վատ լեզվով և այդտեղ էլ ինչպես քերականական ու ոճական աղավաղումները, այնպես էլ ուղղագրական ու կետադրական նորմաների խախտումները ևս որակ են կազմում (դրանում համոզվելու համար ընթերցողը թող կարդա միայն գրքի առաջաբանը). էլ չենք խոսում այն հարյուրավոր տպագրական վրիպակների մասին, որ սկսվում են անվանաթերթերից («Армянские ученые...», «Состовил») և ավարտվում աշխատության խմբագրով (տպված է Ս. Ոսկերչյան՝ Ա. Ոսկերչյանի փոխարեն), և հասկանալի է՝ անթույլատրելի ու անհանդուրժելի են մանավանդ այն աշխատության մեջ, որ իբր թե հանդիսանում է «կենսաբիբլիոգրաֆիական ֆունդամենտալ (!) տեղեկատու» (էջ XI)։

Հայ բոլոր այն մատենագիտությունները, որոնք իրենց ուրույն տեղն են բռնում հայագիտության գանձարանում, ստեղծվել են բացառապես գիտական հիմքի վրա։ Բոլորովին այլ է Հովհ. Պետրոսյանի՝ մատենագիտություններ (բիբլիոգրաֆիաներ) կազմելու ուղին. իր համար գտնելով ազատ գործունեության լայն ասպարեզ, նա պարզապես յուրացնում է ուրիշների աշխատանքներն ու նյութերը և աղավաղված տեսքով դրանք ներկայացնում ընթերցող հասարակայնությանը։ Բայց ամենից զարմանալին այն է, որ աշխատանքի նման արատավոր ոճը Հովհ. Պետրոսյանը օրինակելի է համարում և չի ուզում ամենևին հրաժարվել նրանից։

Մինչդեռ վերջիվերջո ժամանակն է գիտակցել, որ արդյունքը միշտ էլ դառն է լինում, երբ մարդն ուժից վեր գործ է բռնում, երբ չի լսում իր մասին եղած արդարացի քննադատության ձայնը և շարունակում է գնալ մոլորված ճանապարհով։ Բայց մի՞թե այս դեպքում մեղավորը միայն Հովհ. Պետրոսյանն է. իհարկե, ո՛չ։ Եթե նա իր մասին եղած արդարացի քննադատություններից համապատասխան եզրակացություն չի հանել և մինչև այժմ էլ կարծում է, թե իբրև մատենագիտական լուրջ աշխատանք է կատարում, դա թերևս անհատական գործ է և այդ չափով էլ ներելի է։ Բայց ինչպե՞ս կարելի է ներել այն ընկերներին, որոնք մեղանչելով գիտական սկզբունքայնության ու ազնվության դեմ, դրականորեն են լուծել «Հայ գիտնականներ, հրապարակախոսներ, ժուռնալիստներ» անհաջող աշխատության հրատարակության հարցը։ Կարծում ենք, որ դրա պատասխանը կտա Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրությունը։

ԱԼ. ՄԱՐԳԱՐՅԱՆ

## ԱՌԱՋԻՆ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆԸ

Վարդան Թումանյանի աշխատությունը* նվիրված է մարքսիստական փիլիսոփայության կարևորագույն հարցերից մեկին՝ հակասությունների դիալեկտիկային, հակասությունների բացահայտման ու հաղթահարման առանձնահատկությունների լուսաբանմանը։ Հեղինակը փորձ է արել ընդհանուր տեսական նշանակություն ունեցող դրույթների քննարկումը կատարել սոցիալիստական շինարարության պրակտիկայի հետ սերտորեն առնչված։ Եվ հենց դրա մեջ պետք է առաջին հերթին փնտրել գրախոսվող աշխատության արժանիքը։

Գրքի շարադրանքն սկսվում է զարգացման մասին գոյություն ունեցող երկու հակադիր հայացքների վերլուծությունից։ Վեր հանելով մետաֆիզիկական կոնցեպցիայի սնանկությունը շարժման և զարգացման մեկնաբանության հարցում, հեղինակը որոշակիորեն կարողացել է ցույց տալ դիալեկտիկայի արմատական տարբերությունը մետաֆիզիկայից։ Ինչպես ճիշտ կերպով նշում է Թումանյանը, մատերիալիստական դիալեկտիկան միակ մեթոդն է, որ հնարավորություն է տալիս աշխարհը ըմբռնել այնպես, ինչպես այն կա, այսինքն՝ իր անընդհատ շարժման, զարգացման մեջ, բացահայտել զարգացման ներքին տենդենցները, հիմնավորել ինքնաշարժման գաղափարը։

Աշխատության մեջ, առանձին գլխում քննարկված է հակադրությունների պայքարի ու միասնության օրենքի էությունը, օրենք, որ կրում է համընդհանուր բնույթ, հատուկ է մատերիայի շարժման բոլոր ձևերին, գործում է միշտ և ամենուրեք։ Ճիշտ է հեղինակի այն միտքը, որ հակադրությունների պայքարի ու միասնության օրենքը բոլոր պայմաններում հանդես չի գալիս նույնանման, շաբլոն ձևով։ Հակասությունները կրում են սպեցիֆիկ բնույթ, պայմանավորված լինելով իրերի ու առարկաների առանձնահատկություններով, ինչպես նաև այն հանգամանքներով, որոնց մեջ դրսևորվում են դրանք։

Գրախոսվող աշխատության մեջ որոշակի հետաքրքրություն է ներկայացնում հակադրություն-

* Վ. Թումանյան. «Հակասությունների բացահայտման ու հաղթահարման դիալեկտիկան», Երևանի Պետհամալսարանի հրատարակչություն, Երևան, 1960 թ., 235 էջ։

կովկասյան բազմազգ պրոլետարիատի ռևոլյուցիոն տրադիցիաների կրողներն են. այդ արտահայտվել է հենց Անդրկովկասում մարքսիստական առաջին խմբակների կազմավորման ժամանակներից՝ XIX դարի 90-ական թվականներից։ Անդրկովկասում միացյալ բոլշևիկյան կազմակերպությունները գոյություն ունեին մինչև Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի առանձին կոմունիստական պարտիաների կազմավորումը։

Այնուհետև ընկ. Թովմասյանը գրում է այն մասին, որ որոշ հեղինակներ, գնահատելով Անդրկովկասում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի սոցիալ-տնտեսական նախադրյալները՝ անտեսում են այն փաստը, որ Անդրկովկասի և ամբողջ Ռուսաստանի աշխատավոր մասսաների միջև գոյություն ուներ սերտ կապ, որը բխում էր կյանքի սոցիալ-տնտեսական ընդհանուր պայմաններից, պատմական ճակատագրի ընդհանրությունից։ Անդրկովկասում ռևոլյուցիոն սիտուացիայի հարցը Ռուսաստանից անջատ լուծելու փորձը հանգեցնում է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ընդհանուր օրինաչափությունների ժխտմանը։

Ռևոլյուցիայի վերջնական հաղթանակը Անդրկովկասում ձգձգվում էր. դրա գլխավոր պատճառն ինտերվենցիան էր, որը հենվում էր բուրժուա-նացիոնալիստական կոնտրռևոլյուցիոն ուժերի վրա։

Ապա հոդվածում հանգամանորեն քննարկվում են Հայաստանի Կոմունիստական պարտիայի ստեղծման, Հայաստանում Սովետական իշխանության հաստատման համար նրա հերոսական պայքարի պատմության գիտական ուսումնասիրության հարցերը։

Ամսագրում տպագրված են նաև «Լենինը և Պետրոգրադի բոլշևիկների կազմակերպությունը համաշխարհային պատերազմի ժամանակաշրջանում (1914—1916 թթ.)», «Լատվիայի Կոմունիստական պարտիայի անլեգալ գործունեությունը բուրժուական ռեսպուբլիկայի ժամանակաշրջանում» և «Կոմունիստական պարտիաները գյուղացիներին տանում են դեպի սոցիալիզմ (ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրների գյուղացիության կոոպերացման փորձից)» հոդվածները։ Զետեղված են նաև «Հաղորդագրություններ»։ «Դասախոսություններ և կոնսուլտացիաներ» բաժնում տպագրված է Ս. Լեզնևի «Միջազգային բանվորական շարժումը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախօրյակին»։ Հետաքրքրական նյութեր կան նաև «Պատմագրություն և աղբյուրագիտություն», «Քննադատություն և բիբլիոգրաֆիա» և «Գիտական կյանք» խորագրերը կրող բաժիններում։

---






Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92 2—04—66, 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел 2—56—92 2—04—66, 2—02—24

ՎՖ 04058 Պատվեր 2462 Տիրաժ 9300

Տպ. 7 մամուլ, մամուլում 68.340 նիշ: Ստորագրված է տպագրության 19/X 1960 թ.:

Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում:

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։




## ՊԵՏՔԱՂՀՐԱՏԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՄԲ ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

*В. И. ЛЕНИН.— «О закономерностях возникновения и развития социализма и коммунизма»*. Ժողովածու, 744 էջ, տ. 50 հաս., գինը 10 ռ. 50 կ.։

Գիրքը ներկայացնում է Վ. Ի. Լենինի՝ տարբեր ժամանակներում գրած և կոմունիստական հասարակարգի ծագման ու զարգացման պրոբլեմներին նվիրված երկերի ժողովածուն։

*КОЗЛОВ В. К.— «Торжество ленинской национальной политики* КПСС», 96 էջ, տ. 35 հաս., գինը 1 ռ. 20 կ.։

Գրքույկը նվիրված է պարտիայի վարած քաղաքականությանը ազգային հարաբերությունների բնագավառում։ Նրանում պատմվում է, թե ինչպե՛ս է ստեղծվել ՍՄԿՊ ծրագիրը՝ ազգային հարցում, այդ պայքարում Վ. Ի. Լենինը և լենինյանները ո՛ւմ դեմ են մարտնչել, ինչպես են պաշտպանել ու կյանքում կիրառել այդ ծրագիրը Սովետական պետության գոյության տարբեր էտապներում։

Գրքույկում հատուկ բաժին է նվիրված ՍՍՌՄ-ում ազգային հարցի լուծման ՍՄԿՊ փորձի միջազգային նշանակությանը։

*СПИРКИН А. Г.— «Происхождение сознания»*, 472 էջ, տ. 20 հաս., գինը 9 ռ. 30 կ.։

Հեղինակը գրքում ցույց է տվել, թե աշխատանքի և արտադրական հարաբերությունների հիման վրա ինչպես է ծագել մարդու գիտակցությունն ու ինքնագիտակցությունը, ինչպես են ձևավորվել հասարակական գիտակցության տարբեր ձևերը։ Գրքում մեծ ուշադրություն է հատկացված տրամաբանական կատեգորիաների՝ որակի, քանակի, տարածության, ժամանակի, պատճառականության, նպատակի և օրենքի ծագմանը։ Գիրքը մատչելի է ընթերցողների լայն շրջանի համար։

*«Свет над Россией».*— Очерки по истории электрификации ССР, 400 էջ, տ. 30 հաս., գինը 8 ռ.։

Ակնարկների այս ժողովածուում պատմըվում է, թե ինչպես մեր Հայրենիքը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, սովետական մարդկանց հերոսական ջանքերով հետամնաց երկրից վեր է ածվել հզոր սոցիալիստական տերության, որը հանդիսանում է տեխնիկական պրոգրեսի, խաղաղության և բարեկամության դրոշակակիրը ժողովուրդների միջև։

«Основы марксистско-ленинской эстетики».— 640 էջ, տ. 100 հաս., գինը 10 ռ.։

Գիրքը գրված է փիլիսոփայության, արվեստի, պատմության, ՍՍՌՄ ԳԱ Գորկու անվան համաշխարհային գրականության, գեղարվեստի ինստիտուտների, գիտական աշխատողների կոլեկտիվների կողմից՝ դասատուների, բուհերի ուսանողների և ասպիրանտների, գրականության և արվեստի աշխատողների, և էսթետիկայի հարցերով բոլոր հետաքրքրվողների համար։

*КЛИМАНОВ С. В.— «В глубинах жизни»*. Ակնարկ, 96 էջ, տիրաժ 15 հազ., գինը 1 ռ. 20 կ.։

Ակնարկում պատմվում է փորձված պարտիական ղեկավար, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Վ. Ս. Բուլչուկի կողմից գլխավորվող պարտիայի Կրիժեպոլսկի շրջկոմի աշխատողների աշխատանքային առօրյայի մասին։ Նրանում շատ օգտակար խորհուրդներ կգտնեն պարտիական և սովետական աշխատողները։

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

# ԲԱՑՎԱԾ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ

## «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

ՏՆՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ

## 1961 ԹՎԱԿԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*հրապարակում է ՍՄԿՊ և ՀԿՊ պատմության, ռևոլյուցիոն շարժման, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, միջազգային կյանքի վերաբերյալ հոդվածներ։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է ռեսպուբլիկայում կոմունիստական շինարարության պրակտիկան, զետեղում է նյութեր պարտիական, կոմերիտական, պրոֆմիութենական և սովետական շինարարության, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է գիտության, գրականության ու արվեստի զարգացման հարցերը, տպագրում է կոնսուլտացիաներ, տեղեկանքներ, մամուլի տեսություններ, քննադատական-գրախոսական հոդվածներ, պատասխանում է ընթերցողների հարցերին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*տպագրում է նյութեր եղբայրական սովետական ռեսպուբլիկաների, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, արտասահմանյան կոմունիստական շարժման մասին։*

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ

Տարեկան — 30 ռուբլի (նոր գինը՝ 3 ռ.)
Կես տարին — 15 ռուբլի (նոր գինը՝ 1 ռ. 50 կ.)

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝

*Կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, ՆՏ կայաններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով։*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*